## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից։

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը։

Սույն կանոնները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդվածը անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։




# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

8

ՕԳՈՍՏՈՍ 1973

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угиов»—теоретический и политический журнал ЦК КП Армении


## Բովանդակություն

# Содержание

**Статьи**







# ՍՄԿԿ ԼԵՆԻՆՅԱՆ ԱՐՏԱՔԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԿՈՒՐՍԻ ՆՈՐ ՀԱՂԹԱՆԱԿՆԵՐԸ

**Ս. Կ. ՊԱՊՅԱՆ**

*Մեր կուսակցությունը, սովետական կառավարությունը հետևողականորեն կենսագործում են ՍՄԿԿ XXIV համագումարի մշակած խաղաղության ծրագիրը։ ՍՄԿԿ XXIV համագումարից հետո անցած կարճ ժամանակամիջոցում ՍՍՀՄ արտաքին քաղաքականությունը պատմական խոշոր հաղթանակներ է նվաճել ընդհանուր խաղաղության ամրապնդման, հակադիր սոցիալական սիստեմներ ունեցող երկրների միջև հարաբերությունների նորմալացման ասպարեզում։ Այդ հիրավի մեծ նվաճումները հանրագումարի բերվեցին ՍՄԿԿ Կենտկոմի 1973 թվականի ապրիլյան պլենումում, որը լսեց ու քննարկեց Լ. Ի. Բրեժնևի զեկուցումը կուսակցության XXIV համագումարի որոշումների իրականացման ասպարեզում ՍՄԿԿ Կենտկոմի միջազգային գործունեության մասին։ Պլենումը լիակատար հավանություն տվեց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղարի զեկուցման մեջ շարադրված միջազգային իրադրության վերլուծությանը։ ՍՄԿԿ XXIV համագումարից հետո սովետական ժողովուրդը կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ նոր հիանալի հաջողությունների է հասել կոմունիստական շինարարության ասպարեզում, սոցիալիստական հայրենիքի տնտեսական ու պաշտպանական հզորության, նրա միջազգային դիրքերի ամրապնդման ոլորտում։*

*Վերջին տարիներին առավել նշանակալի իրադարձությունը Վիետնամի ժողովրդի հաղթանակն է։ Հերոսական վիետնամական ժողովրդի կամքը, սոցիալիստական երկրների համերաշխության հզոր ուժը հանգեցրին Վիետնամի դեմ ուղղված իմպերիալիստական ագրեսիայի դադարեցմանը։ Սոցիալիստական երկրների համաձայնեցված քաղաքականության խոշոր հաջողությունն է Գերմանական Դեմոկրատական Հանրապետության քաղաքական շրջափակման վերացումը, ԳԴՀ-ի ճանաչումը աշխարհի մոտ 90 պետությունների կողմից։ Ամրապնդվել է Կուբայի՝ արևմտյան կիսագնդի առաջին սոցիալիստական պետության միջազգային դրությունը։ Նոր հասարակարգի կառուցման ասպարեզում պատմական հասումներ ունեն սոցիալիստական համագործակցության*

բոլոր երկրները: Զարգանում և խորանում է սոցիալիզմի եղբայրական երկրնե-
րի բազմակողմանի համագործակցությունը: Ներկայումս որակապես նոր փու-
լում է գտնվում տնտեսության բնագավառի նրանց համագործակցությունը,
որը պայմանավորվում է սոցիալիստական տնտեսական ինտեգրացման կոմպ-
լեքսային ծրագրի իրականացմամբ:

Այս տարվա հունիսի 5—8-ը Չեխոսլովակիայի մայրաքաղաք Պրագայում
կայացավ Տնտեսական փոխօգնության խորհրդի 27-րդ նստաշրջանը: ՏՓԽ-ի
անդամ-երկրների պատվիրակություններին գլխավորում էին եղբայրական պե-
տությունների կառավարությունների նախագահները: Նստաշրջանը քննարկեց
սոցիալիստական երկրների տնտեսական համագործակցության հետագա ամ-
րապնդման և կատարելագործման հրատապ հարցերը:

ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն և ՍՍՀՄ Մինիստրների սովետը քննության
առան ՍՍՀՄ Մինիստրների սովետի նախագահ Ա. Ն. Կոսիգինի գլխավորած
սովետական պատվիրակության հաշվետվությունը Տնտեսական փոխօգնության
խորհրդի 1973 թվականի հունիսի 5—8-ը Պրագայում տեղի ունեցած 27-րդ
նստաշրջանի արդյունքների մասին: Սոցիալիստական տնտեսական ինտեգրա-
ցիայի կոմպլեքսային ծրագրի իրականացման բնագավառում ձեռք բերված
հաջողությունները վկայում են սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման գոր-
ծում ՏՓԽ-ի անդամ-երկրների ջանքերի առավել սերտ միավորման անհրա-
ժեշտությունը, եղբայրական կոմունիստական ու բանվորական կուսակցու-
թյունների քաղաքական գծի ճշտությունը: Ելնելով կուսակցության XXIV հա-
մագումարի, ինչպես նաև ՍՄԿԿ Կենտկոմի 1973 թ. ապրիլյան պլենումի որո-
շումներից, լենինյան կուսակցության Կենտրոնական կոմիտեն և սովետական
կառավարությունը այսուհետև էլ անհրաժեշտ ամեն ինչ կանեն սոցիալիստա-
կան երկրների հետ բազմակողմանի կապերն ամրապնդելու և ընդլայնելու
համար:

ՍՄԿԿ XXIV համագումարի մշակած խաղաղության ծրագրի իրականացու-
մը մեր երկրում ապահովում է արտաքին բարենպաստ պայմաններ կոմունիս-
տական շինարարության հաջող իրականացման, համաշխարհային սոցիալիս-
տական համագործակցության ամրապնդման համար, նպաստում բանվորա-
կան և ազգային-ազատագրական շարժմանը: Այն ուղղված է իմպերիալիզմի
ագրեսիվ քաղաքականության դեմ, խաղաղ գոյակցության սկզբունքների և
հակադիր սոցիալական սիստեմ ունեցող պետությունների հետ փոխշահա-
վետ համագործակցության հաստատման, ընդհանուր խաղաղության և ժողո-
վուրդների անվտանգության ամրապնդման, ամբողջ աշխարհում սոցիալա-
կան առաջադիմության ապահովման նպատակին: Ինտերնացիոնալ այդ կուրսը
համապատասխանում է բոլոր ժողովուրդների շահերին:

Միջազգային բոլոր պրոբլեմներում ՍՄԿԿ-ն առանձնապես կարևոր նշա-
նակություն է տալիս համաշխարհային սոցիալիստական սիստեմի հետագա
համախմբմանն ու զարգացմանը: Սովետական Միությունը հետևողականորեն
կատարում է իր ինտերնացիոնալ պարտքը սոցիալիստական եղբայրական եր-
կրների նկատմամբ: Անցած երեք տարում ՍՍՀՄ տեխնիկական աջակցու-
թյամբ սոցիալիստական երկրներում կառուցվել կամ վերակառուցվել է ավելի
քան 300 արդյունաբերական ու գյուղատնտեսական օբյեկտ: Սովետական
Միությունը 70 տոկոսով բավարարում է Տնտեսական փոխօգնության խորհրդի
մասնակից երկրների, ինչպես նաև ՎԴՀ-ի, ԿԺԴՀ-ի պահանջմունքները հումքի



ու վառելիքի մի շարք տեսակների նկատմամբ: Միաժամանակ Սովետական Միությունը Տնտեսական փոխօգնության խորհրդի երկրներից քիմիական 54 գործարանների համար անհրաժեշտ սարքավորում է ստացել: Բացի դրանից, վերջին չորս տարում սովետական նավատորմի բեռնատարողության ավելի քան 40 տոկոսը պատրաստված է եղբայրական սոցիալիստական երկրների նավաշինարաններում: Ներկայումս եվրոպական սոցիալիստական երկրների համար կառուցվում է «Բարեկամություն» նավթամուղի երկրորդ հերթը: Կառուցվում է նաև հզոր գազամուղ, որով բնական գազը Սիբիրից կհասնի Չեխոսլովակիա, Լեհաստան, ԳԴՀ, Բուլղարիա, Հունգարիա: Տնտեսական փոխօգնության խորհրդի երկրների միջև հաջողությամբ գործում են համագործակցության միջազգային և ընդհանուր ինվեստիցիոն բանկերը: Սոցիալիստական երկրների տնտեսական համագործակցությունը տալիս է իր հիանալի պտուղները: Անցած հինգ տարվա ընթացքում Տնտեսական փոխօգնության խորհրդի երկրների արդյունաբերական արտադրությունն աճեց մեկ և կես անգամ: Կյանքն ապացուցել է, որ անհրաժեշտ է ավելի զարգացնել սոցիալիստական երկրների արտադրության մասնագիտացումն ու կոոպերացումը, ընթանալ տնտեսական ինտեգրացման ուղիով:

Մեր կուսակցությունը, սովետական ողջ ժողովուրդը XXIV համագումարում, ինչպես նաև ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակին նվիրված՝ ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Գերագույն սովետի և ՌՍՖՍՀ Գերագույն սովետի համատեղ հանդիսավոր նիստում փաստորեն համաշխարհային պրոլետարիատի, աշխարհի բոլոր աշխատավորների առջև հաշիվ տվեցին իրենց գործունեության մասին: Եվ դա բնական է, քանի որ ՍՄԿԿ-ն ելնում է ազգային և ինտերնացիոնալ խնդիրների միասնությունից ու ներդաշնակությունից: «Գիտակցելով իր ինտերնացիոնալ պարտքը,— նշվում է ՍՄԿԿ XXIV համագումարին տրված կուսակցության Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ,— Սովետական Միության կոմունիստական կուսակցությունն այսուհետև էլ միջազգային գործերում կվարի այնպիսի գիծ, որը նպաստում է համաշխարհային հակաիմպերիալիստական պայքարի հետագա ակտիվացմանը...» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 29):

Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը ինչպես միշտ, այսօր էլ պատվով է կատարում համաշխարհային կոմունիստական շարժման առաջավոր ջոկատի պատմական առաքելությունը, իր ինտերնացիոնալ մեծ պարտքը: Լեհաստանի միացյալ բանվորական կուսակցության Կենտրոնական կոմիտեի առաջին քարտուղար է. Գերեկը ՍՄԿԿ XXIV համագումարում արտասանած իր ճառում, խոսելով ՍՄԿԿ ինտերնացիոնալ առաքելության և նրա նկատմամբ վերաբերմունքի մասին, հայտարարեց. «Հեղափոխական վերափոխումների նոր էտապում ՍՄԿԿ-ն, ինչպես որ առաջ, հանդիսանում է հասարակական զարգացման ռահվիրա, հեղափոխական մտքի ու պրակտիկայի հավերժ կենդանի աղբյուր: Հենց դա է այն գլխավոր պատճառը, որը հաստատուն կերպով որոշում է ՍՄԿԿ առաջատար դիրքը համաշխարհային բանվորական շարժման մեջ: Առանց Սովետական Միության կոմունիստական կուսակցության հետ համերաշխության, չի կարելի ամրապնդել սոցիալիստական սիստեմի պետությունների միասնությունը, չի կարելի ամրապնդել կոմունիստական ու բանվորական կուսակցությունների միջազգային միասնությունը, որոնք գործում են տարբեր պայմաններում, բայց պայքարում են միևնույն

սկզբունքային նպատակների համար»։ ՍՄԿԿ-ի, սովետական երկրի նկատմամբ վերաբերմունքը,— հայտարարեց Է. Գերեկը,— սոցիալիստական ու հակաիմպերիալիստական ուժերի միասնության նկատմամբ իսկական վերաբերմունքի ամենաստուգված չափանիշն է։

Արդի պայմաններում կարևորագույն նշանակություն ունեն միջազգային հարաբերությունների բնագավառում մեր կուսակցության կուտակած փորձի ուսումնասիրությունն ու օգտագործումը։ Կոմունիստական կուսակցության և սովետական պետության պատմությունը տալիս է արտաքին քաղաքականության մեջ ճկուն տակտիկան խորագույն սկզբունքայնության հետ զուգակցելու հոյակապ օրինակներ։

Մարքսիզմ-լենինիզմի զենքով ՍՄԿԿ-ն ակտիվորեն պայքարել ու պայքարում է սոցիալիստական երկրների համագործակցության հետագա ամրապնդման համար։ Ոչ ոքի վզին չփաթաթելով սոցիալիզմի կառուցման իր փորձը, մեր կուսակցությունը սիրահոժար այն տրամադրում է միջազգային կոմունիստական և բանվորական շարժման մյուս ջոկատներին։ Ուսումնասիրելով ՍՄԿԿ փորձը, եղբայրական կուսակցություններն այն իրագործում են իրենց երկրների կոնկրետ պայմաններում։ Հենվելով լենինյան արտաքին քաղաքականության սկզբունքների վրա ու դրանք անշեղորեն կենսագործելով միջազգային գործունեության մեջ, ՍՄԿԿ-ն ավելի քան 55 տարի հետևողականորեն պաշտպանում է խաղաղության գործը և համընդհանուր անվտանգությունը։ Որքան էլ փոխվել են ՍՍՀՄ արտաքին քաղաքականության կոնկրետ խնդիրները և պրակտիկ ձևերը պատմական առանձին ժամանակաշրջաններում, Սովետական Միության արտաքին քաղաքականության գլխավոր գիծը, նրա հիմնական սկզբունքները անսասան են։ Բարձր սկզբունքայնությունը, գիտական հիմնավորվածությունը մշտապես հանդիսացել են Սովետական Միության արտաքին քաղաքականության բնորոշ գծերը։

Միջազգային ասպարեզում երևան եկած նոր երևույթների խոր վերլուծության, խաղաղասեր ուժերի պայքարի փորձի ուսումնասիրման շնորհիվ մեր կուսակցությունը տեսականորեն հիմնավորեց, որ այժմյան պայմաններում չկա պատերազմի ճակատագրական անխուսափելիություն, որ զինաթափումը ոչ միայն պետք է, այլ հնարավոր է, որ տարբեր սոցիալական կարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցությունը կենսական անհրաժեշտություն է, որը բխում է արդի միջազգային իրադրությունից։ Այդ եզրահանգումը բաժանում են եղբայրական բոլոր կուսակցությունները և այն իր արտացոլումը գտավ Մոսկվայում 1969 թվականին կայացած կոմունիստական և բանվորական կուսակցությունների միջազգային խորհրդակցության, ինչպես նաև կոմունիստների մյուս համաժողովների փաստաթղթերում։

ՍՄԿԿ, սովետական պետության միջազգային քաղաքականության հիմնական նպատակն է ամրապնդել կայուն խաղաղությունը, որը մեզ հարկավոր է կոմունիզմ կառուցելու համար, հարկավոր է բոլոր սոցիալիստական երկրներին, բոլոր պետությունների ժողովուրդներին։ Ուստի պատահական չէ, որ ինչպես միշտ, այսօր ևս ՍՄԿԿ-ն, սովետական կառավարությունը բոլոր միջոցներով հակազդում են ագրեսիայի քաղաքականությանը և ջանում վերացնել այն պայմանները, որոնք հղի են ագրեսիվ պատերազմներով։

«Մեր միջազգային քաղաքականության կոչումն ու դերը,— նշել է Լ. Ի. Բրեժնևը ՍՍՀՄ 50-ամյակին նվիրված իր զեկուցման մեջ,— մենք տեսնում



ենք նրանում, որ նպաստենք բոլոր ժողովուրդների գոյատևման, անկապտելի իրավունքների և ամենից առաջ ինքնուրույն, անկախ զարգացման իրավունքի իրականացմանը, որի պայմաններում նրանք կկարողանային օգտվել ժամանակակից քաղաքակրթության պտուղներից»։ Ընթանալով լենինյան ուղիով, Սովետական Միությունը դարձել է խաղաղության, ժողովուրդների անկախության ու անվտանգության կայուն և հուսալի հենարանը։

Այսօր Ասիայի ու Աֆրիկայի մի շարք երկրներ բռնել են ոչ կապիտալիստական զարգացման ուղին։ Այդ պետություններում աստիճանաբար իրականացվում են սոցիալական այնպիսի վերափոխումներ, որոնք համապատասխանում են ժողովրդական զանգվածների շահերին, հանգեցնում ազգային անկախության ամրապնդմանը։ «Ինչ վերաբերում է մեր երկրին, —նշվում է կուսակցության XXIV համագումարին տված ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ,— ապա նա ամբողջովին զորավիգ է այդ արդար պայքարին։ Ազատագրված երկրների հետ ՍՍՀՄ-ի քաղաքական ու տնտեսական համագործակցությունն այդ տարիներին հետագա զարգացում է ստացել» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 16)։

Սոցիալիստական պետությունների տնտեսական և գիտատեխնիկական օգնությունը մեծ ավանդ է ազատագրված երկրների ազգային էկոնոմիկայի զարգացման գործում։ Ներկայումս Սովետական Միության աջակցությամբ Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի երկրներում կառուցվել և կառուցվում է 480 արդյունաբերական ձեռնարկություն և այլ օբյեկտներ, որոնք առաջնահերթ նշանակություն ունեն այդ երկրների ինքնուրույն տնտեսական զարգացման համար։

ՍՍՀՄ-ում կոմունիստական շինարարության ասպարեզում ձեռք բերված նվաճումները, սովետական նոր հնգամյակի, սոցիալիստական մյուս երկրների էկոնոմիկայի զարգացման հեռանկարային պլանների հաջող իրականացումը, անշուշտ, ավելի կնպաստեն գաղութակալության լուծը թոթափած երկրների զարգացմանը, նրանց տնտեսական անկախության հետագա ամրապնդմանը։

Սովետական Միությունը միշտ էլ պաշտպանել է բոլոր երկրների միջև տնտեսական լայն կապերի հաստատման անհրաժեշտությունը։ Այժմ մեր երկիրը առևտուր է անում ավելի քան 130 երկրների հետ, տարեցտարի ավելացնելով իր արտաքին առևտրի ապրանքաշրջանառությունը։

Ժողովուրդները ներկայումս մեծ հույսեր են կապում միջազգային լարվածության մեղմացման այն պրոցեսի հետ, որ տեղի է ունենում վերջերս։ Սովետական Միության խաղաղասիրական ակտիվ քաղաքականության շնորհիվ լայն հեռանկարներ են բացվում խաղաղ գոյակցության հետագա զարգացման համար։ Դրանով ավելի է աճում Սովետական Միության, սոցիալիզմի մյուս երկրների միջազգային հեղինակությունը։

Ներկայումս բարենպաստ պայմաններ են ստեղծվել Եվրոպայի պետությունների խաղաղ համագործակցության զարգացման համար։ Սովետական Միությունը և սոցիալիստական մյուս երկրները ճեղքեցին «սառը պատերազմի» ռազմաճակատը, թուլացրին լարվածությունը Եվրոպայի, Արևելքի ու Արևմուտքի պետությունների հարաբերություններում։

Եվրոպայի ժողովուրդների ճակատագրում բախտորոշ այս իրողության մեջ վճռական դեր խաղաց և այն աշխատանքը, որ ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն կատարեց ԳՖՀ-ի հետ պայմանագիր կնքելու և այն վավերացնելու կապակ-

ցությամբ, Մոսկվայում և Օրեանդայում Լ. Ի. Բրեժնևի զրույցները Վ. Բրանդտի հետ։ ԳՖՀ-ի հետ ՍՍՀՄ-ի ու ԼԺՀ-ի պայմանագրերի, Արևմտյան Բեռլինի վերաբերյալ քառակողմ համաձայնագրի ստորագրումը, ԳԴՀ-ի ու ԳՖՀ-ի հարաբերությունների հիմունքների վերաբերյալ պայմանագրի կնքումը ռեալ նախադրյալներ ստեղծեցին տնտեսության, գիտության, տեխնիկայի ու մշակույթի բնագավառում ԳՖՀ-ի հետ Սովետական Միության և սոցիալիստական մյուս երկրների փոխշահավետ հարաբերությունների հետագա զարգացման համար։ Սովետա-արևմտագերմանական հարաբերությունների բարելավմանը մեծապես նպաստեցին Լ. Ի. Բրեժնևի այցը Գերմանիայի Ֆեդերատիվ Հանրապետություն և նրա բանակցությունները ԳՖՀ-ի կանցլեր Վ. Բրանդտի հետ, որոնք տեղի ունեցան այս տարվա մայիսի 18—22-ը։

ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղարի Գերմանիայի Ֆեդերատիվ Հանրապետություն կատարած այցը ամրապնդեց շրջադարձը այն պետությունների հետ ունեցած հարաբերություններում, որոնց հետ դեռ ոչ հեռավոր անցյալում գրեթե բոլոր միջազգային կարևորագույն հարցերում մենք կանգնած էինք հակադիր բևեռներում, Սովետական Միության և Գերմանիայի Ֆեդերատիվ Հանրապետության միջև նոր, խաղաղ ժամանակների համար նորմալ հարաբերությունների ու փոխշահավետ համագործակցության հիմքը դրեց։ Լ. Ի. Բրեժնևի ԳՖՀ կատարած այցը մեծ նշանակություն ունի Եվրոպայում լարվածության մեղմացման, խաղաղության և մայրցամաքի բոլոր ժողովուրդների անվտանգության ամրապնդման ուղիով հետագա առաջընթացի համար։ Այդ ուղղությամբ սոցիալիստական համագործակցության երկրների հետևողական, նպատակասլաց քաղաքականությունը, ԳՖՀ-ի և ԳԴՀ-ի, Լեհաստանի և սոցիալիստական մյուս երկրների փոխհարաբերությունների նորմալացումը, Սովետական Միության և Ֆրանսիայի կոնստրուկտիվ, ամրապնդվող համագործակցությունը միջազգային քաղաքականության մի շարք հարցերում, ԱՄՆ-ի կառավարության հետ ձեռք բերված փոխըմբռնումը, Լ. Ի. Բրեժնևի ԳՖՀ կատարած այցի դրական արդյունքները՝ այս ամենը կարևորագույն օղակներ են այն պայքարի, որ մղվում է հանուն լարվածության հետագա մեղմացման, անվտանգության ամրապնդման և կայուն խաղաղության։

Եվրոպայի իրադրության առողջացման վրա դրական ազդեցություն է ունենում սովետա-ֆրանսիական հարաբերությունների կայուն զարգացումը, որոնք խարսխվում են ՍՍՀՄ-ի ու Ֆրանսիայի ժողովուրդների բարեկամության վաղեմի ավանդույթների վրա։ 1971 թվականի հոկտեմբերին Լ. Ի. Բրեժնևի Փարիզ կատարած այցը, 1973 թվականի հունվարին Զասլավլում (Մինսկի մոտ) Ֆրանսիայի պրեզիդենտ Ժ. Պոմպիդուի հետ նրա ունեցած հանդիպումը և վերջերս՝ հունիսի 25—27-ը Լ. Ի. Բրեժնևի Փարիզ կատարած այցը ու նրա բանակցությունները Ժ. Պոմպիդուի հետ հավաստեցին փոխադարձ շահագրգռվածությունը երկու պետությունների հարաբերությունների հետագա զարգացման գործում։

Լարվածության թուլացման և Եվրոպայի խաղաղության ամրապնդման օգտին հանդես եկող սոցիալիստական երկրները լի են վճռականությամբ՝ այսուհետև ևս ակտիվորեն գործելու այդ ուղղությամբ, իրականացնելով ամենասերտ համագործակցություն մյուս շահագրգռված պետությունների հետ։ Սոցիալիստական երկրների նախաձեռնիչ քայլերը արժանանում են եվրոպական լայն հասարակայնության աջակցությանը, որի ներկայացուցիչները որոշել են



1973 թ. հոկտեմբերի սկզբին Մոսկվայում հրավիրել Եվրոպայի անվտանգության ու համագործակցության օգտին հանդես եկող հասարակական ուժերի կոնֆերանս։ Այդ բոլոր դրական քայլերի շնորհիվ Եվրոպայի մայրցամաքի իրադրությունը զգալի լավացավ։ Հասկանալի է, որ Եվրոպայում դրական պրոցեսները կարող էին ավելի հեռուն և ավելի խորն ընթանալ, եթե դրան չխոչընդոտեին նրանք, ովքեր հույսը դնում են լարվածության պահպանման վրա, շարունակում են սպառազինությունների մրցավազքը։

Համաեվրոպական անվտանգության հակառակորդները՝ ագրեսիվ քաղաքագետներից և ՆԱՏՕ-ի ռազմամոլներից մինչև արևմտագերմանական ռևանշիստներն ու բրիտանական ամենահետադեմ պահպանողականները, համախմբվում են, որպեսզի վիժեցնեն եվրոպական ժողովուրդների կայուն խաղաղության ձգտումը։ Լարվածության թուլացման պրոցեսն արգելակող ուժերին փաստորեն միացել և իր անփառունակ դերն է խաղում Պեկինի ղեկավարությունը, որը բացեիբաց հարձակվում է Եվրոպայի մթնոլորտի առողջացման քաղաքականության վրա։ Ինչպես ամենուրեք, Պեկինի պարագլուխները Եվրոպայում ևս հանդես են գալիս խաղաղության ու լարվածության մեղմացման դեմ։

Մենք համոզված ենք, որ այժմ Եվրոպայի մայրցամաքում ուժերի տեղաբաշխումը հնարավորություն է տալիս հաղթահարելու ռեակցիոն շրջանների դիմադրությունը։ Եվ իսկապես, Եվրոպայի 33 պետությունների, ինչպես նաև ԱՄՆ-ի ու Կանադայի կառավարությունների ներկայացուցիչների բազմակողմ կոնսուլտացիաների շնորհիվ, որոնք տեղի ունեցան Ֆինլանդիայի մայրաքաղաք Հելսինկիում և տևեցին ավելի քան վեց ամիս, հուլիսի 3-ին հրավիրվեց Եվրոպայի անվտանգության և համագործակցության ամրապնդմանը նվիրված խորհրդակցություն։ Այդ համաժողովի հրավիրումը մայրցամաքի և ամբողջ աշխարհի առաջադեմ շրջանների լուրջ հաղթանակն է։ Սովետական Միությունը և սոցիալիստական մյուս երկրները ձգտում են, որ համաեվրոպական խորհրդակցությունը ծառայի Եվրոպայի բոլոր երկրների հուսալի անվտանգության և խաղաղ համագործակցության ապահովմանը։ ՍՍՀՄ-ը կարևոր նշանակություն է տալիս նաև Կենտրոնական Եվրոպայում զինված ուժերի և սպառազինությունների կրճատման հարցին։

Միջազգային լարվածության թուլացման, հասարակական տարբեր սիստեմներին պատկանող պետությունների միջև խաղաղ գոյակցության զարգացման համար առանձնահատուկ նշանակություն ունեն սովետա-ամերիկյան հարաբերությունները, որոնց զարգացման համար շրջադարձային փուլ եղավ 1972 թվականին Մոսկվայում սովետական ղեկավարների հանդիպումը ԱՄՆ-ի պրեզիդենտի հետ։ «Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության և Ամերիկայի Միացյալ Նահանգների փոխհարաբերությունների հիմունքները» հայտնի փաստաթղթում, որը 1972 թվականի մայիսի 29-ին Մոսկվայում ստորագրեցին ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը և ԱՄՆ-ի պրեզիդենտ Ռ. Նիքսոնը, ձևակերպված են նոր պայմաններում սովետա-ամերիկյան հարաբերությունների զարգացման սկզբունքային ելակետերը։ Այդ փաստաթղթերով դրվեցին տարբեր ոլորտներում փոխշահավետ երկկողմ համագործակցության հիմքերը։ ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի միջև կնքվեցին մի շարք համաձայնագրեր, կոնկրետ քայլեր արվեցին տնտեսական հարաբերությունների, գիտատեխնիկական և մշակութային կապերի զարգացման բնագավառում։

Խաղաղ գոյակցության քաղաքականության նոր փայլուն օրինակ է Լ. Ի. Բրեժնևի ԱՄՆ կատարած այցը, նրա հանդիպումները և բանակցությունները պրեզիդենտ Ռ. Նիքսոնի հետ, որոնք տեղի ունեցան այս տարվա հունիսի 18-ից 25-ը։ Բանակցությունների ընթացքում ստորագրվեցին մի շարք կարևոր համաձայնագրեր։

ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը, ՍՍՀՄ Մինիստրների սովետը, քննության առնելով Լ. Ի. Բրեժնևի ԱՄՆ կատարած այցի արդյունքները, բարձր գնահատելով նրա անձնական ներդրումը, լիովին հավանություն տվեցին այդ այցի քաղաքական և գործնական արդյունքներին։ Նշվեց, որ սովետա-ամերիկյան բանակցությունների անցկացումը և հաջող ավարտումը լավ հիմք դրեցին երկու երկրների հարաբերությունների նորմալ զարգացման, նրանց միջև փոխշահավետ համագործակցության ամրապնդման համար և, միաժամանակ, լուրջ ավանդ են ներդնում միջազգային լարվածության թուլացման, ընդհանուր խաղաղության ու ժողովուրդների անվտանգության ամրապնդման գործում։ Հատկապես կարևոր է «Միջուկային պատերազմը կանխելու մասին» ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի միջև կնքված անժամկետ համաձայնագիրը, որը հնարավորություն է ընձեռում միջուկային պատերազմի սպառնալիքը նվազեցնելու և վերջին հաշվով այն վերացնելու, միջուկային անվտանգության ռեալ երաշխիքների սիստեմ ստեղծելու համար։ Այդ համաձայնագրի գործնական իրականացումը, վիճելի հարցերը բանակցությունների միջոցով լուծելու կուրսը, հիրավի, պատմական նշանակություն կունենան ամբողջ մարդկության համար։

Միաժամանակ մեծ դեր է վերապահված Վաշինգտոնում ստորագրված սովետա-ամերիկյան մյուս կարևոր փաստաթղթերին, մանավանդ՝ «Ստրատեգիական հարձակողական սպառազինությունների հիմնական սկզբունքները», ինչպես նաև «Ատոմային էներգիայի խաղաղ օգտագործման բնագավառում գիտատեխնիկական համագործակցության մասին ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի համաձայնագիրը», որի առաջնահերթ նպատակն է մշակել էներգիայի բարձրարդյունավետ նոր աղբյուրներ։ Շարունակելով 1972 թվականի մայիսին Մոսկվայում կնքված սովետա-ամերիկյան համաձայնագրերի գիծը, նշված փաստաթղթերը նախատեսում են ակտիվորեն շարունակելու այն գործը, որի նպատակն է ոչ միայն սահմանափակել ստրատեգիական հարձակողական սպառազինությունները՝ ինչպես դրանց քանակի, այնպես էլ որակական կատարելագործման տեսակետից, այլև՝ միջոցներ ձեռնարկել դրանց հետագա կրճատման համար։

Տարբեր բնագավառներում ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի միջև խաղաղ համագործակցության բազմակողմանի զարգացումը և մասնավորապես նրանց առևտրական կապերի զարգացման նոր հեռանկարները կնպաստեն առավել կայունացնելու սովետա-ամերիկյան հարաբերությունները։ Սովետա-ամերիկյան համատեղ կոմյունիկեում նշված է, որ անցած տարվա Մոսկվայում կայացած հանդիպումից հետո տարբեր համաձայնագրեր են ստորագրվել առևտրա-տնտեսական հարաբերությունների վերաբերյալ։ Փաստերը վկայում են, որ սովետա-ամերիկյան առևտուրը էականորեն աճել է և նպաստավոր հեռանկարներ կան առաջիկա տարիներին ապրանքաշրջանառության հետագա ծավալման համար։ Եթե 1972 թվականին մեր առևտուրը ԱՄՆ-ի հետ կազմեց 538 մլն ռուբլի,



ապա միանգամայն ռեալ է մոտ տարիներին այն հասցնել մինչև 5—6 մլրդ ռուբլու։

Նախատեսված է ավելի զարգացնելու երկու երկրների համագործակցությունը բազմաթիվ բնագավառներում։ Ծովային նավագնացության մի քանի հարցերի վերաբերյալ 1972 թվականի հոկտեմբերին ստորագրված համաձայնագրի շնորհիվ արդեն հաճախակի են դարձել սովետա-ամերիկյան առևտրանավերի փոխայցելությունները, իսկ 1973 թվականի մայիսից սկսել է կանոնավոր գործել Լենինգրադ—Նյու-Յորք մարդատար գիծը։ Համաձայնագիր է ստորագրված, որով նախատեսվում է ընդլայնել ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի միջև գործող օդային գծերը, ավելացնել թռիչքների հաճախականությունը և լուծել քաղաքացիական ավիացիայի բնագավառի մյուս հարցերը։

Հասկանալի է, որ տնտեսական համագործակցության զարգացումից ու խորացումից և լայն մասշտաբի երկարաժամկետ այն գործարքներից, որոնք կնքվում են սովետական կազմակերպությունների և ամերիկյան խոշորագույն ֆիրմաների միջև, երկու կողմերն էլ կստանան ռեալ ու շոշափելի օգուտներ։ Ամերիկյան հեռուստատեսությամբ հունիսի 24-ին ունեցած ելույթում Լ. Ի. Բրեժնևը նշեց, որ «երկարաժամկետ տնտեսական համագործակցության զարգացումը կունենա նաև խիստ բարերար քաղաքական հետևանքներ. այն կամրապնդի ամբողջությամբ վերցրած սովետա-ամերիկյան հարաբերություններում նկատված լավ շրջադարձը»։

ՍՄԿԿ XXIV համագումարի առաջադրած խաղաղության ծրագրի կենսագործման համար Սովետական Միության հետևողական և նպատակասլաց պայքարն ավելի ու ավելի շոշափելի արդյունքներ է տալիս, ընդլայնում տարբեր սոցիալական կարգեր ունեցող պետությունների ու ժողովուրդների համագործակցության ոլորտը՝ խաղաղ գոյակցության սկզբունքների հիման վրա։ Եղբայրական սոցիալիստական երկրների աշխատավորները, համաշխարհային առաջադեմ հասարակայնությունը խոր գոհունակությամբ ընդունեցին ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի ԱՄՆ կատարած այցի, ինչպես նաև Ֆրանսիայի Հանրապետության պրեզիդենտի հետ նրա ունեցած հանդիպման արդյունքները։ Ժողովուրդները դրանք համարում են կարևոր ներդրում ընդհանուր խաղաղության հետագա ամրապնդման գործում։

Սովետական մարդիկ, միահամուռ պաշտպանելով այն բարձր գնահատականը, որ ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը, ՍՍՀՄ Մինիստրների սովետը տվեցին Լ. Ի. Բրեժնևի այցերի արդյունքներին, խաղաղ գոյակցության քաղաքականության իրականացման ասպարեզում նրա անձնական ներդրմանը, անձնվեր աշխատանքով բազմապատկում են սոցիալիստական հայրենիքի ուժն ու հզորությունը, դրանով իսկ ամրապնդելով ժողովուրդների կայուն խաղաղության ու անվտանգության հիմքերը։ «Խաղաղությունը մեր աչքում,— ասաց Լ. Ի. Բրեժնևը ամերիկյան հեռուստատեսությամբ ունեցած իր ելույթում,— այն գերագույն բարիքն է, որին պետք է ձգտեն մարդիկ, եթե ուզում են իրենց կյանքը արժանավայել դարձնել»։ ՍՍՀՄ-ի աշխատավորները բարձր են գնահատում խաղաղությունը և ջերմորեն հավանություն են տալիս մեր կուսակցության ու պետության լենինյան արտաքին քաղաքականությանը։

Հաստատակամորեն ընթանալով ՍՄԿԿ XXIV համագումարի մշակած կուրսով, Սովետական Միությունն անդուլ ամրապնդում է բարեկամական կա-

պերը սոցիալիզմի եղբայրական երկրների հետ, համակողմանի աջակցում իրենց ազատության և անկախության ամրապնդման համար պայքարող ժողովուրդներին, զարգացնում համագործակցության հարաբերություններն այլ հասարակարգ ունեցող պետությունների հետ։ Դրա համոզիչ վկայությունը ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ Ն. Վ. Պոդգոռնու Բուլղարիա կատարած այցն է, ՍՍՀՄ Մինիստրների սովետի նախագահ Ա. Ն. Կոսիգինի հուլիսի 2—5-ը Ավստրիա կատարած այցի արդյունքները, ինչպես նաև ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար Ա. Պ. Կիրիլենկոյի գլխավորությամբ կուսակցական-կառավարական պատվիրակության այցը Սիրիա։

Այսօր ամբողջ մոլորակի ուշադրությունն է գրավում ՍՍՀՄ-ի նոր խաղաղասիրական նախաձեռնությունը։ Հելսինկիում՝ Եվրոպայի անվտանգության ու համագործակցության հարցերին նվիրված խորհրդակցությունում, որի աշխատանքի առաջին փուլը ավարտվեց հուլիսի 7-ին, սովետական պատվիրակությունը՝ հանձինս ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, ՍՍՀՄ արտաքին գործերի մինիստր Ա. Ա. Գրոմիկոյի, ներկայացրեց Եվրոպայի անվտանգության հիմունքների և Եվրոպայի պետությունների հարաբերությունների սկզբունքների մասին գլխավոր դեկլարացիայի նախագիծը։ Այդ փաստաթղթում շարադրված են այն հիմնարար սկզբունքները, որոնց բազայի վրա կարող են և պետք է զարգանան նրանց հարաբերությունները՝ հանուն խաղաղության և ժողովուրդների անվտանգության ամրապնդման։

Սովետական Միության և սոցիալիստական մյուս երկրների ջանքերի, ինչպես նաև սոցիալիստական պետությունների հետ հարաբերությունները նորմալացնելու և զարգացնելու հարցում Արևմուտքի ռեալիստորեն մտածող շրջանների կոնստրուկտիվ մոտեցման շնորհիվ եվրոպական մայրցամաքում լարվածությանը փոխարինելու են գալիս համատեղ ջանքերը, որոնց նպատակն է ամրապնդել խաղաղությունը և զարգացնել փոխշահավետ հարաբերությունները։ Առաջադեմ հասարակայնությունը հաջողություններ է մաղթում անվտանգության ու համագործակցության հարցերին նվիրված խորհրդակցության աշխատանքին, որի եզրափակիչ՝ բարձրագույն փուլը Սովետական Միությունը առաջարկում է անցկացնել պետությունների բարձր մակարդակի ներկայացուցիչների մասնակցությամբ։

«Սովետական Միության միջազգային դրությունը,— նշեց Լ. Ի. Բրեժնևը Մոսկվայի Կարմիր հրապարակում 1973 թվականի մայիսմեկյան շքերթում արտասանած իր ճառում,— ամուր է ինչպես երբեք։ Սովետական մարդկանց անվտանգությունը ապահովված է ավելի հուսալիորեն, քան երբևէ։ Մեր ժողովուրդը աշխատում է հանուն խաղաղության և պայքարում խաղաղության համար՝ ի փառս ազատ աշխատանքի։ Խաղաղության ու աշխատանքի կարմիր դրոշների ներքո մենք հասել ենք ակնառու հաջողությունների, որոնցով հիանում են երկրագնդի բոլոր ազնիվ մարդիկ»։ Մեր հայրենիքը միշտ էլ եղել է, կա և կմնա որպես հուսալի և հաստատ հենարան, որպես հավատի աղբյուր բոլոր ժողովուրդների համար հանուն լուսավոր, խաղաղ ապագայի նրանց մղած պայքարում։

# ՄԱՐԴՈՒ ԵՎ ԲՆԱԿԱՆ ՄԻՋԱՎԱՅՐԻ ՓՈԽՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՊՐՈԲԼԵՄՆԵՐԸ*

Ակադեմիկ Ե. Կ. ՖԵԴՈՐՈՎ, Ի. Բ. ՆՈՎԻԿ

Ժամանակակից քաղաքակրթության առջև ծառացած պրոբլեմների ոլորտում ավելի ու ավելի է մեծանում բնական միջավայրի նկատմամբ մարդու հարաբերակցության պրոբլեմների տեսակարար կշիռը։ Ընդ որում, դրանց բնույթը էապես փոփոխվում է։ Դեռևս երկու-երեք տասնամյակ առաջ այդ պրոբլեմներից ամենադժվարինն այս կամ այն կարգի բազմապիսի «պակասությունններն» էին, իսկ մարդուն շրջապատող միջավայրը մեծ մասամբ դիտվում էր իբրև ռեսուրսների ամբողջություն, առանց որի անհնարին է արտադրել։ Այսօր բնության վրա մարդու խիստ բազմազան, չափից ավելի ներգործության վտանգն է մեզ գուժում։ Կենսաոլորտը սկսում է իմաստավորվել արտադրանքի յուրացման իր հնարավորությունների տեսանկյունով, խնդիր է ծագում առավելապես զուգակցել մարդու հարուցած ժամանակակից գիտատեխնիկական զարգացումը կենսաոլորտում ընթացող օբյեկտիվ պրոցեսներին։

Գիտատեխնիկական առաջընթացը՝ ընդարձակելով բնական ռեսուրսների օգտագործման ծավալը և մարդու փոխներգործության սահմանները միջավայրի վրա, միաժամանակ պահանջում է հասարակության պատասխանատվության բարձրացում՝ հանուն բնական միջավայրի պահպանման, հանուն այնտեղ իրականացվող նպատակահարմար վերափոխումների։ Բնական միջավայրի հետ փոխներգործության պրոբլեմն ավելի ու ավելի հրատապ է դառնում պրակտիկայի ու գիտության համար։ Միաժամանակ այն զգալի չափով հետաքրքրական է փիլիսոփայական առումով։ Դիալեկտիկական մատերիալիզմի ուսմունքի լույսի տակ, մարդու և բնության փոխներգործության փիլիսոփայական հայեցակետերի վերլուծությունը կարող է օգնել այդ փոխազդեցության ոլորտում նշմարվող որոշ դժվարությունների հաղթահարմանը։

## «ԷԿՈԼՈԳԻԱԿԱՆ ՀՈՌԵՏԵՍՈՒԹՅԱՆ» ԿՈՆՑԵՊՑԻԱՅԻ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆԸ

Մարդու և բնական միջավայրի փոխներգործության պրոբլեմն այսօր դառնում է գաղափարախոսական վիճաբանությունների առարկա։ Կապիտալիստա-

* Տպագրվում է որոշ համառոտումներով։— Խմբ.։

կան երկրներում ստեղծվող էկոլոգիական լուրջ ճգնաժամի սպառնալիքները քո-
ղարկող կեղծ օպտիմիզմի ոչ-կոնստրուկտիվ միտումի հետ մեկտեղ, արևմտյան
գրականության մեջ լուրջ մտահոգություն է նկատվում շրջապատող միջավայրի
վիճակի հանդեպ: Դա արտացոլվում է բազում աշխատություններում:

Հատկապես ուշագրավ են գիտնականների մի կոլեկտիվի ստեղծած Աճի
սահմանները գրքի նյութերը (որի տիտղոսաթերթի վրա նշված է Մասաչու-
սետի տեխնոլոգիական ինստիտուտի չորս աշխատակիցների անունները, պրո-
ֆեսոր Դ. Միդոուզի գլխավորությամբ) և Փակվող շրջագիծ գիրքը, որը պատ-
կանում է ամերիկյան հայտնի կենսաբան, էկոլոգիայի բնագավառի մասնա-
գետ՝ Բ. Կոմոների գրչին: Այս աշխատությունները, մարդկության մոտ ապա-
գայի նկատմամբ բնական միջավայրի հետ նրա փոխներգործության առու-
մով, տոգորված են տագնապի զգացումով: Դրանք հետաքրքրական փորձեր են՝
բնության և հասարակության փոխներգործության պայմաններում հասարա-
կության զարգացման կոմպլեքսային վերլուծության, քանակական կանխա-
տեսումների և բազում տեսակետների մոդելման:

Աճի սահմանները աշխատության մեջ (ինչպես և ավելի վաղ հրապարակ-
ված Ջ. Ֆորեստերի Համաշխարհային դինամիկա գրքում) հեղինակները ջա-
նացել են սիստեմային վերլուծությամբ մարդկության հետագա զարգացման
տարատեսակների թվական հաշվումներ կատարել: Հարկ է նկատել, որ, ան-
կախ ճիշտ կամ սխալ հաշվումների, նշված բոլոր աշխատությունների շատ
դրույթներ լուրջ առարկություններ են հարուցում:

Այսպես, Աճի սահմանները գրքում փորձեր են արվում սիստեմային մո-
տեցում ցուցաբերել կանխատեսման ոլորտում: Հեղինակների համոզմամբ,
այդ մոտեցման էությունը մի քանի գործոնների կիրառումն է— ազգաբնակ-
չության քանակի, ռեսուրսների ծավալի, ապականման չափի և այլն, այդ
դեպքում բացահայտվում է դրանց ներգործության հանրագումարային ար-
դյունքը՝ դրանցից յուրաքանչյուրի փոփոխման զանազան տարբերակների
դեպքում: Սակայն, նման մոտեցման ժամանակ յուրաքանչյուր պարամետրի
դինամիկան ենթադրվում է մյուս փոփոխություններից անկախ: Դրանցից մեկի
տեղաշարժը վերլուծվում է մյուսների անփոփոխության ենթադրմամբ, իսկ
մարդկային հասարակության պարամետրերի համակարգի ամբողջական հատ-
կությունները սպրդում են ուշադրությունից: Այսպես, օրինակ, հեղինակները
կարծում են, որ եթե մարդիկ կարողանային զգալի չափով բարձրացնել բնա-
կան ռեսուրսների օգտագործման արդյունավետությունը, ապա դա, վերաց-
նելով սովի ու անապահովության սպառնալիքը, արտադրության այնպիսի
խիստ աճ կառաջացներ, որ միջավայրի ապականման համապատասխան
ավելացումը մարդու կյանքի համար Երկրագնդի վրա անհանդուրժելի պայ-
մաններ կստեղծեր:

Այնինչ, ռեալ մարդկային հասարակությունը գծային համակարգ չէ: Նրա
զարգացման բազմաթիվ բնութագրերը սերտ կապված են միմյանց՝ ուղիղ և
հակառակ կապերով: Մեր կարծիքով, անտեսելով այդ կապերը, չի կարելի
այժմյան տենդենցների հիման վրա որոշել զարգացման յուրաքանչյուր առան-
ձին պարամետրի աճը:

Հեղինակների պնդմամբ, մարդկության համար հիմնական սպառնալիքը
ստեղծվում է բնական ռեսուրսների սպառումից և բնական միջավայրի ապա-



կանումից, որոնք անխուսափելի հետևանք են բնակչության աճի և այդ աճը
գերազանցող արտադրության ու սպառման ընդլայնման: Բայց, դրան հակա-
ռակ, կարելի է բերել առնվազն երեք էական առարկություն:

1. Բնակչության աճի հարցը քննարկելիս, անհրաժեշտ է նկատել, որ իր
նմանների անսահմանափակ բազմացումն ընդհանրապես չի կարող հասարա-
կական մարդու նպատակը լինել: Քաջ հայտնի է, որ բնակչության աճը սեր-
տորեն կապված է տնտեսական ու սոցիալական պայմանների հետ և տենդենց
ունի նվազելու կենսապայմանների բարելավման և ուրբանիզացիայի աստի-
ճանի բարձրացման դեպքում: Աճը սահմանափակող այնպիսի գործոններով
ինչպիսիք հիվանդությունների ու սովն են, մեծանում է առանձին ընտանիքնե-
րի շահերով ու ցանկություններով պայմանավորված գիտակցական կարգա-
վորման դերը: Սակայն մենք անհնարին կամ անթույլատրելի չենք համարում,
որ գիտակցաբար զարգացող մարդկային հասարակությունն անհրաժեշտ կհա-
մարի կարգավորելու իր թվաքանակը (դրա այս կամ այն կողմը) այնպես,
ինչպես ներկայումս— սոցիալիստական երկրներում— նա սկսել է կարգավո-
րել իր որակական կազմը:

Մեթոդաբանական սխալ է ազգաբնակչության մասին խոսելիս՝ ողջ ուշա-
դրությունը բևեռել միայն նրա քանակի վրա: Ամենևին էլ միայն քանակով չի
որոշվում բնակչության կացությունը: Հայտնի է, որ բնակչության ապրելակեր-
պի այնպիսի բացասական հատկությունը, ինչպիսին կապիտալիստական եր-
կրներում մշտապես գոյատևող, իսկ ժամանակ առ ժամանակ վիթխարի չա-
փերի հասնող գործազրկությունն է, բացատրվում է ոչ թե լոկալ «դեմոգրաֆիկ
պայթյուններով», այլ սոցիալական ու տնտեսական միանգամայն պարզ պատ-
ճառներով:

Անգամ այնպիսի պայմաններում, երբ աշխատունակ բնակչության ընդ-
հանուր թիվը, այս կամ այն չափով, համապատասխանում է արտադրության
հնարավորություններին, էական դեր է կատարում նրա որակական կազմը—
բնակչության բաժանումն ըստ պրոֆեսիաների, մասնագիտությունների, հան-
րակրթական մակարդակի, ըստ հետաքրքրությունների և այլն: Որակական
կազմը, բառիս բուն իմաստով, արդյունք է կադրերի պատրաստման: Այն,
անկասկած, պետք է համապատասխանի արտադրության հետագա զարգաց-
ման խնդիրներին, որոնք, իրենց հերթին, պետք է ենթարկվեն հասարակու-
թյան ընդհանուր սոցիալական նպատակին: Յուրաքանչյուր կյանք մտնող
սերնդի՝ իր դերի կատարման բանական նախապատրաստումը արտադրու-
թյան մեջ, արտադրություն, որը ռեսուրսների ու ժամանակի մեծ մասն իր
վրա է կենտրոնացնում, հենվում է, ամենից առաջ, հասարակության զարգաց-
ման երկարատև հեռանկարների վրա: Դրա հետ մեկտեղ, այն պետք է ճիշտ
զուգակցի յուրաքանչյուր առանձին մարդու անձնական շահերի և ունակու-
թյունների դրսևորումն ու օգտագործումը և հասարակական զարգացման տեն-
դենցները:

Այդպիսով, հասարակության վիճակը որոշող մի շարք պարամետրերի
կարգավորումը, մեր կարծիքով, անհրաժեշտ է և արդեն իրականացվում է սո-
ցիալիստական հասարակարգում:

Կբավի՞ արդյոք «ինքնակարգավորումը» հետագայում, որպեսզի բնակչու-
թյան թիվը համապատասխանի նրա պահանջմունքների բավարարման հնա-
րավորություններին, ցույց կտա ապագան:

2. Բ. Կոմոները, Ջ. Ֆորեստերը և Դ. Միդոուզն իրենց հեղինակակիցների հետ մեկտեղ, բնական ռեսուրսների ամբողջությանը (որպես մարդկության պահանջմունքների բավարարման հնարավորությունների չափանիշի) վերագրում են ներկայի համար նախնական մի ինչ-որ մեծություն, որը հետագայում է միայն սպառվում, ծախսվում։ Դրան չի կարելի համաձայնել, չի կարելի բացարձակացնել մոտեցումը բնական ռեսուրսների հանդեպ (իբրև մարդու համար անհրաժեշտ ամեն ինչի աղբյուրի) այսօրվա տեսանկյունով։ Անհրաժեշտ է նկատի ունենալ, որ ամեն մի կոնկրետ տեսակետ փոխվում է, ինչպես այն տեսակետը, թե շրջապատող միջավայրի տվյալ տարրը բնական ռեսուրս է, այնպես և դրա օգտագործման եղանակներինը, այդ է վկայում պատմությունը, ընդ որում, հիմնավորապես։

Երկրի ամեն մի չվերականգնվող բնական հարստության ընդհանուր ծավալը, հասկանալի է, միայն կրճատվում է։ Սակայն սա չի նշանակում դրա հետ կապված մարդկության այս կամ այն պահանջմունքի բավարարման հնարավորությունների կրճատում։ Ընդհակառակը, գիտության առաջընթացի և արտադրաեղանակների փոփոխման ընթացքում այդ հնարավորությունները մեծանում են ինչպես ամեն մի տվյալ ռեսուրսի օգտագործման արդյունավետության բարձրացման ու բնական նոր հարստությունների գործադրման, այնպես և մարդու տվյալ պահանջմունքը բավարարելու նպատակով սկզբունքորեն նոր ուղիների որոնման հաշվին։ Եթե այդպես չլիներ, մարդկությունը վաղուց փակուղու մեջ կընկներ։ Ոչ միայն Երկրի ներկայիս, այլև դրանից առավել սակավ բնակչությունը չէր կարող, օրինակ, սնվել միայն որսով, ինչպես մեր հեռավոր նախնիները։

Ինչ վերաբերում է վերականգնվող բնական ռեսուրսներին, ապա դրանց օգտագործման եղանակների փոփոխման հետ մեկտեղ, հարկ է նկատի ունենալ նաև վերականգնման և ռեսուրսների իսկ օգտակար հատույցի բարձրացման ամբողջ ցիկլի վերափոխման հնարավորությունը։

3. Չի կարելի համաձայնել արտադրության զարգացման և բնակչության աճի հետ կապված միջավայրի շարունակ ապականման և մարդու համար անբարենպաստ այլ փոփոխությունների անխուսափելիության վերաբերյալ պնդմանը։

Բ. Կոմոները հանգամանորեն ուսումնասիրելով օդի, ջրամբարների և հողի արագ ապականման պրոցեսն ԱՄՆ-ում, հետպատերազմյան 25 տարիների ընթացքում, ցույց տվեց, որ ապականման (բնակչության մեկ շնչին ընկնող մոտ 7—8 անգամ), ավելացումը պատճառ է ոչ թե արտադրության ծավալի համապատասխան աճի (որ մոտ 50 տոկոս է) և ոչ էլ մեկ շնչի պահանջմունքների (մոտ 6 տոկոս), այլ արտադրության ոլորտի և պահանջմունքների փոփոխությունների (քիմիական պարարտանյութերի, սինթետիկ նյութերի, դետերգենտների, մեծ ավտոմեքենաների ավելի շատ օգտագործման և այլն), որ հետևանք է միայն առավել շահույթ ստանալու մոնոպոլիաների ձգտմանը։ Հենց սոցիալ-տնտեսական գործոնները և, ամենից առաջ այն, որ մասնավոր ձեռնարկատիրոջ շահերը այս և շատ այլ հարցերում հակասում են հասարակության շահերին, բնական ռեժիմի վրա մարդու անբարենպաստ ներգործության հիմնական պատճառներն են։

Ժամանակակից գիտությունն ու տեխնիկան մշակում են փակ տեխնոլոգիական ցիկլի վրա հիմնված այնպիսի արտադրաեղանակներ, որոնք բացառում են թափուկի նետումը արտաքին միջավայր կամ դրանք հասցնում չնչին չափերի, ստեղծում են աղբը շինանյութի վերածող եղանակներ, գտնում գյուղատնտեսության և պարարտանյութերի վնասատուների դեմ պայքարի բարձր ընտրողական բիոլոգիական հնարներ՝ զերծ կողմնակի վնասակար ազդեցությունից։ Սակայն այդ եղանակներից շատերի կիրառումը կարող է պակաս շահավետ լինել ձեռնարկատիրոջ կամ հողատիրոջ տեսակետով, իսկ արտադրության վերակառուցումը դրանցից յուրաքանչյուրի գործադրման նպատակով, թերևս, հսկայական միջոցներ կպահանջի։





## ԱՌԱՋԸՆԹԱՑԸ ԵՎ ԿԵՆՍԱՈԼՈՐՏԸ

Չկարողանալով ըմբռնել ժամանակակից գիտա-տեխնիկական զարգացման և շրջապատող միջավայրի իրական փոխհարաբերությունները, բուրժուական որոշ հետազոտողներ, գալիս են այն համոզման, որ հենց այսօր կենսաոլորտի պայմանները դառնում են մարդկային հասարակության առաջընթացի հնարավորությունները սահմանափակող գործոն։

Անվիճելի է, ինչպես նշել է Հես Հոլը, 1972 թ. լույս տեսած իր՝ Էկոլոգիա. կարո՞ղ ենք կենդանի մնալ կապիտալիզմի ժամանակ գրքում, որ «շրջապատող միջավայրի ապականումը ոչ միայն ապագայի սոցիոլոգիական լուրջ պրոբլեմն է, այլև այսօր կործանարար է մարդկանց առողջության ու կյանքի համար։ Այն մեր մոլորակի ողջ կյանքին է սպառնում»։

Սակայն հասարակության և բնական միջավայրի փոխներգործության պրոբլեմում ոչինչ ճակատագրական չկա, այն կարող է և պետք է լուծվի ոչ թե ստագնացիայի կամ պատմական զարգացման հետընթաց ուղիով, այլ, ընդհակառակը, մարդկության հետագա առաջընթացով։

Ընդ որում, հարկ է նկատել, որ ռեալ չեն մարդու կողմից բնությանը «չմիջամտելու» պահանջները, բնական միջավայրը անփոփոխ պահպանելու պահանջները։ Բնակչության առողջությանը վտանգող միջավայրի ապականումը կարելի է և պետք է կանխվի, բայց որոշակի փոփոխությունները բնական միջավայրի կազմում անխուսափելի են, թեկուզ և այն պատճառով, որ յուրաքանչյուր արտադրանքի ու հումքի նյութերը մասամբ ցրվում են իրենց ծառայության ժամկետի ընթացքում (դրան ավելի հանգամանորեն կանդրադառնանք ստորև)։ Անխուսափելի է նաև մոլորակի ջերմային հաշվեկշռի որոշ փոփոխություն, որն էներգիայի ամեն կարգի ծախսումից անջատվող լրացուցիչ ջերմության արդյունք է[1]։ Բնական միջավայրի որոշակի նպատակասլաց վերափոխումները— չորային շրջանների ոռոգումը, ջրային սիստեմների փոփոխումը էներգետիկ ու փոխադրական նպատակներով և այլն— անհրաժեշտ են մարդկության բուն գոյատևման ու զարգացման համար։ Այդպիսի վերափոխումների մասշտաբները կընդլայնվեն։

Այդ հրամայաբար պահանջում է բնական միջավայրի վրա յուրաքանչյուր ներգործության ինչպես անմիջական, այնպես և հեռավոր հետևանքների հաշվարկի մեթոդների մշակում, որպեսզի նման գործողությունների առանձին տարրերը ներդաշնակորեն շաղկապվեն միմյանց և մարդու համար առավել բարենպաստ պայմանների ամբողջություն ստեղծեն մեր մոլորակի վրա։ Այդպիսով, ոչ թե ինչ-որ մի ստատիկ «բնական հավասարակշռության» պահ-

1 Ավելի ճիշտ, վառելիքի կամ ատոմային ռեակցիաների օգտագործումից ստացվող էներգիայի ծախսման արդյունք է։





պանումը, այլ մեր մոլորակի բնության կանոնավոր զարգացող, նպատակասլաց և խիստ հաշվենկատ վերափոխումը պետք է դառնա հասարակության և բնական միջավայրի փոխներգործության հիմքը։

Հետևողականորեն ուսումնասիրելով «միջավայրի ճգնաժամի» և տնտեսական ու սոցիալական գործոնների միջև եղած կապերի տարբեր առումները, Կոմոները հանգում է այն հետևության, որ մարդկությունը չի կարող խույս տալ միջավայրի ճգնաժամից՝ առանց հիմնովին վերափոխելու կապիտալիստական երկրներում ներկայումս գործող տնտեսական ու սոցիալական սիստեմը։ Նա ընդունում է, որ սոցիալիստական հասարակարգը— ինչպես նրա գործունեության տեսական հիմունքները, որ դեռ Կ. Մարքսն է քննարկել, այնպես և նրա պրակտիկ մարմնավորումը— Սովետական Միության օրինակը— էական առավելություն ունի կապիտալիստականի հանդեպ՝ բնական միջավայրի վրա իր ներգործության ամենանպատակահարմար կազմակերպման առումով։ Տրտընջալով, և ո՜չ առանց որոշ հիմքի, որ «պլանի կատարումը» հաճախ հարկադրում է սովետական ձեռնարկությունների ղեկավարներին բնական միջավայրին վերաբերել ԱՄՆ-ի իրենց կոլեգաներից ոչ ավելի լավ, Կոմոները, միաժամանակ ճիշտ է նկատում, որ ՍՍՀՄ կառավարությունը և հասարակայնությունը վերջին տարիների ընթացքում ո՜չ միայն լավ ըմբռնեցին էկոլոգիական ճգնաժամի վտանգը, այլև ռեալ, ավելի ու ավելի լայն միջոցներ են ձեռնարկում դրա կանխման համար։

Անշուշտ, մենք ամենևին գոհ չենք կենսոլորտի օպտիմացման մեր հասած աստիճանից և, կցանկանայինք այն մեծացնել, ամենից առաջ, սոցիալիստական հասարակության տեսակետից, հարկադրական այն ծախսերի հաշվին, որոնք արվում են սպառազինության, պաշտպանունակության պահպանման, ռազմական մարզի գիտական պրոգրեսի նպատակով։

Չնայած հակազդող այդ հանգամանքներին, սոցիալիստական հասարակարգը, ամբողջովին առած, ընթանում է հենց բնական միջավայրի վրա իր ներգործության օպտիմացման ուղիով, ուսումնասիրվող տեսակետի հիման վրա հեռանկարներ բացելով ողջ մարդկության համար։ Այդ առումով սկըզբունքորեն խիստ կարևոր էր բնական միջավայրի պահպանման և բնական ռեսուրսների նպատակահարմար օգտագործման խնդիրը խաղաղության հանրահայտ ծրագրում մտցնելը, որը ՍՄԿԿ XXIV համագումարում, իր հաշվետու զեկուցման մեջ, առաջադրեց Լ. Ի. Բրեժնևը և հավանության արժանացավ համագումարի կողմից։ Սովետական կառավարությունը հաստատակամորեն իրականացնում է հիշյալ ծրագիրը։

Մեր երկիրը միանգամայն անհրաժեշտ է համարում միջազգային լայն համագործակցությունը՝ բնական միջավայրի և հասարակության փոխներգործության ճիշտ կազմակերպման համար։

ՍՍՀՄ և ԱՄՆ կառավարությունների միջև 1972 թ. մայիսին ստորագրված համաձայնագիրը՝ շրջապատող միջավայրի պահպանման վերաբերյալ, ինչպես և այդ ասպարեզում Սովետական Միության համագործակցությունը Ֆրանսիայի, Շվեդիայի, Ֆինլանդիայի և Տնտեսական փոխօգնության խորհրդի մեջ մտնող երկրների հետ, համապատասխանում է ողջ մարդկության համար անհետաձգելի և կենսական նշանակություն ունեցող որոշակի նպատակադրմանը՝ մարդու փոխներգործության օպտիմացում մոլորակի բնական միջավայրի հետ և դրան հասնելու համաձայնեցված երկարատև ծրագրի ուրվագծմանը։



## ՍՏԱԳՆԱՑԻԱ, ԹԵ ՊՐՈԳՐԵՍ

Ուսումնասիրելով կանխատեսվող պարամետրերի զանազան տարբերակների զուգորդումները մինչև եկող հարյուրամյակի կեսերը, Ջ. Ֆորեստերը և Աճի սահմանները գրքի հեղինակները նշում են, որ, այժմյան տենդենցներին համապատասխան, դրանց տևական աճի դեպքում, 50—70 տարի անց կարող է սկսվել Երկրի բնակիչների ավել կամ պակաս ինտենսիվ մահացում։ Ընդ որում, ակնարկվում է, որ եթե «երրորդ աշխարհի» երկրները չինդուստրանան, ապա գալիք «ընդհանուր մահացումը» նրանց առավել պակաս կվերաբերի։

Բ. Կոմոները այնքան էլ պարզորոշ չի բնութագրում այսօր իսկ սկսված «բնական միջավայրի ճգնաժամի» զարգացման հետևանքը, որ սպասում է մարդկությանը, բայց, այնուհանդերձ, դա համարում է համաշխարհային աղետ— «կոլապս»։

Համաշխարհային դինամիկայի և Աճի սահմանների հեղինակների տեսակետով, այդ տխուր ճակատագրից փրկվելու միակ միջոցը բոլոր պարամետրերի կրճատումն է (բնակչության, պահանջմունքների, ապականման, արտադրության) և մի ինչ-որ համապարփակ կայունացման վիճակ, «համաշխարհային հավասարակշռության վիճակ» ստեղծելը։

Պատմության մեջ այդ հետընթաց շարժմանը փիլիսոփայական հիմնավորում տալու համար, հեղինակները վկայակոչում են շրջապտույտի տեսությունը, նշելով Հերակլիտի հանրահայտ տողերը. «Շրջագծի սկիզբն ու վերջը համընկնում են»։

«Փակվող շրջագծի» կոնցեպցիան առաջ է քաշում նաև Բ. Կոմոները։ Ուշադրությունն արդարացիորեն բևեռելով այն բանին, որ մոլորակի վրա միակողմանի ընթացող անտրոպոգեն պրոցեսները կարող էին տեղի ունենալ, քանի դեռ դրանց մեջ ներգրավվող նյութերի կամ էներգիայի քանակը աննշան էին բնական երևույթների համեմատ. նա պնդում է, թե հարկավոր է մարդու ողջ արտադրական գործունեության այնպիսի վերափոխում, որ վերջինիս հարուցած նյութերի ու էներգիայի շրջապտույտների ցիկլերն անպայման փակվեն։ Նրա կարծիքով, դա անհրաժեշտ է, որպեսզի բնական միջավայրը լիովին ու անվնաս «իրացնի» մարդկային գործունեության ամեն մի վերջնական արդյունք։

Ընդ որում, եթե իբրև անսասան հիմք ընդունենք մոլորակի վրա այժմ գոյություն ունեցող նյութերի հորձապտույտը և էներգիայի հաշվեկշիռը, ապա անտեսական գործունեության ոլորտը բնական միջավայրի կողմից իրացվող նյութեր ներմուծելը, օրինակ, սինթետիկ նրբաթելեր կամ դետերգենտներ, ինչպես և հանածո կամ ատոմային վառելանյութ, անթույլատրելի է, քանի որ դա, վերջին հաշվով, հանգեցնում է բնության գեոքիմիական, էներգետիկ կամ այլ տարրերի բնական հավասարակշռության հաշվեկշռի խախտման։

Այդ կապակցությամբ Կոմոներն անհրաժեշտ է համարում արդյունաբերական և գյուղատնտեսական արտադրության համապատասխան վերակառուցում նախ՝ ԱՄՆ-ում, ապա և ողջ աշխարհում։ Անցումը՝ «էկոլոգիական առումով հիմնավորված» արդյունաբերության և գյուղատնտեսության տեխնոլոգիայի, պետք է զուգակցվի ազգաբնակչության աճի, արտադրության ծավալների և ցիկլերի արագությունների կարգավորմամբ։ Այստեղ ևս պահանջվում է ստեղծել կայուն հավասարակշռված վիճակ։

Հեղինակները, այսպիսով, ստեղծում են էկոլոգիական հոռետեսության յուրօրինակ ըմբռնում, որն օբյեկտիվորեն, անկախ հեղինակների սուբյեկտիվ ցանկություններից, վերածվում է ստագնացիայի ջատագովության, մերժվում է սոցիալական առաջընթացի հումանիստական գաղափարը։

Հակառակ նեոմալթուսականների պնդումների, մարդու հիմնական պահանջմունքների բավարարման պոտենցիալ հնարավորությունը, որը բխում է մոլորակի հայտնի ու տվյալ պահին օգտագործելի ռեսուրսների և արտադրաեղանակների ու նրա բնակչության թվի համադրումից, միշտ մեծացել ու մեծանում է բնակչության աճից առավել արագ։ Մարդկության զարգացման յուրահատկությունն է այդ։ Դեռևս Վ. Ի. Լենինն իր ժամանակի մալթուսականների հետ բանավիճելիս նկատել է, որ, այսպես կոչված՝ «հողի նվազող պտղաբերության օրենքը» կարող է ունենալ պայմանական նշանակություն միայն տեխնիկայի անփոփոխ մնալու դեպքում և այս ամենևին կիրառելի չէ տեխնիկական առաջընթացի պայմաններում (տե՛ս Երկեր, հ. 5, էջ 135—152)։ Հասարակությունը մշտապես փոփոխում է շրջապատող միջավայրի հետ իր փոխներգործության եղանակները— արտադրաեղանակները բառիս բուն իմաստով։

«Մալթուսյան փակուղիները» կարող էին առաջանալ մարդկության զարգացման յուրաքանչյուր փուլում, եթե տեխնիկան առաջընթաց չապրեր, եթե արտադրաեղանակները չբարեփոխվեին։ Կենսաոլորտում ժամանակ առ ժամանակ տեղի ունեցող այդ աղետները հետևանք են օրգանիզմների՝ իրենց ապրելավայրի արեալում որևէ պատճառով արագացած աճի, երբ անփոփոխ է օգտագործելի ռեսուրսների ծավալը։ Խախտված հավասարակշռությունն այստեղ հնարավոր է վերականգնել միայն քանակի պակասեցմամբ— բնաջնջմամբ կամ զանգվածային գաղթով՝ արեալի սահմաններից դուրս։ Կենդանիներն ու բույսերը չեն կարող փոփոխել, բարձրացնել միջավայրի հետ իրենց փոխներգործության արդյունավետությունն այլ կերպ, քան բիոլոգիական էվոլյուցիայի չափազանց դանդաղ պրոցեսում։ Սակայն այդ դրույթը չի տարածվում մարդկության վրա։

Մեր մոլորակի կենսաոլորտը— օրգանական ձևերի կենսագործունեության արգասիք է, միաժամանակ, մարդու գործունեության օբյեկտ է։ Այդ առումով, կենսաոլորտը պետք է դիտել մարդկային գործունեության զարգացման տենդենցներին զուգորդված։ Միանգամայն տեղին են հայտարարություններն այն մասին, որ անթույլատրելի են բնության ստեղծած կենսաոլորտի վիճակի անխտեմ, քաոսային խախտումները։ Սակայն չի կարելի այդ վիճակը միակ հնարավորը համարել։ Մեր կարծիքով, հավանական է (ու երբևէ անխուսափելի կդառնա) կենսաոլորտի նպատակասլաց, սիստեմատիկ փոփոխումը— դրա արդյունավետության բազմապատկումը բառի բուն իմաստով— մարդկային հասարակության աճող կարիքներին համապատասխան։ Մարդկությունը կարող է պրոգրեսիվ զարգանալ այն դեպքում, երբ իր գործունեության ընթացքում հաշվի առնի կենսաոլորտի օպտիմացման խնդիրները։ Կենսաոլորտի օպտիմացումն էլ, ըստ էության, մարդկային գործունեության օպտիմացման ձևն է։

## ԿԵՆՍԱՈԼՈՐՏԸ ԵՎ ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅՈՒՆԸ

Մարդկային գործունեության մասշտաբների ակնհայտ բազմապատկումը՝ ժամանակակից գիտա-տեխնիկական հեղափոխության պայմաններում, էա-



պես փոխում է հասարակության և բնական միջավայրի փոխհարաբերությունը։ Պատմության վաղ շրջանում ամենուր բնության կողմից ճնշված թույլ մարդու փոխարեն, մենք տեսնում ենք տեխնիկապես հզոր ժամանակակից մարդուն, որը շատ դեպքերում ի վիճակի է ազդելու շրջապատող միջավայրի վրա։

Մարդկության պատմության մի երկարատև ժամանակաշրջան բնական ռեսուրսները պատկերացվում էին անսահման՝ Երկրագնդի սակավաթիվ բնակիչների կողմից դրանց օգտագործման համեմատաբար աննշան հնարավորությունների հետ բաղդատած։ Մարդու հիմնական խնդիրը, բնության հետ փոխներգործության բնագավառում, թվում էր ռեսուրսներ հայթայթելն է, բնական միջավայրից դրանք առավել արդյունավետ կորզելը։

Որոշ բնական հարստությունների սպառվելը, ամենից առաջ, օգտակար հանածոների, անցյալ հարյուրամյակի վերջում և այս հարյուրամյակի սկզբում, հիշեցրեց դրանց սահմանափակ լինելը՝ մարդկության արագ, ըստ էության, անվերջ աճող պահանջմունքների համեմատ։ Բազմաթիվ հետազոտողներ սկսեցին հաշվարկել չվերականգնվող ռեսուրսների ընդհանուր հնարավոր պաշարները և նշեցին դրանց սպառվելու հավանական ժամկետները։ Որոշ խիստ կարևոր բնական հարստությունների պակասելը, օրինակ, ածխի կամ նավթի, մարդկային բարեկեցության համար լուրջ սպառնալիք էր համարվում։ Ենթադրվում էր, որ բնության հետ փոխներգործության մարդկության ճգնաժամը կառաջանա հումքի կամ վառելանյութի պակասությունից։

Սակայն, իրականում զարգանում են երկու պրոցեսներ. մի կողմից՝ հայտնաբերվում են օգտակար հանածոների նորանոր պաշարներ, որ հանգեցնում է մոլորակի վրա դրանց հայտնի ծավալի արագ աճին, չնայած մեծացող (պակաս արագ) պահանջմունքներին, մյուս կողմից՝ նույնքան արագ բազմապատկվում է նյութերի մի տեսակը մյուսին վերափոխելու ունակությունը— «ամեն ինչ՝ ամեն ինչից» արտադրելու ունակությունը, որ թուլացնում է մարդու կախումը բնական հարստությունների կոնկրետ տեսակներից և, վերջապես, ստեղծվում են սննդի, էներգիայի, նյութերի ու մարդու այլ պահանջմունքների բավարարման սկզբունքորեն նոր եղանակներ և այլն։

Դա նշանակում է, որ երկրագնդի բոլոր նյութերը, ապա և մարդու օգտագործման համար մատչելի տիեզերքի նյութերը աստիճանաբար կդառնան բնական ռեսուրսների ընդհանուր և համապարփակ չափանիշը, մինչև մարդիկ կսովորեն ստանալ «ամեն ինչ՝ ամեն ինչից»։ Առայժմ նյութերի անդարձ վատնումը երկրի վրա չափազանց քիչ է— այն իրականացվում է ատոմային ու ջրածնային էներգիայի արտադրմամբ և Երկրի սահմաններից դուրս տիեզերական սարքեր ուղարկելու դեպքում։

Դա Երկրի ու տիեզերքի միջև կատարվող նյութերի անընդհատ փոխանակության մի չնչին մասն է միայն։ Երկիրը տիեզերքից եկող երկնաքարերի և զանազան մասնիկների ընկնելու հաշվին ամեն օր ստանում է մի քանի հազար տոննա նյութ և, միաժամանակ, մի քանի հարյուր տոննա նյութ կորցնում մթնոլորտի վերին շերտերից ցրվող գազերի հաշվին։

Այդ հանգամանքը բնական ռեսուրսների ընդհանուր ծավալը կրկին հասցնում է պրակտիկ «անվերջության»՝ դրանք մարդկության կողմից օգտագործելու հնարավորությունների համեմատ, մանավանդ որ միանգամայն հավանական է համարվում ո՛չ միայն Երկրի նյութերի, այլև մեզնից համեմատաբար

ոչ-մեծ հեռավորության վրա գտնվող տիեզերական օբյեկտների օգտագործումը։

Կենսաոլորտի օպտիմացումը պահանջում է, որ արտադրության արագացմամբ ոչ մի կերպ չավելանան թափուկները։ Դյուրին չէ դրա իրականացումը։ Մանավանդ որ թափուկների հեռացման պրոբլեմը բախվում է պահպանության օրենքներին— փակ համակարգում թափուկների հեռացման ցանկացած ձևը, այսպես թե այնպես, պետք է դրանք ներառնի բնական պրոցեսի մեջ։ Ընդ որում, փակ համակարգի գաղափարն ընքնին անկայուն է։ Այն, ինչն այսօր պատկերացվում է ինչ-որ մի փակ համակարգի սահմաններից դուրս, վաղը դառնում է ինչ-որ առավել ընդարձակ վերհամակարգի ներքին տարր։ Այսպես, օրինակ, թափուկները նետելով մթնոլորտից վեր, ուր քամու արագությունները մեծ են, մենք հաջողությամբ թափուկները հեռացնում ենք քաղաքի սահմաններից։ Բայց այդ կարգի թափուկներով ողջ մթնոլորտը հագեցնելուց հետո պարզվում է, որ խողովակի բարձրությունը չէ էականը. առավել ընդարձակ փակ համակարգում միևնույնն է երևան կգան թափուկների պահպանման օրենքները։ Ուստի, անհրաժեշտ են թափուկների դեմ պայքարի այլ, առավել արմատական միջոցներ (քիմիական կայեր, մաքրող սարքավորումներ և այլն)։ Այդ բնագավառին վերաբերող բազում հարցեր է քննարկել Բ. Կոմոները։

Էկոլոգիական առումով անընդունելի ապականումն ու թափուկները, որոնք գոյանում են արտադրության մեջ նյութերի վերափոխումների պրոցեսում, կարող են և պետք է վերացվեն։ Բայց, ինչպես նշվեց, մենք չենք կարող բացառել շրջապատող միջավայրի կազմի առավել թույլ, բայց մեծացող փոփոխությունները, որոնք կապված են նյութերի մասերի անխուսափելի ցրման հետ՝ դրանցից օգտակար առարկաներ պատրաստելու ընթացքում։ Այսպես, կոռոզիայի հետևանքով ցրվում է երկաթյա արուրքների նյութերի մի քանի տոկոսը։ Բնական միջավայրը միշտ «հարստանում» (կամ «թունավորվում») է ո՛չ միայն արտադրության թափուկներով, այլև զանազան տարրերով, որոնք մտնում են մեր գործունեության նպատակահարմար արտադրանքների կազմի մեջ։ Տարբեր ուղիներով բնական միջավայր մտած նյութերը, բնական գեոֆիզիկական պրոցեսների պատճառով, սկզբում ցրվում են, ապա բիոլոգիական պրոցեսների հետևանքով խտանում են և, ի վերջո, կուտակվում օրգանիզմների մեջ։

Մեր կարծիքով, նյութերի այդ անխուսափելի ցրման հնարավոր վնասակար ազդեցությունն սկզբունքորեն կարելի է հաղթահարել համապատասխան կոմպենսացնող պրոցեսներով, օրինակ, կառավարելի համակենտրոնացված բիոլոգիական միջոցներով միջավայրից հեռացվելու կամ մի նյութը մյուսով չեզոքացնելու հաշվին։ Այդ կարող է միանգամայն լուրջ պրոբլեմ դառնալ։ Դրա լուծման համար անհրաժեշտ է ստեղծել հաշվումների բավական ճշգրիտ մեթոդներ և կենսաոլորտի որոշ պրոցեսների կառավարման մեթոդներ։

Հետաքրքրական ու կարևոր պրոբլեմներ են ծագում մոլորակի էներգետիկական հաշվեկշռի փոփոխմամբ։

Մարդու ողջ գործունեությունը ուղեկցվում է ջերմության անջատմամբ։ Անտրոպոգեն ջերմությունը ներկայումս կազմում է արևից հասնող ջերմային էներգիայի մոտ 0,01—0,02 տոկոսը։ Սա դեռ շատ փոքր մեծություն է։ Սակայն, էներգազինվածության աճի այժմյան տենդենցների պահպանման դեպ-



քում, հնարավոր է, որ, 50—70 տարի անց, այն կավելանա մինչև 1—2 տոկոս, իսկ դա կարող է լուրջ հետևանքների հանգեցնել։

Այստեղ մենք պետք է հիշեցնենք, որ բնական միջավայրի պրոցեսները ժամանակ առ ժամանակ անկայուն վիճակում են գտնվում։ Օդերևութաբանական պրոցեսների անկայունության օգտագործման վրա են հիմնված եղանակի բարեփոխման, կարկուտի կանխման, ամպերի ցրման և այլ մեթոդներ։

Սակայն նման անկայունություն հնարավոր է, ըստ երևույթին, նաև կլիմայի առաջացման պրոցեսներում։ Եթե դա այդպես է, ուրեմն տրիգերային մեխանիզմները, որ ունակ են մեծ մասշտաբների պրոցեսները մի վիճակից մյուսին փոխադրել, կարող են ստեղծել և այնպիսի երևույթներ, ինչպես ջերմաստիճանի բարձրացումն է 1—2°։

Այդ ունի իր դրական և բացասական կողմերը։ Դրականն այն է, որ հնարավորություն է ընձեռվում մեզ համեմատաբար փոքր միջոցներով մեծ փոփոխությունների հասնել՝ ընդհուպ մինչև կլիմայի փոփոխությունը (ճշմարիտ է, կլիմայի ազատակամ «ընտրությունը», անհնար է, բնության բոլոր գործոնների սերտ կապի պատճառով)։ Իսկ բացասականը կապված է այն բանի հետ, որ հավասարակշռության խախտումները կարող են տեղի ունենալ անկախ մեր ցանկությունից, մեզ համար աննկատ։

Լրացուցիչ ջերմության գոյացումից չի կարելի խուսափել[1], բայց կանխել դրա անցանկալի հետևանքները սկզբունքորեն հնարավոր է, օրինակ, ներգործությունը ջերմային հաշվեկշռի վրա հավասարակշռել ամպամածության կարգավորման եղանակով։

Նյութական և էներգետիկ տեսանկյունների հետ մեկտեղ, կենսաոլորտի օպտիմացման բնագավառում առավել կարևոր դեր կտրվի կիբեռնետիկայի հետ կապված ինֆորմացիոն-համակարգային առաջադրանքներին։ Այդ տեսանկյունով, մարդը և բնական միջավայրը դիտվում են որպես ամենալայն համակարգի ներքին տարրերի (ավելի ճիշտ, ենթահամակարգի) փոխանակվող ինֆորմացիաներ։ Այդ համակարգը կարող է ինքնաղեկավարվել այն ժամանակ, երբ նրա տարրերը (մարդը և բնությունը), միմյանցից անկախ, զգալի չափով կորցնում են ինքնակարգավորման կարողությունը։ Այդ առումով, բնությունը հանդես է գալիս ոչ թե որպես մի ինչ-որ արտաքին բան՝ մարդու գործունեության վերաբերմամբ, այլ իբրև նրա ներքին (սոցիոբիոգենոցենոզի շրջանակներում) պայման։

Հետագա զարգացման ընթացքում առավել էական գործոն կդառնա մարդու կարգավորող ներգործությունը, որը գնալով ավելի ու ավելի հիմնավորապես է վերափոխում բնական միջավայրը՝ համապատասխան հասարակության վերընթաց զարգացման պահանջմունքներին։ Այդ ներգործության համար հարկավոր կլինեն առավել շատ գիտական ինֆորմացիաներ ու տեխնիկական այլևայլ միջոցներ։

Հետաքրքրական է զննել բնական միջավայրի նպատակահարմար վերափոխումների հնարավորությունների զարգացումը։ Մարդկության պատմության երկարատև ժամանակաշրջանի ընթացքում բնական երևույթները մարդու գոյության ու գործունեության համար հնարավոր պայմանների համեմատաբար նեղ շրջանակներ էին պայմանավորում։ Դրանք հաղթահարելն անհնարին

[1] Դրա համար հարկ կլիներ յոլա գնալ պարզապես միայն արևի էներգիայով, ջրի և քամու էներգիայով, որը հավանաբար չէր բավարարի։

էր, իսկ դրանց անբարենպաստ ներգործությունը շատ դեպքերում խիստ վտանգավոր էր մարդու համար։

Այժմ ավարտվում է մարդու բնական միջավայրին հարմարվելու և տարերային երևույթների անբարենպաստ ներգործություններից պաշտպանվելու փուլը, որ հնարավորություն է ընձեռում ապահովելու մարդու գործունեությունը մեր մոլորակի բոլոր պայմաններում։ Էական վտանգը մարդու համար այսօր բնության վրա իր ներգործության իսկ վերահսկումն է։

Իրականացնելով բնության պրոցեսների վրա նպատակահարմար ներգործության նոր հնարավորությունները, անհրաժեշտ ու միաժամանակ հնարավոր է կանխել այդ ներգործությունների ոչ միայն անմիջական, այլև հեռավոր հետևանքները։ Մարդը մնում է դրության տերը և որոշակի պայմանների պահպանման դեպքում կարող է միջավայրի հետ իր փոխհարաբերությունների ոլորտում ներդաշնակություն ստեղծել։

Մարդու տեխնիկական գործունեության և բնական միջավայրի փոխհարաբերությունների ներդաշնակության պրոբլեմի լուծումը բազմափուլ է։ Այդ միանվագ գործողություն չէ, այլ մշտապես զարգացող հակասական պրոցես, որը գիտատեխնիկական հեղափոխության և մարդու կողմից Երկրի բնության լիովին յուրացման դարաշրջանում պահանջում է ո՛չ միայն սիստեմատիկ ջանքեր, այլև մարդկային գործունեության բուն կառուցվածքի էական վերափոխում։

Այդպիսի վերափոխման ընթացքում, առաջին փուլում, շրջապատող միջավայրի պահպանմանն ուղղված մեկուսի միջոցառումները (քիմիական արտադրության մեջ ցիկլերի ներդրման, զանազան մաքրող սարքավորումների, արդյունաբերական շենքերի առավել բարձր խողովակների ստեղծման, քաղաքային տրանսպորտի ներքին այրման շարժիչները էլեկտրամոտորներով փոխարինելու տիպի և այլն) պետք է ձուլվեն հատուկ պլանավորված ամբողջական համակարգում, որը կոմպենսացնում է կենսոլորտի համար վտանգավոր արտադրության ու սպառման հետևանքները։ Ողջ արտադրական գործունեությունից, ասես, կանջատվի նրա կոմպենսացնող մասը, որը մոտակա երկու-երեք տասնամյակում կարող է մեծ չափեր ընդգրկել։ Սակայն հետագայում, ըստ մեր պատկերացումների, փակ ցիկլերի վրա հիմնված նոր «անթափուկ» արտադրության տեխնոլոգիայի զարգացման, կենսոլորտում բնական ու արհեստական պրոցեսներ առաջացնող մեխանիզմների վերաբերյալ մեր կուտակած մեծ գիտելիքների և կենսոլորտային պրոցեսների կառավարման հնարավորությունների համապատասխան ընդլայնման համաձայն, առանձին հատուկ կոմպենսացնող գործունեությունը, իբրև ավելորդ, պետք է վերանա։ Մարդկության արտադրական գործունեությունը պետք է իր մեջ ներառնի կենսոլորտում ընթացող ողջ պրոցեսների ամբողջությունն այնպես, որ այդ գործունեության բոլոր տարրերը— ինչպես անմիջականորեն մարդու կողմից արտադրվող, այնպես և նրա ազդեցությամբ ու կառավարմամբ բնության մեջ ընթացող— ներդաշնակ ամբողջություն կազմեն։

Խորապես բացահայտելով օբյեկտիվ ճշմարտությունը կենսոլորտի պրոցեսներում, մարդը բնության վերափոխումը կարող է բանականորեն զուգակցել վերջինիս հետ իր փոխհարաբերությունների անհրաժեշտ ներդաշնակությամբ։

«Вопросы философии», № 12, 1972

# ԱԶԳԱՅԻՆ ՀԱՐՑԻ ՄԱՐՔՍ—ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՍՄՈՒՆՔԻ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ

ԱՐՏՕ ԵՂԻԱԶԱՐՅԱՆ
Պատմական գիտությունների դոկտոր

Ստեղծագործաբար զարգացնելով ազգային հարցի վերաբերյալ Մարքսի ու Էնգելսի հիմնական դրույթները, Վ. Ի. Լենինը պատմական նոր ժամանակաշրջանում ստեղծեց սոցիալիստական հեղափոխության ուսմունքի բաղկացուցիչ մասը կազմող ազգային հարցի մի կուռ տեսություն։ Ազգերի և ազգային հարաբերությունների մասին լենինյան գաղափարներն իրենց արտահայտությունը գտան ՍՄԿԿ VIII, X և XII համագումարներում։

Լենինյան գաղափարների իրականացումը մեր բազմազգ երկրում, սոցիալիզմի կառուցման ժամանակաշրջանում կուտակված փորձը հարստացրին ազգերի և ազգային հարաբերությունների մասին մարքս-լենինյան տեսությունը՝ զարգացող սոցիալիզմի պայմաններում։

Այդ տեսությունն իր հետագա զարգացումն ստացավ ՍՄԿԿ XXII և XXIV համագումարների բանաձևերում, կուսակցության երրորդ ծրագրում, ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակի նախապատրաստության վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի որոշման և ՍՍՀՄ հիսնամյակի մասին Լ. Ի. Բրեժնևի զեկուցման մեջ։

Ելակետ ունենալով պատմական նշանակություն ունեցող վերը նշված նյութերի սկզբունքային դրույթները, սովետական գիտնականները վերջին տարիներին և, հատկապես, հոբելյանական տարում հրապարակեցին մի շարք կապիտալ աշխատություններ՝ նվիրված սոցիալիստական ազգերի ու ազգությունների առաջընթացին՝ զարգացած սոցիալիզմի և սոցիալիզմից կոմունիզմին անցման ժամանակաշրջանում[1]։

Ստորև ընթերցողների ուշադրությանն ենք ներկայացնում ազգային հարցին, սոցիալիստական ազգերի ու ազգությունների զարգացմանը վերաբերող մի շարք պրոբլեմներ, որոնց առավել խոր ուսումնասիրությունը կարևոր է ու հրատապ։

---

1 Դրանցից են՝ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեին կից մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի 1972 թ. հրատարակած Լենինիզմը և ազգային հարցը ժամանակակից պայմաններում, բազմազգ սովետական պետությունը, Պրոլետարական ինտերնացիոնալիզմի տեսական հարցերը ժողովածուները, Մ. Ի. Կուլիչենկոյի մենագրությունը. Ազգային հարաբերությունները ՍՍՀՄ-ում և նրանց զարգացման տենդենցները, Է. Վ. Թադևոսյանի Սովետական ազգային պետականությունը և այլ աշխատություններ։

## I

*Մինչև վերջերս գրականության մեջ ընդհանուր ճանաչում էր գտել ազգերի բաժանումը երկու հիմնական տիպի՝ բուրժուական և սոցիալիստական։ Ներկայումս սովետական գիտնականներն իրավացիորեն գտնում են, որ պետք է լինի ազգերի տիպերի սահմանման մեկ հիմք— տվյալ հասարակական տնտեսական ֆորմացիան (կապիտալիստական և սոցիալիստական)։ Հասարակական տնտեսական ֆորմացիան է դրսևորում նախ՝ այն տնտեսական հիմքը, արտադրահարաբերությունները, որոնց վրա խարսխվում է ազգի կյանքը, երկրորդ՝ ազգի սոցիալ-դասակարգային կառուցվածքը, երրորդ՝ ազգը ղեկավարող ուժը, դասակարգը, չորրորդ՝ ազգային մշակույթի մեջ տիրապետող սոցիալ-քաղաքական, գաղափարական բովանդակությունը։ Ահա թե ինչու վերջերս հրապարակված աշխատությունների հեղինակները գտնում են, որ ավելի ճիշտ կլինի բուրժուական ազգ արտահայտության փոխարեն գործածել «կապիտալիստական ազգ» տերմինը, անփոփոխ թողնելով սոցիալիզմի ժամանակ գործածվող «սոցիալիստական ազգ» հասկացությունը։*

*Այս ճշտումով ազգերի, ազգային հարաբերությունների զարգացումը անմիջականորեն կապվում, առնչվում, պայմանավորվում է տվյալ հասարական-տնտեսական ֆորմացիայի առաջընթացի օրինաչափություններով, օրենքներով և հետազոտողներին զերծ է պահում հնարավոր շփոթից։ Այդպիսի շփոթից է, օրինակ, գրականության մեջ գործածվող «ազգերի և ազգային հարաբերությունների զարգացման երկու տենդենցներ» արտահայտությունը, որոնք վերագրվում են ազգերին, մինչդեռ դրանք պայմանավորված են հասարական-տնտեսական ֆորմացիայով։ Ուրեմն, ճիշտ կլինի հետևյալ սահմանումը. «տվյալ հասարակական ֆորմացիայի (կապիտալիստական, սոցիալիստական) տենդենցները ազգերի և ազգային հարաբերությունների զարգացման բնագավառում»։*

*Սովետական գիտնականներն այս հարցում ևս ղեկավարվում են Վ. Ի. Լենինի ցուցումով։ Ինչպես հայտնի է, նա իր* Քննադատական դիտողություններ ազգային հարցի մասին *(1913 թ.) աշխատության մեջ նշել է. «Զարգացող կապիտալիզմը գիտի երկու պատմական տենդենց ազգային հարցում։ Առաջինը՝ ազգային կյանքի և ազգային շարժումների զարթոնքն է, պայքարն ամեն տեսակ ազգային ճնշման դեմ, ազգային պետությունների ստեղծումը։ Երկրորդը՝ ամեն տեսակ հարաբերությունների զարգացումն ու հաճախացումն է ազգերի միջև, ազգային միջնորմների քանդումը, կապիտալի, առհասարակ տնտեսական կյանքի, քաղաքականության, գիտության և այլնի ինտերնացիոնալ միասնության ստեղծումը։ Երկու տենդենցներն էլ կապիտալիզմի համաշխարհային օրենքն են» (Երկեր, հ. 20, էջ 14)։*

*Սոցիալիստական հասարակարգում ազգերի և ազգային հարաբերությունների բնագավառում գործում են սոցիալիզմից բխած, ծնունդ առած նույնպես երկու տենդենց. մի կողմից՝ տեղի է ունենում ազգերի ծաղկում, մյուս կողմից՝ նրանց մերձեցում։ Այս տենդենցներն էլ սոցիալիզմի համաշխարհային օրենքն են։*

*Բացի ազգերի երկու հիմնական տիպերից՝ կապիտալիստական և սոցիալիստական, գիտական շրջանառության մեջ է մտել նաև ազգերի* անցողիկ *տիպը։ Այդ տիպի ազգերը գաղութատիրությունից ազատագրված ազգերն ու ազգությունններն են, որոնք չեն ցանկանում ապրել կապիտալիզմի պայմաններում և միաժամանակ դեռ հաստատապես չեն կարող ընթանալ սոցիալիզմի ուղիով։ Ազգերի, ազգությունների այդ տիպը ժամանակավոր բնույթ ունի և պայմանավորված է «երրորդ աշխարհի» կամ զարգացող երկրների ընձեռած սոցիալ-տնտեսական առաջընթացով։*



## II

*Մինչև վերջերս սոցիալիստական որևէ ազգի կամ ազգության ծաղկումը բնութագրելիս շարադրում էին այդ ազգի կամ ազգության, ազգային հանրապետության սոցիալիստական էկոնոմիկայի աճը, գիտության, գրականության, արվեստի վերելքը։ Թույլ էր բացահայտվում կամ գրեթե չէր վերհանվում սոցիալիստական ազգի հոգևոր կյանքի երկու այլ բաղկացուցիչ կողմերի՝ ազգային գիտակցության և ազգային հոգեբանության ընթացքը, նրանց զարգացումը, աճը։ Ներկայումս սովետական գիտնականներն իրավամբ շեշտում են, որ սոցիալիստական ազգի կամ ազգության հոգևոր կյանքի երեք բաղադրիչները՝ կուլտուրան, ազգային գիտակցությունն ու ազգային հոգեբանությունը իրականում գոյություն ունեն և խոշոր դեր են խաղում ազգի կյանքում։ Ավելին, առանց այդ երեք բաղադրիչների ազգ գոյություն չունի։*

*Սակայն հեշտ չէ բացահայտել ազգային գիտակցության, որպես հասարակական գիտակցության մի մասի՝ էությունը։ Այսօր սովետական գիտնականները, մասնավորապես պրոֆ. Մ. Ի. Կուլիչենկոն, բնութագրում են ազգային գիտակցությունն իբրև առհասարակ ազգի վիճակի և ազգային հարաբերությունների արտացոլում, անդրադարձում հասարակական գիտակցության մեջ։ Ավելի կոնկրետ, ազգային գիտակցության բաղկացուցիչ մասերն են՝ ազգային ինքնագիտակցությունը, գիտակցական վերաբերմունքը ազգի անցյալի ու ներկայի ստեղծած նյութական և հոգևոր արժեքների հանդեպ, նրա պատմական ստեղծագործական դերի, ազգի առաջընթացն ապահովող ունակությունների, կենսաուժերի հանդեպ և, վերջապես, այն բանի գիտակցումը, թե ինչ հարաբերությունների մեջ է և պետք է լինի ազգը ուրիշ ազգերի, ազգությունների և էթնիկական խմբերի հետ։*

*Ազգային գիտակցության բաղկացուցիչ մասերը սոցիալիզմի պայմաններում, անշուշտ, տարբեր երանգներով են դրսևորվում սոցիալիստական ազգի, ազգության սոցիալական հատվածներում (բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության և ժողովրդական մտավորականության շրջաններում)։ Սակայն, ինչպես հասարակական գիտակցության, այնպես էլ նրա մասը կազմող ազգային գիտակցության որոշիչ ուժը սոցիալիզմի պայմաններում բանվոր դասակարգն է, նրա գաղափարախոսությունը։ Սոցիալիստական ազգի բարոյա-քաղաքական միասնության արտահայտությունն է նաև սոցիալիզմի և ինտերնացիոնալիզմի վրա խարսխված ազգային գիտակցությունը, որի կրողն ու զարգացնողը, առաջին հերթին, բանվոր դասակարգն է և նրա ավանգարդը՝ կոմունիստական կուսակցությունը, որի թափած ջանքերի և գործունեության շնորհիվ է մեր օրերում ազգային գիտակցությունը զարգանում սոցիալիզմի ուղիով, տոգորված է ժողովուրդների բարեկամության լենինյան գաղափարներով և դառնում է ազգի բոլոր սոցիալական հատվածների ու շերտերի միասնական գիտակցություն։*

*Սոցիալիստական և կոմունիստական շինարարության ընթացքում, սոցիոլոգիական ուսումնասիրությունների հիման վրա, անհրաժեշտ է սոցիալիստա-*

կան ազգերի ծաղկման մի այլ ցուցանիշի՝ ազգային գիտակցության զարգացման, բացահայտումը: Այս հանգամանքը, իր հերթին, կխթանի աշխատավորական մասսաների սովետական հայրենասիրության և ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակմանը:

Բարդ է նաև սոցիալիստական ազգերի հոգևոր կյանքի մի այլ բաղկացուցիչ մասի՝ ազգային հոգեբանության (ազգային զգացմունքների, խառնվածքի, բնավորության, սովորույթների, տրադիցիաների) բացահայտումը: Այդ հոգեբանությունը ևս (իր բաղադրիչներով) տարբեր երանգներով է դրսևորվում ազգը կազմող բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության և մտավորականության շրջաններում: Հոգեբանության զարգացման ու բյուրեղացման ասպարեզում այստեղ էլ վճռական դերը բանվոր դասակարգինը, նրա ավանգարդինը՝ կոմունիստական կուսակցությանն է:

Ողջունելի է սովետական գիտնականների առաջ քաշած խնդիրը՝ խորապես ուսումնասիրել, հետազոտել սոցիալիստական ազգերի ծաղկման կարևոր դրսևորումներից նաև ազգային գիտակցության և ազգային հոգեբանության զարգացումը սոցիալիզմի, կոմունիզմի կառուցման ընթացքում: Այդ ուսումնասիրություններն ավելի կհարստացնեն ազգերի և ազգային հարաբերությունների մարքս-լենինյան տեսությունը:

III

Սովետական ժողովուրդի պատմական նոր հանրության մասին տակավին նշվեց ՍՄԿԿ XX համագումարում: Վերջին տասնամյակում հրատարակված մենագրություններում, պարբերական մամուլում, գիտական կոնֆերանսներում սովետական գիտնականները որոշակի քայլեր արեցին բացահայտելու նոր հանրության առաջացման և զարգացման օրինաչափությունները: ՍՄԿԿ XXIV համագումարն իր բանաձևում հաստատելով սովետական ժողովուրդի հասկացության բնույթը և զարգացման հեռանկարները, խոշոր ներդրում կատարեց:

Պետք է նշել, որ գրականության մեջ ընդհանուր ճանաչում է գտել այն դրույթը, որ սովետական ժողովուրդը նոր ազգ չէ, էթնիկական հանրություն չէ, այլ բազմազգ միասնություն, որը խարսխվում է ընդհանուր սոցիալիստական արտադրահարաբերությունների, տնտեսական կյանքի, քաղաքական կառուցվածքի, մարքս-լենինյան գաղափարախոսության, նպատակների (կոմունիզմի կառուցումը) ընդհանրության վրա:

Այս պրոբլեմի ուսումնասիրման գործում ներդրումը նախ՝ սովետական ժողովրդի ձևավորման փուլերն են և նրա նոր հատկանիշների բացահայտումը:

Սովետական առանձին գիտնականներ գտնում են, որ մեր ժողովուրդն իր ձևավորման և զարգացման ընթացքում անցել է երկու փուլ— 1917 թ. Հոկտեմբերյան հեղափոխությունից մինչև երեսնական թվականները և երեսնական թվականներից մինչև հիսնական թվականների վերջերը: Առաջին փուլում սովետական ժողովուրդ հանրությունը ձևավորվեց, կազմավորվեց սոցիալիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման, իսկ երկրորդ փուլում վերջնականապես ձևավորվեց զարգացող, հասուն սոցիալիզմի հիման վրա, երբ արդեն հիմնովին փոխվել էր սովետական ազգերի սոցիալական կառուցվածքը և առկա էին ծաղկման ու մերձեցման ուղիով ընթացող սոցիալիստական ազգերը:

Երկրորդ ներդրումը հավելումն է այն ընդհանուր կողմերի, որի վրա



խարսխված է սովետական ժողովուրդ հասկացությունը: Հավելյալ ընդհանուր կողմերը՝ միասնական ինտերնացիոնալ, բազմազգ սովետական կուլտուրան է, ազգերի ու ազգությունների հաղորդակցման միջոցը՝ ռուսաց լեզուն, նրանց հոգեկան կերտվածքի, հոգեբանության ու կենցաղի ընդհանուր գծերը, սովետական բնավորությունը, միասնական տրադիցիաները, հայրենասիրությունն ու սոցիալիստական ինտերնացիոնալիզմը:

Այստեղ պետք է շեշտել երկու հանգամանք: Վերը նշած մի շարք ընդհանուր կողմեր՝ մշակույթ, ազգամիջյան լեզու, հոգեկան կերտվածք և այլն, էթնիկական հատկանիշների տպավորություն են թողնում և կարող են հանգեցնել այն սխալ դրույթին, թե սովետական ժողովուրդը «նոր ազգ» է: Սակայն, ինչպես հիշատակեցինք, սովետական ժողովուրդը իրականում էթնիկական ընդհանրություն չէ, այլ բազմազգ հանրություն, որի ընդերքում տեղի է ունենում սոցիալիստական ազգերի ու ազգությունների հարաճուն ծաղկումն ու նրանց աստիճանական մերձեցումը: Համեմատելով սովետական ժողովրդի միասնության ամրությունը ադամանդի հետ, Լ. Ի. Բրեժնևը իրավամբ նշեց, որ «Ինչպես ադամանդը փայլփլում է երփներանգ գույներով, այնպես էլ մեր ժողովրդի միասնությունը շողշողում է այն կազմող ազգերի բազմազանությամբ, որոնցից յուրաքանչյուրն ապրում է լիարյուն, ազատ ու երջանիկ կյանքով» (Լ. Ի. Բրեժնև, Լենինյան կուրսով, հ. 2, էջ 128): Այսպիսով, սովետական ժողովուրդը իր մեջ է մարմնավորում ինտերնացիոնալիզմի և ազգայինի միասնությունը:

Անշուշտ, չի կարելի ասել, որ սովետական ժողովրդի՝ մարդկանց պատմական նոր հանրության առաջացման, զարգացման և «հավելյալ» կողմերի վերը նշած կոնցեպցիան սպառիչ է ու վերջնական: Հետազոտությունները պետք է շարունակվեն: Սակայն, ողջունելին այն է, որ սովետական գիտնականները ձեռնամուխ են եղել ուսումնասիրելու սովետական ժողովրդի առաջացման և զարգացման պարբերացման պրոբլեմը, ինչպես և համալրելու այն ընդհանուր կողմերը, որոնք հատուկ են մարդկանց պատմական այդ նոր հանրությանը:

IV

Հանրահայտ է, որ տրոցկիզմի դեմ վարած գաղափարական պայքարում իր որոշակի տեղն ուներ ազգային հարցը: Հիշենք ՍՄԿԿ VIII համագումարում Պյատակովի պայքարն ընդդեմ ազգային հարցի լենինյան սկզբունքների, ապա Տրոցկու ելույթները Կոմինտերնի ծրագրի ազգային հատվածի դեմ:

Անհրաժեշտ է նշել, որ հետպատերազմյան գրականության մեջ պատշաճ տեղ չէր հատկացվում ազգային հարցի տրոցկիստական կոնցեպցիայի քննադատությանը: Մինչդեռ, մանավանդ վերջին ժամանակներս, արտասահմանում որոշ աշխուժություն են հանդես բերում այդ կոնցեպցիայի ջատագովները: Միաժամանակ, հակակոմունիստական պրոպագանդան, ինչպես և վտարանդի նացիոնալիստական ճամբարը, հաճախ իրենց զրպարտություններն ու հերյուրանքները ազգային հարցի մասին լենինյան տեսության ու պրակտիկայի դեմ ուղղելիս, հենվում են տրոցկիստական դրույթների, ասույթների վրա, դրանք հայտարարելով որպես լենինյան:

Պրոֆ. Մ. Ի. Կուլիչենկոն իրավացիորեն նշում է. «Առհասարակ Տրոցկու և տրոցկիստների համար առավել բնորոշ էր ինտերնացիոնալիստական ֆրա-

ղաբանությամբ քողարկված ազգային նիհիլիզմը, ժողովուրդների կյանքում
ամեն ազգայինի նկատմամբ արհամարհական վերաբերմունքը» (տե՛ս նշված
աշխատությունը, էջ 263)։

Լենինիզմը և ազգային հարցը ժամանակակից պայմաններում ժողովածուի
հեղինակները գրում են. «Աշխարհում, հասարակական կյանքի բոլոր ոլորտ-
ներում, առաջին հերթին, արտադրության մեջ անառարկելիորեն ծավալվող
ինտերնացիոնալացման պրոցեսների փաստից Տրոցկին արել է այն հետևու-
թյունը, թե ինտերնացիոնալիստականը պետք է գոյություն ունենա առանց
ազգայինի։ Ուստի, ազգային պետությունների կազմավորման գաղափարը նա
հայտարարել է «խորապես ռեակցիոն գաղափարախոսություն» (էջ 163) (ընդ-
գծումը մերն է— Ա. Ե.)։

Հանրահայտ է մարքսիզմ-լենինիզմի դրույթն այն մասին, որ սոցիալիզ-
մի պայմաններում ինչպես բազմազգ պետության մեջ, այնպես էլ ողջ համաշ-
խարհային սոցիալիստական համակարգում ինտերնացիոնալականը և ազգա-
յինը չեն հակադրվում միմյանց, այլ ներդաշնակ միասնություն են կազմում։

Այս հարցում միանգամայն հակառակ տեսակետ և դիրքորոշում ունի
տրոցկիզմը։ Նույն ժողովածուի մեջ կարդում ենք. «1928 թվականին Տրոցկին
գրում էր. քանի որ Կոմինտերնի ծրագիրը ժողովուրդների կյանքում ինտեր-
նացիոնալիստականի հետ միասին ընդունում է նաև ազգայինը, իսկ ինտեր-
նացիոնալիստականի մարմնավորումը նախատեսվում է ազգային շրջանակ-
ների մեջ, ապա «ինտերնացիոնալիզմի ողնաշարը դրանով իսկ կոտրվում է»
(տե՛ս նշված ժողովածուն, էջ 163—164)։

Մերկացնելով և քննադատելով տրոցկիստական կոնցեպցիան ազգային
հարցում, սովետական գիտնականները որոշակի ավանդ են մուծում ո՛չ միայն
հակակոմունիզմի դեմ մղվող պայքարում, այլև ազգային հարցում ճիշտ
կողմնորոշելով սովետական մարդկանց՝ նպաստում են աշխատավորական
մասսաներին սոցիալիստական ինտերնացիոնալիզմի և սովետական հայրե-
նասիրության ոգով դաստիարակմանը, Սովետական Միության բոլոր ժողո-
վուրդների բարեկամության ամրապնդմանը։

V

Հայտնի է, որ քսանական, երեսնական թվականներին Սովետական Միու-
թյան կոմունիստական կուսակցությունը պայքարում էր երկու ճակատով՝ ընդ-
դեմ մեծապետական, վելիկոռուսական շովինիզմի ու տեղական նացիոնալիզ-
մի դրսևորումների։ Այդ ժամանակաշրջանում էր, որ, չթուլացնելով պայքարը
տեղական նացիոնալիզմի դրսևորումների դեմ, կուսակցությունը գլխավոր
վտանգը համարում էր մեծապետական շովինիզմը, որն իր հերթին, նպաստում
էր տեղական, բուրժուական նացիոնալիզմի աշխուժացմանը։ Վ. Ի. Լենինը,
կուսակցությունը գտնում էին, որ նախկինում տիրապետող ազգին պատկանող
կոմունիստները պետք է պայքարեն մեծապետական շովինիզմի դրսևորումնե-
րի, իսկ ճնշված ազգերին ու ազգություններին պատկանող կոմունիստները՝
տեղական, բուրժուական նացիոնալիզմի երևույթների դեմ։ «Աշխատանքի այս
բաժանումը» կոմունիստների միջև, անշուշտ, չէր բացառում նրանց պայքարն
առհասարակ շովինիզմի և նացիոնալիզմի ամեն տեսակ արտահայտություննե-
րի դեմ։

Քսանական և երեսնական թվականների սկզբներին կուսակցության ծա-



վալած պայքարը երկու ճակատով բխում էր մեր երկրում սոցիալիստական
հասարակարգի կառուցման ու նրա ամրապնդման շահերից և ճիշտ քաղաքա-
կան դիրքորոշում էր։ Բնական է, այդ պայմանավորված էր նրանով, որ թե՛
մեծապետական շովինիզմի, թե՛ տեղական նացիոնալիզմի սոցիալական կրող-
ները՝ շահագործող դասակարգերը, նրանց մնացորդները քաղաքում և գյու-
ղում դեռ չէին վերացվել։ Հին մտավորականության, պետական ապարատի
աշխատողների մի մասը տոգորված էր մեծապետական շովինիզմի և տեղա-
կան նացիոնալիզմի գաղափարախոսությամբ։

Սոցիալիզմի հաղթանակով արմատապես փոխվեց սոցիալ-տնտեսական և
քաղաքական իրադրությունը մեր երկրում։ Լիովին տիրապետող դարձավ հա-
սարակական սոցիալիստական սեփականությունն իր երկու ձևերով, փոխվեց
ազգերի ու ազգությունների դասակարգային կառուցվածքը, վերացվեցին շա-
հագործող դասակարգերի մնացորդները՝ շովինիզմի և նացիոնալիզմի դասա-
կարգային ակունքները, ձևավորվեցին սոցիալիստական ազգերն ու ազգու-
թյունները։

Սովետական ժողովուրդների կյանքում տասնամյակների ընթացքում իրա-
գործված սոցիալ-տնտեսական և կուլտուրական վիթխարի վերափոխումներն
զգալի չափով նպաստեցին այդ ժողովուրդների ինտելեկտուալ, մտավոր գոր-
ծունեությանը, առաջացրին սոցիալիզմի և ինտերնացիոնալիզմի վրա խա-
րըսխված նոր ազգային զգացմունքներ, բանվոր դասակարգի գաղափարախո-
սությունը՝ պրոլետարական ինտերնացիոնալիզմը դարձավ հասարակական
պրակտիկա։ Միաժամանակ, պայքարելով մեծապետական շովինիզմի և տե-
ղական նացիոնալիզմի դրսևորումների դեմ՝ Սովետական Միության կոմու-
նիստական կուսակցությունը և նրա ազգային-հանրապետական բոլոր ջոկատ-
ները ակտիվ գործունեություն ծավալեցին (և շարունակում են ծավալել) աշ-
խատավորական զանգվածներին դաստիարակելու ժողովուրդների համերաշ-
խության, համագործակցության, հավասարության, փոխօգնության, բարեկա-
մության ու եղբայրության, փոխվստահության և հարգանքի ոգով։ Այսօր, սո-
վետական բոլոր ժողովուրդների կյանքում տիրապետող հասարակական գի-
տակցությունը և նրա մասը կազմող ազգային գիտակցությունը տոգորված է
ինտերնացիոնալիզմի գաղափարներով։

Այսուհանդերձ, սովետական ժողովուրդների կյանքում, երբեմն այս կամ
այն ձևով զգացնել են տալիս շովինիզմի, նացիոնալիզմի մնացուկները։
Ուստի, այժմ բոլոր սոցիալիստական ազգերի ու ազգությունների համար կա
մեկ ճակատ՝ պայքար նացիոնալիզմի, շովինիզմի մնացուկների դեմ։ Այդ
մնացուկներն այսօր արտահայտվում են ազգային բացառիկությամբ, սնա-
պարծությամբ, ուրիշ ժողովուրդների հանդեպ ոչ հարգալից վերաբերմունքով,
նոր աշխարհի կառուցման գործում նրանց ներդրումների թերագնահատմամբ,
ժողովուրդների անցյալի պատմությանը ոչ դասակարգային մոտեցմամբ, իր
դարն ապրած և մեր առաջընթացին անհամապատասխան տրադիցիաների,
սովորույթների պահպանմամբ։ Շովինիզմի, նացիոնալիզմի մնացուկներին
ամեն կերպ հրահրում են հակակոմունիստական, հակասովետական արտա-
սահմանյան պրոպագանդան և վտարանդի նացիոնալիստական ճամբարը՝ ջա-
նալով անվստահություն հարուցել սովետական ժողովրդի հոգում, խաթարել
ժողովուրդների միասնությունը, արգելակել սոցիալիզմի, կոմունիզմի կա-
ռուցումը։

Շովինիզմի, նացիոնալիզմի մնացուկներով տառապում են այն սովետական մարդիկ, որոնց անհատական գիտակցությունը ետ է մնում տիրապետող հասարակական, ինտերնացիոնալիստական գիտակցությունից։ Մեր ողջ դաստիարակչական օրգանների խնդիրն է՝ ետ մնացող, անհատական գիտակցություն ունեցող սովետական յուրաքանչյուր մարդու բարձրացնել տիրապետող հասարակական գիտակցության մակարդակին։

Սակայն խնդիրն այն է, որ շովինիզմի, նացիոնալիզմի մնացուկները միշտ չեն դրսևորվում բացարձակ ձևով կամ անմիջականորեն։ Հաճախ դրանք հանդես են գալիս թաքնված, իսկ երբեմն էլ տվյալ ժողովրդի ազգայինի «պաշտպանությամբ» քողարկված։ Այս հանգամանքը պարտադրում է մեր դաստիարակչական օրգաններին ծավալելու պրոֆիլակտիկ, բացատրական լայն աշխատանք, զերծ պահելու սովետական առանձին մարդկանց շովինիզմի, նացիոնալիզմի գաղափարական ազդեցությունից։ Հայտնի է, որ ազգային հպարտության զգացումը սոցիալիզմի պայմաններում օրինաչափ, առաջադեմ երևույթ է։ Սակայն, երբ այն դուրս է գալիս սոցիալիստական ինտերնացիոնալիզմի գաղափարախոսության ոլորտից և փոխակերպվում ազգային սնապարծության, մեծամտության, ազգային սահմանափակության և եսասիրության, դա եսրնթաց երևույթ է։

Ահա թե ինչու կոմունիստական կուսակցությունը քաղաքական մեծ նշանակություն է տալիս աշխատավորության ինտերնացիոնալ դաստիարակությանը։

VI

Կոմունիստական կուսակցությունն ազգային հարցը միշտ դիտել է դասակարգային պայքարի տեսանկյունից, այն, ինչպես և ազգային հարաբերությունների բոլոր հարցերը լուծել պրոլետարական ինտերնացիոնալիզմի դիրքերից։

ՍՍՀՄ հիսնամյակի մասին զեկուցման մեջ Լ. Ի. Բրեժնևը նշեց. «Ստեղծվեցին պատմության մեջ չտեսնված հարաբերություններ, որոնք մենք իրավամբ անվանում ենք ժողովուրդների լենինյան բարեկամություն։ Այդ բարեկամությունը, ընկերներ, մեր անգնահատելի նվաճումն է, սոցիալիզմի ամենանշանակալի և յուրաքանչյուր սովետական մարդու սրտի համար ամենաթանկ նվաճումներից մեկը։ Եվ այդ բարեկամությունը մենք՝ սովետական մարդիկ, միշտ կպահպանենք աչքի լույսի պես»։

Սովետական ժողովուրդների բարեկամության դերը սոցիալիստական ազգերի ու ազգությունների առաջընթացի գործում իր արտացոլումն է գտել գրականության մեջ։ Սակայն դա բավական չէ։ Սովետական գիտնականների պարտքն է՝ ՍՄԿԿ XXIV համագումարի, ՍՍՀՄ հիսնամյակին նվիրված նյութերի, Լ. Ի. Բրեժնևի ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակին նվիրված զեկուցման լույսի տակ ձեռնամուխ լինել կոնկրետ և խոր հետազոտությունների, որոնք սովետական ժողովուրդների լենինյան բարեկամության այս նոր դերը համարում են սովետական ազգերի, ազգությունների և Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության առաջընթացի, նրանց տնտեսական ու կուլտուրական պոտենցիալի հզորացման վճռական գործոնը։

---

# Նշանավոր ՏԱՐԵԹՎԵՐ

*

## Մ Ե Ծ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ ԱՆՄԱՀ Ե Ր Գ Ի Չ Ը

(ՎԼ. ՄԱՅԱԿՈՎՍԿՈՒ ԾՆՆԴՅԱՆ 80-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)

*



Սովետական ժողովուրդը հանդիսավորությամբ նշեց մեծ բանաստեղծ Վլադիմիր Մայակովսկու ծննդյան 80-ամյակը, մի բանաստեղծի, որն իր ողջ ստեղծագործության մեջ գովերգել է սերը մարդու, հեղափոխության, կոմունիզմի նկատմամբ:

Գրականությունը Մայակովսկու պատկերացմամբ եղել է պայքար հանուն հեղափոխության հաղթանակի ու հաստատման:

*Ես ուզում եմ,*
*որ գրիչը*
*հավասարվի սվինին...*

Մայակովսկու այս հայտնի տողերը եղել են մարտական արվեստի լոզունգը, արվեստ, որն արթնացնում է ներգործուն վերաբերմունք կյանքի հանդեպ, պատասխանատվություն հարուցում իր երկրի, իր ժողովրդի բախտի համար: Մայակովսկին պոեզիայի մեջ մուտք գործեց երկու աշխարհների սահմանագծում, մի ժամանակաշրջանում, երբ սկսվել էր բուրժուական ար-

վեստի շատ խոր ճգնաժամը և ձևավորվում էր նոր, սոցիալիստական գրականությունը:

Մայակովսկու նախահեղափոխական ստեղծագործությունը, բանաստեղծի սեփական խոստովանությամբ, եղել է «խոսքին տիրապետելու» ժամանակաշրջան: Բայց նույնիսկ այդ շրջանում Մայակովսկին հանդես է գալիս իբրև ինքնատիպ, ինքնօրինակ բանաստեղծ: Նրա ստեղծագործության մեջ մեծ տեղաշարժ է կատարվում 1914 թվականին: Առաջին համաշխարհային պատերազմի իմպերիալիստական բնույթի մերկացումը դառնում է Մայակովսկու ստեղծագործության գլխավոր մոտիվը:

Շատ կարճ ժամանակամիջոցում՝ 1914-ից մինչև 1917 թվականը, Մայակովսկին գրեց չորս պոեմ՝ Վարտիքավոր ամպը, Ողնաշար ֆլեյտան, Պատերազմ և խաղաղություն և Մարդը:

Վարտիքավոր ամպը մի պոեմ է այն մասին, թե մարդկային մեծ ու անկեղծ զգացմունքի ճշմարտությունը բախվում է բուրժուական հարաբերությունների կեղծիքի հետ: Պոեմը տոգորված է հպարտ, ազատ մարդու հաղթանակի նկատմամբ ջերմ ու պայծառ հավատով, տիրապետող կարգերի ժխտմամբ: Իր մեջ միավորելով բարձր հումանիզմը և կրքոտ ատելությունը, պոեմը կոչ էր անում արմատապես վերակառուցել կյանքն ու արվեստը: Պոեմը ոչ միայն երիտասարդ բանաստեղծի հեղափոխական ինտուիցիայի զարմանալի դրսևորումն էր, այլև նրա քաղաքական աճի վառ վկայությունը: Այստեղ հեղափոխությունը հանդես է բերված որպես միակ փրկություն, միակ ազատում «գիրուկների» իշխանությունից:

Մայակովսկու ստեղծագործական ճանապարհին մեծ ուղենիշ հանդիսացավ Պատերազմ և խաղաղություն պոեմը, որ նա գրել է 1916 թվականին: Նրա գաղափարական պաթոսն ու պատկերավոր կառուցվածքը ծնունդ են առել անիմաստ սպանդի սարսափի գիտակցումից և բանաստեղծի վճռական մերժումից՝ լինելով «իր» կառավարության կողմը՝ մարդկանց այդ հրեշավոր կոտորածում: Թեև պոեմը ցույց չի տալիս պատերազմից դուրս գալու ուղիները ու միջոցները, սակայն նա վճռականորեն մերժում է սեփականատիրական աշխարհը:

Մայակովսկու 1916 թ. ողջ քնարերգությունը համակված է բուրժուական հասարակարգի մարդու ճակատագրի վերաբերյալ խորհրդածություններով: Դրանք Մայակովսկին արտահայտեց իր Մարդը պոեմում:

Մեծ բանաստեղծը ցնծությամբ ընդունեց Հոկտեմբերյան հեղափոխությունը: Նա անմիջապես մխրճվեց երիտասարդ սովետական Ռուսաստանի հասարակական-գրական կյանքի մեջ: 1917 թ. նոյեմբերի 17-ին, ելույթ ունենալով արվեստի գործիչների միության լիազորների ժամանակավոր կոմիտեի ընդհանուր ժողովում, Մայակովսկին ասաց. «Պետք է ողջունել նոր իշխանությունը և կապ հաստատել նրա հետ»:

Մայակովսկին մեծ հեղափոխությունը գովերգում է Հեղափոխություն, Մեր երթը, Ներբող հեղափոխությանը, Ձախ մարշ բանաստեղծություններում:

Հոկտեմբերի տարեդարձին Մայակովսկին գրեց Միստերիա-բուֆ հեղափոխական պիեսը: Ինչպես նշում էր նա «Միստերիա-բուֆը մեր մեծ հեղափոխությունն է՝ խտացված բանաստեղծությամբ և թատերական գործողությամբ. Միստերիան հեղափոխության վեհությունն է՝ բուֆը՝ նրա մեջ եղած ծիծաղելին...»: Պիեսը լի էր պայծառ զգացումներով, փառաբանում էր սովետական ժողովրդի խաղաղ աշխատանքը, մի հիմն էր Կոմունային՝ աշխարհում առաջին սովետների երկրին:



Հոկտեմբերի հաղթանակը ռուս ժողովրդին դարձրեց համաշխարհային պատմության հերոս: Այդ ժողովրդին էր սևեռած ամբողջ մարդկության ուշադրությունը:

Իր 150.000.000 պոեմում Մայակովսկին ցույց է տալիս հեղափոխական ժողովրդի կամքն ու ուժը: Պոեմի էպիկական սյուժեն Մայակովսկուն հնարավորություն է տալիս լայնորեն ծավալելու երկու սիստեմների՝ սովետական դեմոկրատիայի և ամերիկյան իմպերիալիզմի պայքարի սիմվոլիկ նկարագրությունը: Նա հիացմունքով ու հպարտությամբ է նկարագրում ռուս դյուցազն Իվանին, որը մարմնավորում է Սովետական Ռուսաստանը, մեծ Լենինի հանճարով արթնացած անպարտելի սովետական ժողովրդին: Իր գաղափարական պաթոսով պոեմը հայտնվեց պատմական-գրական այն պրոցեսի կենտրոնում, որը արտացոլում էր երիտասարդ սովետական գրականության ուժերի միավորումը Ռուսաստան-հայրենիքի գաղափարի շուրջը և դնում էր առաջնահերթ կարևորություն ունեցող հարցեր:

Մայակովսկու քաղաքական ու քնարական ինքնորոշման մեջ հսկայական դեր կատարեց նրա աշխատանքը «Ռոստայի պատուհան»-ներում: Բանաստեղծի գործունեությունն ամբողջապես տոգորված էր սովետական երկրի աշխատավորների առջև ծառացած խնդիրներով: Ագիտոտանավորների թեմաները ամենաբազմազան էին՝ ցանքի կամպանիան, պայքարը խոլերայի դեմ, վառելիքի տնտեսումը և այլն: Մայակովսկու աշխատանքը Ռոստայում ընթանում էր այն ժամանակաշրջանում, երբ տարբեր տիպի խմբերի ու դպրոցիկների ներկայացուցիչներ ու մասնակիցներ հանդես էին գալիս այնպիսի հայտարարություններով ու ստեղծագործություններով, որոնցում արտահայտում էին հակաժողովրդական հայացքներ արվեստի վերաբերյալ: Գրական խմբերի մեծ մասը հրաժարվում էր ծառայել օրվա հասարակական-քաղաքական խնդիրներին: Մայակովսկին ծանակում էր «Միստիկայի տերևիկներով քողարկված» այդ բոլոր «խղճուկ ֆուտուրիստներին, իմաժինիստներին, ակմեիստներին» և իր վերաբերմունքը նրանց նկատմամբ արտահայտեց Հրաման № 2՝ արվեստների բանակին բանաստեղծությունում:

Թե որքան կարևոր էր Մայակովսկու աշխատանքը Ռոստայում, վկայում է Ա. Վ. Լունաչարսկու կարծիքներից մեկը, որ նա արտահայտել է 1920 թ. կեսերին. «Մայակովսկուն մենք առաջին անգամ չենք հանդիպում: Նա ռուս խոշորագույն տաղանդներից մեկն է, որն ունի երկրպագուների լայն շրջան ինչպես մտավորականների, այնպես էլ պրոլետարների մեջ (պրոլետարական մի ամբողջ շարք բանաստեղծներ նրա աշակերտներն են և ամենաակընհայտ ձևով ընդօրինակում են նրան), նա մի մարդ է, որի ստեղծագործությունների մեծ մասը թարգմանվել է եվրոպական բոլոր լեզուներով, մի բանաստեղծ, որին շատ բարձր են դասում այնպիսի բնավ ոչ ֆուտուրիստ գրողներ, ինչպիսիք են Գորկին ու Բրյուսովը... Նշեմ, որ Մայակովսկին կես տարի ծառայում էր Ռոստայում, դրա միջոցով ամբողջ Սովետական Ռուսաստանը ողողեց իր ծաղրանկարներով ու սրամտություններով»:

Ռոստայում կատարած աշխատանքը այն «քավարանն» էր, որով անցավ Մայակովսկին՝ դեպի իսկական սոցիալիստական արվեստը տանող ճանապարհին:

1927 թվականին «Միայն ոչ հիշողություններ» հոդվածում Մայակովսկին «Ռոստայի պատուհանները» առանձնապես բարձր գնահատեց իբրև առավել վառ մոմենտներից մեկը հեղափոխության առաջին տարիների արվեստի ու պոեզիայի բնագավառում: ««Ռոստայի պատուհանները» մի ֆանտաստիկ բան է,— գրում էր Մայակովսկին այդ հոդվածում:— Երբ մի բուռ արվեստագետներ, իրենց ձեռքի աշխատանքով սպասարկում էին հարյուրհիսունմիլիոնանոց մի վիթխարի ժողովրդի»:

Ճիշտ ըմբռնելով նոր ժամանակաշրջանի բովանդակությունը մեր երկրի կյանքում և այդ ժամանակաշրջանի հարուցած հիմնական խնդիրները, Մայակովսկին կարողացավ տեսնել ու արտացոլել սովետական հասարակարգի հիմնական շարժիչ ուժերը: Չլինելով կուսակցության անդամ, Մայակովսկին համոզմունքով հայտարարում էր. «Ես ինձ կուսակցությունից չեմ զատում, ինձ պարտավոր եմ համարում կատարելու այդ կուսակցության բոլոր որոշումները, թեև կուսակցական տոմս չունեմ»:

Պոետի ստեղծագործական զարգացման մեջ կարևորագույն փուլ է Վլադիմիր Իլյիչ Լենին պոեմը: Լենինյան թեման հասակել էր Մայակովսկու սրտին ու մտքին դեռ պոեմը գրելուց շատ առաջ: Լենինի կերպարը ստեղծելու առաջին փորձը նա կատարել էր 1920 թ. ապրիլին, երբ կուսակցությունը նշում էր իր հիմնադրի ծննդյան 50-ամյակը: Վլադիմիր Իլյիչ բանաստեղծությունն էլ հենց այդ իրադարձության արձագանքն էր: Լենինյան հանճարի նկատմամբ իր հիացմունքն ու ակնածանքը արտահայտելու խոր անկեղծությունը արդարացնում է լենինյան ուսմունքի շարադրման սխեմատիզմը:

Վլադիմիր Իլյիչ Լենին պոեմը նա գրել է 1924 թ. գարնանից մինչև հոկտեմբերի կեսերը: Գաղափարական խորությունը, պատմական կոնկրետությունը, գեղարվեստական հագեցվածությունն ու ճշմարտացիությունը, որ բանաստեղծն արտահայտել է Լենինի մասին գրած պոեմում, բազմաթիվ ու բազմապիսի փաստաթղթերի խոր ուսումնասիրության արդյունք են:

Ինքնակենսագրության մեջ պոետը գրել է. «Ես շատ էի վախենում այդ պոեմից, քանի որ հեշտ էր իջնել մինչև քաղաքական հասարակ վերապատումի աստիճանը»: Քաղաքական դժվարին խնդիր էր՝ Լենինի մասին պատմել այնպես, որ ցայտունորեն պատկերվեր Իլյիչի սովորական մարդկային գծերը և միաժամանակ կուսակցության, ժողովրդի առաջնորդի իսկական վեհությունը:

Լենինը մեծ է, բայց միևնույն ժամանակ նա ամենահարազատ ու թանկագին մարդն է աշխարհի բոլոր հասարակ մարդկանց համար: Միտքը, պարզությունը, խորաթափանցությունը, անողոքությունը թշնամիների և փաղաքշալի բարությունը ընկերների նկատմամբ՝ ահա բանաստեղծը ինչն է ընդգծում Լենինի մեջ պոեմի առաջին իսկ տողերից: Լենինի՝ առաջնորդի, «հեղափոխության զավակի ու հոր» կերպարը ամբողջ պոեմում ցույց է տրված ժողովրդի հետ անխզելի միասնության մեջ: Հեղափոխությունը, որ նախապատրաստել էր Լենինի գլխավորած կուսակցությունը, աշխատավորների դարավոր երազանքների իրականացումն էր:

Մայակովսկին բացառիկ պաթոսով հաստատում է անվիճելի ճշմարտությունը.

*Լենինը*

*հիմա էլ*



*ողջ է բոլոր ողջերից:*

*Մեր գիտելիքն է,*

*ուժը*

*ու զենքը մեր:*

Մայակովսկու պոեմը Լենինի մասին սովետական պոեզիայի ամենանշանակալի հաղթանակն էր հերոսական էպոսի բնագավառում: Ժողովրդի ու հեղափոխության առաջնորդի գեղարվեստական վառ պատկերմամբ նա դինամիկորեն ու մեծ ուժով արտահայտել է մեր դարաշրջանի էությունը:

Պոեմում վառ արտահայտվել են սովետական պոեզիայի լավագույն գծերը՝ կուսակցականությունը, ժողովրդականությունը, քաղաքացիականությունը, դասակարգային ու հասարակական հարաբերությունների վերլուծության հստակությունը:

Մայակովսկին բազմիցս եղել է արտասահմանում՝ Գերմանիայում, Ֆրանսիայում, Ամերիկայում: Հայրենիքից հեռու էլ նա իրեն զգում էր իբրև մի մարտիկ, որ պաշտպանում է աշխատավորական զանգվածների շահերը: Մայակովսկին հիացմունքով է գրում Ամերիկայի խոշորագույն քաղաք Նյու-Յորքի մասին: Բայց դրա հետ մեկտեղ նա վճռական թշնամի է արտասահմանի նկատմամբ ամեն տեսակ ստորաքարշության, բուրժուական աշխարհին նայում է սովետական առաջավոր մարդու աչքերով, «սովետական մարդիկ իրենց յուրահատուկ հպարտությունն ունեն. մենք բուրժույներին բարձրից ենք նայում»: Մայակովսկին ամերիկայում տեսավ մի բուռն հարուստների անասելի շքեղության և աշխատավորների ցնցող աղքատության միջև եղած վիթխարի հակասությունը: Իրականում բախվելով ԱՄՆ-ում տիրող ապրելակերպի հետ, Մայակովսկին իր գիտակցության մեջ անմիջապես ստեղծում է երկու Ամերիկա՝ բուրժուական դեմոկրատիայի կողմից խաբված հասարակ մարդկանց և այդ դեմոկրատիան իրենց իմպերիալիստական նպատակների համար օգտագործող միլիարդատերերի Ամերիկան:

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության տասներորդ տարեդարձին Մայակովսկին գրում է Լավ է պոեմը, որը մի նոր քայլ էր սովետական ամբողջ պոեզիայի զարգացման գործում: Պոեմը կազմող 19 փոքրիկ գլուխները ստեղծում են առանձին ուրույն պատկերներ: Պատմելով երկրի ապրած իրադարձությունների մասին, հեղինակը ուզում է սերունդների համար վերակենդանացնել հեղափոխության անմար ռոմանտիկան: Լավ է պոեմի հիմքը վավերագրական պատմական նյութն է: Անթիվ-անհամար փաստերից, մարդկային ճակատագրերից ու բախումներից բանաստեղծն ընտրում է այնպիսիները, որոնց կապը ամենից ավելի ցայտունորեն է արտահայտում պատմության ընթացքը, հեղափոխության հաղթանակը: Պատմական փաստերին զուգընթաց, պոեմում էական տեղ են գրավում նաև Մայակովսկու անձնական վկայությունները հեղափոխության մասին, հեղափոխական դարաշրջանի հետ կապված նրա խոհերն ու ապրումները:

Լավ է պոեմը Մայակովսկու լավագույն ստեղծագործություններից է: «Այս պոեմում, Հոկտեմբերի տասներորդ տարեդարձի նախօրյակին,— գրել է Ալեքսանդր Ֆադեևը,— երբ երկիրը դեռ դժվար էր ապրում, երբ շատ ծանր էր երկրի համար, Մայակովսկին նրա մասին խոսում էր իբրև մի երկրի, որն արդեն հաստատել էր կյանքի նոր կարգ: Նա խոսում էր սովետական հայրենիքի հետ ունեցած իր սերտ կապի մասին»:

Պոեմի դրական հերոսը սովետական մարդն է, որն իրեն զգում է որպես սոցիալիստական հայրենիքի տերը, ուստի այնքան բնական են հնչում բանաստեղծի խոսքերը պոեմում. «փողոցն իմն է», «տները իմն են»: Նա ինքն է կառավարում իր երկիրը: Մայակովսկու դրական հերոսի համար, որին կուսակցությունը դաստիարակել է պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով, խորթ է ազգային սահմանափակության զգացումը, նրան ուրախացնում են լուրերը արտասահմանի իր դասակարգային եղբայրների մարտական հաջողությունների մասին: Լավ է պոեմը Մայակովսկու ամենատարբեր ռիթմերով ամենահարուստ ստեղծագործությունն է: Այստեղ Մայակովսկին բանաստեղծությունը հասցրել է նորարարության ու մատչելիության անօրինակ ու անգերազանցելի բարձրության:

Մայակովսկու ստեղծագործության մեջ մեծ տեղ է գրավում սովետական հայրենիքի, սովետական հայրենասիրության թեման: Ի հակադրություն կապիտալիզմի դիմազերծ աշխարհի, սովետական իրականությունը Մայակովսկին բացահայտում է որպես բազում հատկություններով լի մի աշխարհ: Այն ժամանակ, երբ կոմունիզմի թշնամիները ջանում էին ապացուցել, թե սոցիալիզմի կառուցումն անհնար է ՍՍՀՄ-ում, Մայակովսկին, արտահայտելով կոմունիզմի համար պայքարող առաջավոր մարտիկների ձգտումը, գրում էր. «Չի մեռնի մեր հավատը Կոմունայի նկատմամբ»:

Ելնելով լենինյան ցուցումներից, Մայակովսկին կարողացավ ոչ միայն արտացոլել սովետական մարդկանց կոմունիստական գիտակցության ձևավորման ու աճի պրոցեսը, այլև ակտիվ մասնակցություն ունեցավ դրան: Պետական մոտեցումը երկրի առջև ծառացած կարևոր պրոբլեմների, ակտիվ վերաբերմունքը իրականության նկատմամբ հատուկ են Մայակովսկու երգած նոր աշխարհի մարդկանց համար: Այդ մարդկանց է բանաստեղծը համարում հաղթանակի առհավատչյան:

*Ես գիտեմ՝*
*քաղաք*
*կլինի։*
*Ես գիտեմ՝*
*այգիներ կծաղկեն,*
*երբ*
*երկրում սովետական*
*նման*
*մարդիկ կան։*

Այս խոսքերում, ինչպես նաև Պատմություն Կուզնեցկշինի մասին և Կուզնեցկի մարդկանց մասին ամբողջ բանաստեղծության մեջ երևում էին մեր երկրի տնտեսական բարգավաճման սքանչելի հեռանկարները: Իզուր չէր, որ այդ խոսքերը ուղենիշ աստղ էին Կուզնեցկի շինարարների համար, որոնք դրանք գրում էին նոր կառուցվող շենքերի պատերին:

Աշխատավոր ժողովրդի հերոսությունն ու անձնվիրությունն ըստ արժանվույն գնահատել ու գովերգել է Մայակովսկին: Ըստ որում որպես իր ստեղծագործությունների հերոսներ նա վերցրել է սքանչելի ու, միաժամանակ, հասարակ ու իրական մարդկանց:

Ջգտելով մասնակցել հեղափոխական ժամանակի հերթական խնդիրների լուծմանը, Մայակովսկին ամենևին էլ չէր ցանկանում «արձանագրել», «պատկերել», «արձագանքել»: Նա ստեղծում էր ղեկավարող, կազմակերպող, դաստիարակող պոեզիա: Այդ պոեզիան տոգորված է մարդու վեհ զգացումով, որը հպարտ է սոցիալիստական հայրենիքի համար, ցնծում է, երբ տեսնում է նրա հզորության, նրա մշակույթի անշեղ աճը: Այդ զգացումը նա հիանալի հաղորդել է 1927 թվականի իր լավագույն բանաստեղծություններից մեկում՝ Հրաշքներում:

Նոր կյանքի յուրաքանչյուր, անգամ ամենաառաջին ու երկչոտ դրսևորման մեջ նա տեսնում էր այն մեծ գործը, որ ծավալվելու էր հետագայում: Մայակովսկու սոցիալիստական ռեալիզմի վիթխարի ուժը հենց այն է, որ նա այնքան սերտորեն կապում էր այսօրն ու վաղը, ամեն մի երևույթ դիտում ապագայի լույսի տակ: Ուստի ապագան էլ նրա ստեղծագործություններում կարծես դառնում է շոշափելի, ընդհուպ մոտենում է մեզ: Այդ պատճառով էլ նրա բանաստեղծություններում առօրյա ստեղծարար աշխատանքը կարծես ողողված է ապագայի լույսով.

*Հայրենիքս եմ*
*փառաբանում՝*
*որ կա,*
*բայց երիցս այն՝*
*որ դեռ կլինի։*

Վեհ ու համայնապարփակ գաղափարները, մտքերը հայրենիքի, սոցիալիզմի, ապագայի մասին՝ ամեն անգամ «վերստին փայլում են» Մայակովսկու բանաստեղծություններում ու պոեմներում: Բանաստեղծը,— ասել է Մ. Ի. Կալինինը,— «իրեն համարում էր հեղափոխության մարտիկ և այդպիսին էլ մնաց իր ստեղծագործության ամբողջ էությամբ: Նա ձգտում էր հեղափոխական ժողովրդի հետ միաձուլել իր ստեղծագործությունների ոչ միայն բովանդակությունը, այլև ձևը»:

Մայակովսկին մեծ հետաքրքրություն էր ցուցաբերում այդ տարիներին գյուղում կատարվող իրադարձությունների հանդեպ: Գյուղի սոցիալիստական վերակառուցման համար մղված պայքարին նա նվիրել է մի շարք բանաստեղծություններ, որոնցում նա բարձր էր գնահատում երկրում տեղի ունեցող մեծ փոփոխությունների գաղափարական-քաղաքական իմաստը:

Հետաքրքրական է Վլադիկավկազ—Թիֆլիս բանաստեղծությունը, որտեղ նոր կյանքի շինարարության թեման կենտրոնական տեղ է գրավում: Սովետական մեկ հանրապետության բախտի մասին իր խոհերը նա արծարծում է համամիութենական մասշտաբով: Իր տաղանդի ողջ ուժով նա հաստատում է այն միտքը, որ երկրի ինդուստրացման, սոցիալիստական վերափոխման ուղին համապատասխանում է բազմամիլիոն աշխատավորական զանգվածների կենսական շահերին: Այդ բանաստեղծության մեջ Մայակովսկին ցույց է տվել ոչ միայն Սովետական Վրաստանի սոցիալիստական ինդուստրացումը, այլև զարգացրել է սովետական ժողովուրդների մեծ եղբայրության թեման:

Իրականության խոր ըմբռնումը և ակտիվ մասնակցությունը նրա հեղափոխական վերափոխմանը, դարաշրջանի առաջավոր գաղափարների գիտակցական ընկալումը Մայակովսկուն հնարավորություն էին ընձեռում լիովին արտացոլել սովետական մարդկանց կյանքը, պայքարն ու հաղթանակները:

Մայակովսկու պոեզիան բազմակողմանի է: Նա պոեզիայի տարբեր ժանրերի, այդ թվում և երգիծանքի բազմակողմանի վարպետ էր: Մայակովսկին իր գրչով էր կռվում այն ամենի դեմ, ինչ հին էր, իր դարն ապրած:

Մահից առաջ գրած վերջին բանաստեղծության՝ Ամբողջ ձայնով պոեմի նախերգանքում Մայակովսկին, կարծես ամփոփելով բանաստեղծի իր ամբողջ աշխատանքը, բացականչում էր.

*...ես կբարձրացնեմ,*
*որպես կուսատոմս բոլշևիկյան,*
*իմ*
*կուսակցական գրքույկների*
*բոլոր հարյուր հատորները:*

Հաստատելով նոր դարաշրջանին համապատասխանող բանաստեղծի կերպարը, Մայակովսկին փոխեց նաև բուն պատկերացումն այն մասին, թե ինչ է պոեզիան: Մայակովսկու դիրքորոշման կուսակցականությունը օգնեց նրան բացահայտելու պատմականության կապը և պոեզիայի հրատապությունը: Նրա ստեղծագործությունն իր հիմքում միշտ էլ եղել է խորապես արդիական, հեղափոխական:

Մայակովսկու պոեզիայի լավագույն հատկությունները՝ սուր քաղաքացիականությունը, հարձակողական հաստատակամությունը, իր ուժին ու ճըշմարտացիությանը վստահ անձի ակտիվությունը օգնեցին սովետական մի քանի սերնդի բանաստեղծների լինելությանը: Նրա ստեղծագործությունների հեղափոխական պաթոսը ոգեշնչող օրինակ էր սովետահայ երիտասարդ բանաստեղծների համար, որոնք գրականության մեջ մտան նոր կարգի հաղթանակի, Հայաստանում սովետական իշխանության հաստատման շնորհիվ: Մայակովսկու պոեզիայի ազդեցության տակ սովետահայ պոեզիան դարձավ քաղաքական պայքարի զենք, մասսաների քաղաքական դաստիարակության հզոր միջոց: Մեծ պոետի ստեղծագործական փորձն օգնեց Չարենցին և սովետահայ այլ գրողներին ընթանալու որոշումների սեփական ուղիով, պատշաճ վարպետությամբ ու նոր ուժով երգելու կոմունիստական կուսակցության և նրա ստեղծող Լենինի վեհ գաղափարները:

Դիմանալով տարիների փորձությանը, Մայակովսկու պոեզիան նվաճել է միլիոնավոր մարդկանց սրտերը, օգնում է նրանց կառուցել, ապրել ու ստեղծագործել:

**ԹԱՄԱՐ ՊԱՊՅԱՆ**

# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ԱՌԱՋՆԱՀԵՐԹ ԽՆԴԻՐ

Լ. Ս. ԱԼԱՎԵՐԴՅԱՆ
ՀԿԿ Թումանյանի շրջկոմի երկրորդ քարտուղար

*Հասարակության անդամների հարաճուն պահանջմունքները բավարարելու համար հարկավոր են նյութական բարիքներ. բայց միայն բարիքների ծավալը մեծացնելով հնարավոր չէ հասնել դրան: Այդ գործում կարևոր նշանակություն ունեն արտադրանքի որակը, հուսալիությունն ու ծառայության ժամկետը:*

*Ժողովրդական տնտեսության զարգացման ներկա էտապում արտադրանքի որակի բարելավումը սոցիալիստական արդյունաբերության կարևորագույն խնդիր է: Առանց արտադրանքի որակի բարձրացման հնարավոր չէ ապահովել տեխնիկական առաջընթացի բարձր տեմպեր և մեր երկրում ստեղծել կոմունիզմի կառուցման նյութատեխնիկական բազա: ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների սովետը, հաշվի առնելով դրա կարևորությունը, առանձնապես վերջին տարիներին մեծ ուշադրություն են նվիրում արտադրանքի որակի բարձրացման հարցերին: ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման հնգամյա պլանի դիրեկտիվներում խնդիր է դրված ըստ ամենայնի բարելավել արտադրանքի որակը ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում, ընդլայնել և շարունակ նորացնել արտադրանքի տեսակները, կազմակերպել նոր տեսակի ապրանքների արտադրությունը, բարձրացնել մեքենաների, մեխանիզմների ու սարքերի հուսալիությունն ու երկարակեցությունը:*

*ՀԿԿ Թումանյանի շրջկոմը և արդյունաբերական ձեռնարկությունների կուսկազմակերպությունները նախընթաց տարիներին պատշաճ ուշադրություն են նվիրել այդ խնդիրներին, իրականացրել արտադրանքի որակի բարելավման վերաբերյալ կուսակցության պահանջները: Դա, անկասկած, տվել է իր դրական արդյունքը: Ձեռնարկություններում ուժեղացել է պայքարը բարձրորակ արտադրանքի համար: Ահա բնորոշ օրինակ: Ալավերդու գարեջրի գործարանի «Լոռի» և «Ժիգուլևյան» գարեջրի տեսակները 1970 թ. ներկայացվեցին Մոսկվայի համամիութենական համտեսին և արժանացան «չորս» գնահատականի:*

ձեռնարկության արտադրանքն ունի մեծ պահանջարկ։ Այն սպառվում է ո՛չ միայն Թումանյանի, այլև Նոյեմբերյանի, երբեմն՝ Սպիտակի և հարևան Վրացական ՍՍՀ Մառնեուլի ու Ադրբեջանական ՍՍՀ Ղազախի շրջանների բնակչության կողմից։ Սակայն պետք է խոստովանել, որ իր արտադրական կարողությամբ գարեջրի գործարանը չէր ապահովում բնակչության պահանջարկը։ Նկատի ունենալով այդ՝ դիրեկցիան ու սկզբնական կուսկազմակերպությունը որոշեցին ընդլայնել արտադրությունը։ Նոր արտադրամասի գործարկմամբ գործարանի հզորությունը կմեծանա ավելի քան 65 տոկոսով։ Բացի այդ, ընդլայնումը հնարավորություն կընձեռի 2—2,5 անգամ ավելացնելու լիմոնադի արտադրությունը և կրկնապատկելու թողարկվող գարեջրի տեսակները։

Թողարկվող արտադրանքի որակը շատ բանով պայմանավորված է նյութական արժեքների պահպանմամբ։ Այդ գործում կարևոր նշանակություն ունեն նյութերի, պատրաստի արտադրանքի և հումքի ճիշտ խնամքը, պահեստավորումը և պահպանումը, դրանց տարավորումն ու տեղափոխումը այս կամ այն տրանսպորտով։ Գաղտնիք չէ, որ բոլոր դեպքերում ցածրորակ արտադրանքն իր հետ բերում է աշխատանքի անօգտակար ծախսումներ, էներգիայի ու նյութերի գերածախս, իջեցնում ֆոնդահատույցը ու աշխատանքի արտադրողականությունը, վատացնում ձեռնարկության ֆինանսական ցուցանիշները։ Հաշվի առնելով այդ ամենը, կուսկազմակերպությունն ու դիրեկցիան նպատակահարմար գտան կառուցել նոր արտադրամասին համապատասխան պահեստային տնտեսություններ։ Այնտեղ կպահվեն գարեջրի արտադրության համար անհրաժեշտ հումքը, տարբեր տեսակի հյութեր, շաքարավազ և այլ նյութեր։ Նոր արտադրամասի շահագործմամբ հնարավորություն կընձեռվի վերակառուցել շոգեկաթսայատան բաժանմունքը, ստեղծել հիմնական նյութերի և տարայի պահեստներ, բարելավել աշխատավորների կուլտուր-կենցաղային պայմանները, բարձրացնել արտադրության կուլտուրան ու արտադրական սանիտարիան։

Նշված կոմպլեքս միջոցառումների շնորհիվ գարեջրի գործարանի շահույթը կավելանա 45—50 տոկոսով։ Իսկ դա, իր հերթին, կնպաստի արտադրության ընդլայնմանը, կուլտուր-կենցաղային և բնակարանային շինարարության, ինչպես նաև խրախուսման ֆոնդերի մեծացմանը։

Ինչպես տեսնում ենք, նոր արտադրամասի շահագործմամբ հիմնովին կփոխվի գարեջրի գործարանի տեսքը, այնտեղ կկատարվեն որակական լուրջ տեղաշարժեր։ Սակայն սննդարդյունաբերության մինիստրության Լենինականի շինտեղամասը մինչև օրս շահագործման չի հանձնել կառուցվող արտադրամասը և երաշխիք էլ չկա, որ այս տարի այն կգործի, մինչդեռ դրա ժամկետը 1971 թվականն էր։ Մինիստրությունը պետք է անհրաժեշտ պահանջկոտություն ցուցաբերի շինարարների նկատմամբ, գարեջրի նոր արտադրամասն այս տարվա երրորդ եռամսյակին շահագործման հանձնելու համար։

Երբ արտադրանքը ցածրորակ է, միևնույն քանակի նյութերի ու ժամանակի ծախսման դեպքում այն ցածր արդյունք է տալիս, պահանջվում են լրացուցիչ ժամանակ, նյութեր ու աշխատանք, իջնում է աշխատանքի արտադրողականությունը, մեծանում են տրանսպորտային ծախքերն ու պարապուրդները, կապիտալ ներդրումների չափերը, խախտվում է աշխատանքի ռիթմը։ Այդ ամենի հետևանքը լինում են նյութական ու աշխատանքային ռեսուրսների հսկայական կորուստները, որոնք, վերջին հաշվով, բացասաբար են անդրա-



դառնում տվյալ ձեռնարկության ֆինանսական դրության վրա։ Օրինակ, Շամլուղի հանքերում մեկ խմ պղնձի հանքաքարի հանույթի, տեղափոխման և հարստացման վրա ծախսվում է ավելի քան 35—40 ռուբլի։ Հաշվումները ցույց են տալիս, որ մեկ տոկոսով ավելի դատարկ ապարների խառնվելը հանքաքարի մեջ ձեռնարկությանը տարեկան հասցնում է մոտ 40 հազար ռուբլու վնաս։

Պատահական չէր, որ Շամլուղի հանքափորներն իրենց հերթական կուսժողովում (1973 թ. հունվարի 20), քննարկելով «ՀԿԿ Թումանյանի շրջանային XXXVII կոնֆերանսի նյութերը և կուսկազմակերպության խնդիրները», հիմնականում կանգ առան հանքաքարի որակի բարձրացման հարցերի վրա։ Կոմունիստները նշեցին այդ գործում տեղ գտած թերությունները և դրանց վերացման ուղիները։ Բանն այն է, որ Շամլուղի հանքերի երկրաբանական բարդ կառուցվածքը, հանքային մարմինների անկայունությունը թե՛ անկման անկյան և թե հզորության տեսակետից, հաճախակի սեղմվելը մինչև երակի լրիվ սպառումը և տեկտոնական խախտումները (հանքային երակի տեղաշարժը վեր ու վար) մեծ չափով բարդացնում են լեռնահանքային աշխատանքները և բացասաբար անդրադառնում արդյունահանվող հանքաքարի որակի վրա։ Այդպիսի պայմաններում, հանքաքարի հանման և նրա մեջ պղնձի պարունակության պլանային առաջադրանքների ապահովման համար հանքագործների և հետախույզների կոլեկտիվին անհրաժեշտ է որոնել լրացուցիչ ռեզերվներ, արտադրության մեջ ներդնել հանքաքարի հանման առաջավոր մեթոդներ։

1972 թվականին Շամլուղի հանքերում ջրամաքրման միջոցով հանվել է մոտ երեք հազար տոննա հարուստ հանքաքար, որի մեջ պղնձի պարունակությունը կազմել է 72 տոննա։ Հանույթի այդ նոր եղանակը ՍՄԿԿ անդամներ Հ. Ավագյանի, Ս. Տերյանի և Վլ. Ղարագյոզյանի մտահղացման արգասիք է և մշակվել ու արտադրության մեջ է ներդրվել Երևանի լեռնամետալուրգիական գիտահետազոտական ինստիտուտի գիտնականների հետ միասին։ Նոր եղանակի ներդրումը հույժ անհրաժեշտություն էր, որովհետև տարիներ շարունակ հարուստ հանքային մանրուքը հանքաքարի հանման ժամանակ մնում էր մաքրման միջարկղերում (կամերաներում) և կորչում։ Այս ձևով պղնձի զգալի կորուստ էր լինում, ընկնում էր հանքաքարի որակը։ Մինչդեռ հանքային այդ մանրուքը պարունակում է 2—3 անգամ ավելի պղինձ, քան արդյունահանվող հանքաքարը։ Կորուստները ետ վերադարձնելու և դրա հաշվին հանքաքարի մեջ պղնձի բաղադրությունն ավելացնելու համար նորարարներն արտադրության մեջ օգտագործեցին ջրի շիթերի ուժը։ Դրանք հանք են մղվում 7—10 մթնոլորտային ճնշման տակ։ Այսպիսով, նոր եղանակը, որ կոչվում է ջրամաքրում, օգնում է լեռնագործներին՝ իջեցնելու հանքաքարի կորուստը և բարձրացնելու արդյունահանվող հանքաքարի որակը։

Հանքերում չկան անտարբեր մարդիկ, քանի որ հանքաքարի որակի բարձրացմամբ բոլորն էլ շահագրգռված են։ Լեռնագործները տնտեսագիտական խմբակներում և կոմունիստական աշխատանքի դպրոցներում ուսումնասիրում են արտադրանքի որակի բարելավման ուղիները և գործնական աշխատանքում օգտվում դրանցից։ Արտադրանքի որակը նրանք համարում են որպես տնտեսական կարևոր ցուցանիշ։ Ցուցանիշների տախտակում, որը փակցված է Շամլուղ բանավանի հրապարակում, հաճախ է երևում «Կայծակ» թերթիկը, որտեղ

պատմվում է խոր ընդերքում աշխատողների սխրանքների, հաջողությունների ու նրանց թերությունների մասին։

Շամլուղի հանքերի կոլեկտիվն իններորդ հնգամյակի երրորդ՝ վճռական տարվա հունվար ամսվա հանքաքարի հանույթի պլանը կատարեց 100 տոկոսով, սակայն չապահովեց հանքաքարի մեջ պղնձի պարունակության պլանային առաջադրանքը։ Պլանով նախատեսված 1,3 տոկոսի փոխարեն հանքաքարի մեջ պղնձի պարունակությունը կազմեց 0,91 տոկոս։ Դա խիստ անհանգստացրեց թե՛ հանքերի սկզբնական կուսկազմակերպությանը և թե կուսշրջկոմին։ Վիճակը կարգավորելու նպատակով կուսշրջկոմի նախաձեռնությամբ փետրվարի 10-ին տեղում հրավիրվեց ակտիվի խորհրդակցություն։ Խորհրդակցության ընթացքում պարզվեց, որ հանքերի ղեկավարությունը հանքային մարմինների շահագործման ժամանակ բավարար ուշադրություն չի նվիրել հարուստ հանքային երակների նախապատրաստմանն ու շահագործմանը։ Հիմնականում հանքաքարի հանույթը կատարվել է աղքատ հանքային մարմիններում, որովհետև աշխատանքային պայմաններն այստեղ անհամեմատ հեշտ են և գործի կազմակերպման համար առանձին դժվարություններ չկան։

Խորհրդակցությունը հանքերի երկրաբանների և գլխավոր մասնագետների առջև կոնկրետ խնդիր դրեց՝ հնգօրյա ժամկետում մշակել և ներկայացնել հանքային մարմինների շահագործման գործնական պլան այն հաշվով, որ անվերապահորեն կատարվեն և՛ հանույթի, և՛ նրա մեջ պղնձի պարունակության պլանային առաջադրանքները։

Հետագայում հանքերի վարիչ, ՍՄԿԿ անդամ Վ. Ղարագյոզյանի և ավագ երկրաբան, ՍՄԿԿ անդամ Ա. Տերյանի ներկայացրած հանքային մարմինների մշակման գործնական պլանը քննարկվեց հանքերի կուսբյուրոյում և հաստատվեց։ Ըստ այդ պլանի վերակառուցվեց հանքափորների աշխատանքը։

Շամլուղի հանքերի սկզբնական կուսկազմակերպությունը, հետևողականորեն կենսագործելով մշակված միջոցառումները, հասավ լուրջ հաջողությունների։ Այժմ հանքերը կատարում և գերակատարում են ինչպես հանքաքարի հանույթի, այնպես էլ նրա մեջ պղնձի պարունակության առաջադրանքները։

Թումանյանի հրակայուն նյութերի գործարանի սկզբնական կուսկազմակերպությունը, դիրեկցիան և ինժեներա-տեխնիկական աշխատողները, լավ գիտակցելով, որ արտադրանքի որակի բարելավմանը մեծ չափով նպաստում է արտադրվող հրակայուն աղյուսի ջերմային պարամետրերի բարձրացումը (ջերմադիմացկանության բարձրացում, արտադրության տեխնիկական մակարդակի կատարելագործում, առաջավոր տեխնոլոգիայի կիրառում և արտադրության կուլտուրայի բարելավում), ձեռնարկեցին մի շարք կոնկրետ միջոցներ և հասան որոշակի հաջողությունների։ Ձեռնարկությունում մշակվեց եռաշերտ ծայրապանակի արտադրության տեխնոլոգիան և ներդրվեց արտադրության մեջ։ Այն ունի մեծ պահանջարկ, օգտագործվում է պողպատաձուլական գործարաններում հալած մետաղի ջերմաստիճանը որոշելու համար։ Եռաշերտ ծայրապանակների արտադրությունից գործարանը տարեկան ստանում է 50—60 հազար ռուբլու օգուտ։ Ի դեպ, եռաշերտ ծայրապանակներ Սովետական Միությունում արտադրվում է միայն Թումանյանի հրակայուն նյութերի գործարանում։

Գործարանի ինժեներա-տեխնիկական անձնակազմն այժմ ձեռնամուխ է



եղել կուսկազմակերպության նախատեսած հաջորդ միջոցառման կենսագործմանը. մշակվում է նոր տեսակի հրակայուն աղյուսի ստացման տեխնոլոգիան, որն արտադրության մեջ կներդրվի ընթացիկ տարվա երկրորդ կիսամյակում։ Նոր տեսակի աղյուսն իր որակով և ծառայության ժամկետով 20—25 տոկոսով կգերազանցի այժմյան արտադրվող աղյուսին, և տնտեսությունը դրանից կստանա տարեկան 300 հազար ռուբլու լրացուցիչ եկամուտ։ Ի տարբերություն հնի, այն հիմնականում կօգտագործվի մետալուրգիական գործարաններում՝ բարձր ջերմային (մինչև 1859 աստիճան) վառարանների երեսապատման համար։

Իններորդ հնգամյակում նախատեսված է գործարանը համալրել ևս մեկ նոր հզոր արտադրամասով, որի կառուցումն սկսվել է 1972 թվականին։ Այն տարեկան պետք է արտադրի 200 հազար կարբորունդային տաքացուցիչներ, որոնք կօգտագործվեն մետալուրգիական գործարաններում, էլեկտրավառարանների վրա՝ որպես էլեկտրոդներ։ Դրանք մեծ պահանջարկ ունեն։ Ցավոք, «Ախթալշին» տրեստի կոլեկտիվն անհաջող սկսեց այդ կարևոր օբյեկտի շինարարությունը. 1972 թ. պլանով նախատեսված 800 հազարի դիմաց կատարեց 235 հազար ռուբլու շինմոնտաժային աշխատանք։

Շինարարության դանդաղ տեմպը խիստ անհանգստացրեց գործարանի կուսկազմակերպությանը։ Նոր արտադրամասի շինարարությունն արագացնելու նպատակով կուսկազմակերպությունը ժամանակավոր այնտեղ գործուղեց ՍՄԿԿ անդամ, հմուտ շինարար, գործարանի դիրեկտորի տեղակալ Ս. Գալըստյանին։ Ստանձնելով տեղամասի շինարարության ղեկավարությունը, նա զգալի բեկում մտցրեց այդ գործի մեջ։ 1973 թ. առաջին եռամսյակում կատարվեց ավելի քան 200 հազար ռուբլու շինմոնտաժային աշխատանք։ Օժանդակ արտադրամասերից երկուսն արդեն շահագործման են հանձնվել։ Արագ թափով առաջ են տարվում հիմնական արտադրամասի և կենտրոնական պահեստի շինարարական աշխատանքները։ Կարելի է հուսալ, որ հրակայուն նյութերի գործարանի կուսկազմակերպության անմիջական օգնությամբ ու ղեկավարությամբ կհաղթահարվեն ժամանակավոր դժվարությունները, և ձեռնարկության կոլեկտիվը պատվով կկատարի իններորդ հնգամյակի երրորդ՝ վճռական տարվա առաջադրանքները։

Կոմունիզմի կառուցման ճանապարհին արտադրանքի որակի անընդհատ բարձրացումը լուրջ և կարևոր տնտեսական ու քաղաքական խնդիր է։ Մեր շրջանի արտադրության ոլորտի սկզբնական կուսկազմակերպությունները և կոլեկտիվներն այդպես էլ հասկանում են և պայքարում բարձրորակ արտադրանք տալու համար։ Կուսշրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները պարբերաբար անդրադառնում են արտադրանքի որակի բարելավման հարցերին և ձգտում հաջողությամբ լուծել ժողովրդատնտեսական այդ կարևոր խնդիրը։ Այսպես, օրինակ, կուսշրջկոմի բյուրոն 1972 թ. ապրիլի 20-ին լսեց գըլխավորող պանրագործարանի կուսկազմակերպության քարտուղարի զեկուցումը՝ թողարկվող արտադրանքի որակի բարելավման ու տեսակների ընդլայնման մասին և լուրջ թերություններ բացահայտեց այդ գործում։

Բյուրոն նշեց, որ կաթը և կաթնամթերքները որոշ դեպքերում չեն համապատասխանում պետական ստանդարտի պահանջներին, երբեմն տնտեսություններից ստացվող կաթը լինում է կեղտոտ ու թթված, հաճախ խախտվում

է արտադրության տեխնոլոգիան, ցածր են արտադրական սանիտարիան և կուլտուրան։

Բյուրոն գործարանի դիրեկցիայի և կուսկազմակերպության ուշադրությունը հրավիրեց չլուծված հարցերի վրա և պահանջեց լրջորեն զբաղվել արտադրության կուլտուրայի բարձրացման, աշխատատար պրոցեսների մեքենայացման, տեխնոլոգիայի ճիշտ կիրառման հարցերով։ Թողարկվող արտադրանքի որակը բարելավելու և աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու համար բյուրոն հանձնարարեց՝ կատարելագործել ու արտադրության մեջ ներդնել տեխնոլոգիական նոր պրոցեսներ, բավարար չափով ուսումնասիրել մեծ պահանջարկ ներկայացնող արտադրատեսակների ընդլայնման, որակի բարելավման և առաքման գործի կազմակերպման խնդիրները։

Շրջկոմի բյուրոյի որոշումը քննարկվեց գլխավորող պանրագործարանի սկզբնական կուսկազմակերպության դռնբաց ժողովում, որտեղ մշակվեց միջոցառումների լայն ծրագիր՝ թողարկվող արտադրանքի որակի բարելավման և առաքման գործում եղած թերությունները վերացնելու համար։ Դրան հետևեց կոնկրետ գործը։ Գործարանի կուսկազմակերպության (քարտուղար՝ Հայկանուշ Մկրտչյան), դիրեկցիայի (դիրեկտոր՝ Վ. Քամալյան) ձեռնարկած միջոցները տվեցին իրենց շոշափելի արդյունքները։ 1972 թ. գործարանը փակեց տեխնիկատնտեսական բարձր ցուցանիշներով։ Արտադրանքի իրացման տարվա պլանը կատարվեց 115, ապրանքային արտադրանքինը՝ 111,5, աշխատանքի արտադրողականությանը՝ 112,8 տոկոսով։ Կոլեկտիվը հաջողությամբ կատարեց նաև այս տարվա առաջին կիսամյակի առաջադրանքները ։

Ձեռք բերվեցին և տեղադրվեցին կաթ լցնող, սերուցք արտադրող ու լցնող մեքենաներ, որոնց արտադրողականությունը լրիվ բավարարում է շրջանի պահանջները։ 1972 թ. կոլեկտիվի ուժերով կառուցվեց նոր հզոր կոմպրեսորային բաժանմունք, որն ավտոմատացվեց և լիովին ապահովում է արտադրության ինչպես հովացումը, այնպես էլ սառեցումը։ Կառուցվեց և շահագործման հանձնվեց պաղպաղակի նոր արտադրամաս՝ օրական 3 տոննա արտադրողականությամբ։ Տեղադրվել է նոր տիպի մեքենա՝ էսկիմո-գեներատոր, որը լրիվ ավտոմատացված է և կարող է անընդմեջ պաղպաղակի տարբեր տեսակներ բաց թողնել։ Դսեղում կառուցվեց կաթի գործարան։

Լուրջ քայլեր են արվել նաև գլխավորող պանրագործարանի և նրա մասնաճյուղերի սանիտարական վիճակի բարելավման ասպարեզում։ Սալապատվել են արտադրամասերը, նոր ջրագծեր են կառուցվել Օձունի գործարանի և Լորուտի, Մարցի, Կարմիր Աղեգու սարերի կաթի ընդունման կետերի համար։

Իրականացված այս բոլոր միջոցառումների հետ միասին գլխավորող պանրագործարանի կուսակցական ու արհմիութենական կազմակերպությունները յուրաքանչյուր ամիս ամփոփում են սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունների կատարման ընթացքը և խրախուսում առաջավորներին։ Մրցության ընթացքում առաջին պլան է մղվում նաև արտադրանքի որակի բարելավման հարցը։

Կոմունիզմի կառուցման ճանապարհին արտադրանքի որակի անընդհատ բարելավումը լուրջ և կարևոր տնտեսական ու քաղաքական խնդիր է։ Մեր շրջանի արտադրության ոլորտի սկզբնական կուսկազմակերպություններն ու կոլեկտիվները այդպես էլ հասկանում են և պայքարում բարձրորակ արտադրանք տալու համար։

# ԿՈՒՍԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՄԱՐՏՈՒՆԱԿՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱՑՄԱՆ ՀԱՄԱՐ

Ա. Ա. ՍԱՖԱՐՅԱՆ
ՀԿԿ Գուգարքի շրջկոմի երկրորդ քարտուղար

Կուսկազմակերպության մարտունակությունը, առաջին հերթին, ենթադրում է կոմունիստների ավանգարդային դերի բարձրացում, ընդունած որոշումների անթերի կատարում, կուսակցական դեմոկրատիայի և կարգապահության բարձր մակարդակ, կոմունիստների գաղափարական համոզվածություն և այլն։ Կուսակցության Գուգարքի շրջկոմը և սկզբնական կազմակերպությունները այս առումով հետևողական աշխատանք են ծավալում։ Այդ նպատակն են հետապնդում շրջկոմի պլենումներում և բյուրոյի նիստերում սկզբնական կուսկազմակերպությունների, կուսակցական ժողովներում՝ կոմունիստների հաշվետվությունների և կուսակցական կազմակերպական ու քաղաքական աշխատանքի վերաբերյալ հարցերի քննարկումները։

Անցյալ տարվա հունիսին, օրինակ, շրջկոմի պլենումը քննարկեց Ժդանովի սովխոզի կուսկոմիտեի հաշվետվությունը։ Նշվեց, որ կուսկոմիտեն (քարտուղար՝ Վ. Դոդոյան), խելացիորեն ներդաշնակելով երկու տեղամասային սկզբնական կուսկազմակերպությունների ուժերը, զգալի հաջողությունների է հասել կադրերի ընտրության, տեղաբաշխման ու դաստիարակության, արտադրության առաջատար ճյուղերում կոմունիստների ներգրավման և աշխատավորության քաղաքական դաստիարակության ասպարեզներում։ Հաշվետվության քննարկումը միաժամանակ օգնեց բացահայտելու թերությունները։ Կուսկոմիտեն անբավարար էր զբաղվել առանձին ղեկավար աշխատողների պատասխանատվությունը բարձրացնելու հարցով, հաշտվել էր սովխոզի արտադրական առանձին ճյուղերի թերությունների հետ, որոնց վերացման համար պլենումը համապատասխան որոշում ընդունեց։

Իսկ երբ շրջկոմի բյուրոյում քննարկվում էր Եղեգնուտի սովխոզի կուսկազմակերպության բյուրոյի հաշվետվությունը, պարզվեց, որ այստեղ ավելի շատ ուշադրությունը նվիրում են արտադրական հարցերին՝ գրեթե ետին պլան մղելով կուսակցական կարգապահության ամրապնդման, քաղաքական ուսուցման և մասսայական միջոցառումների կազմակերպման հարցերը։

Շրջկոմի պլենումներում և բյուրոյի նիստերում կուսկոմիտեների և բյուրոների հաշվետվությունների քննարկումը լավ արդյունք է տալիս։ Այս դեպ-

քում է, որ կազմակերպության գործունեությունը վերլուծվում է բազմակողմանիորեն, որը հնարավորություն է ընձեռում հանգել ճիշտ եզրակացությունների, ընդունել գործնական որոշումներ։ Այդ քննարկումների ժամանակ, օրինակ, պարզվեց, որ երկու կազմակերպություններում էլ համեմատաբար անբավարար է կոմունիստների հետ տարվող անհատական աշխատանքը, ՍՄԿԿ առանձին անդամներ արտադրության մեջ չեն ապահովում իրենց ավանգարդային դերը։

Փորձը ցույց է տալիս, որ այն կազմակերպություններում, որտեղ ամուր հիմքերի վրա է կոմունիստների հետ տարվող անհատական, իսկ նրանց միջոցով նաև մասսաների շրջանում տարվող քաղաքական-դաստիարակչական աշխատանքը, այդտեղ բարձր է կոմունիստների ավանգարդային դերը։

Կոմունիստների ավանգարդային դերն աշխատանքի նկատմամբ ունեցած վերաբերմունքով չի սահմանափակվում։ Դրա հետ միասին նա պետք է մոբիլիզացնի անկուսակցականներին, հանդես գա որպես քաղաքական մարտիկ, ակտիվորեն պայքարի կուսակցության քաղաքականության ու որոշումների իրագործման համար։

Լինել քաղաքական մարտիկ, նշանակում է գործել մասսաների շրջանում, ուժեր չխնայել կուսակցության դիրեկտիվների իրականացման համար, խստորեն կատարել կոմունիստի համար բարձրագույն օրենքը՝ կազմակերպության կամքը։ «Յուրաքանչյուր կուսակցական կազմակերպությունում,— նշված է ՍՄԿԿ XXIV համագումարի որոշման մեջ,— հարկավոր է ապահովել բոլոր կոմունիստների ակտիվ մասնակցությունը կուսակցական որոշումների քննարկմանը, մշակմանն ու իրագործմանը, զարգացնել սկզբունքային քննադատությունն ու ինքնաքննադատությունը, որը թերությունները շտկելու և գործը բարելավելու փորձված մեթոդ է» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 275)։

Կուսակցության որոշումները կենսագործելիս կարևոր է կոմունիստի անձնական օրինակը ինչպես աշխատանքում, այնպես էլ կենցաղում։ Ավելի քան 13 տարի Համզաչիմանի սովխոզի խոզաբուծական ֆերմայի ավագ խոզապահ է աշխատում Լենինի շքանշանակիր, կուսշրջկոմի անդամ, կոմունիստ Ջ. Անանյանը։ Երբ նա առաջին անգամ ոտք դրեց ֆերմա, յուրաքանչյուր մայր խոզից տարեկան ստացվում էր 5,5, իսկ այժմ՝ 15,5 խոճկոր։ Ֆերման այժմ ունի 300 գլուխ խոզ։ Անցած տարի նրա դրամական եկամուտը կազմեց 41 հազար ռուբլի։

Իսկ կոմունիստ Ա. Ոսկանյանը Լեռնապարի սովխոզի ոչխարաբուծական ֆերմայի բրիգադավարն է։ Նախկինում այստեղ յուրաքանչյուր ոչխարից ստացվում էր 1,8 կգ բուրդ (ֆիզիկական քաշով), 100 մաքուց՝ 70—75 գառ, ֆերման աշխատում էր ոչ-եկամտաբեր։ Աշխատանքի նկատմամբ ցուցաբերած կոմունիստական վերաբերմունքի, մարդկանց պատասխանատվությունը բարձրացնելու, գործի կազմակերպման առաջավոր եղանակներ կիրառելու շնորհիվ այժմ յուրաքանչյուր ոչխարից ստացվում է 3 կգ բուրդ, 100 մաքուց՝ 100—105 գառ։ Ֆերման անցած տնտեսական տարին փակեց 5 հազար ռուբլի օգուտով։

Ջ. Անանյանը և Ա. Ոսկանյանը ո՛չ միայն արտադրության առաջավորներ են, այլև կուսակցական-քաղաքական, կազմակերպական աշխատանքի ակտիվ մասնակիցներ։ Նրանք անհաշտ են թերությունների նկատմամբ, աշխատանքում նախաձեռնող են, նորի, առաջավորի երկրպագու, լավ քաղաքացի և, որ



ամենակարևորն է, ընտանիքում լավ հայր։ Թույցե հանրապետության մասշտաբով Ջ. Անանյանի և Ա. Ոսկանյանի ցուցանիշները փայլուն չեն, բայց նրանց օրինակը շրջանում շատերին է ոգեշնչել։ Նորն ու ուսանելին բոլորի սեփականությունը դարձնելու նպատակով վերջերս կուսշրջկոմը հատուկ թերթիկով տարածեց նրանց փորձը։

Բայց, ցավոք, կան նաև կոմունիստներ, որոնք ոչ միայն լավ չեն աշխատում, այլև լքում են գործը, խախտում կուսակցական ներքին կարգապահությունը, ամիսներով անդամավճար չեն մուծում։ Կուսկազմակերպությունները և կուսշրջկոմը անդրադառնում են նման կոմունիստների հարցերին և հեռացնում նրանց կուսակցության շարքերից։ Կուսակցական կյանքից կտրվելու, երեք ամսից ավելի անդամավճար չմուծելու և այլ հանցանքների համար այդպիսի պատժի են ենթարկվել Բ. Զոբանյանը, Ա. Ալավերդյանը, Ի. Շուտովը, Դ. Համբարյանը։

Կոմունիստը չպետք է հաշտվի եղած թերությունների հետ։ Կուսակցության որոշումների կատարման համար մղվող պայքարում կոմունիստի ամենաուժեղ զենքը քննադատությունն ու ինքնաքննադատությունն են։ Կուսակցությունը մշակել է իր կյանքի այնպիսի նորմեր, որոնք ապահովում են քննադատության ու ինքնաքննադատության լայն զարգացումը, օգնում բոլոր կոմունիստներին ներգրավելու թերությունները հայտնաբերելու և շտկելու գործի մեջ։ Ահա թե Վ. Ի. Լենինը ինչում էր տեսնում կուսակցության հաջող գործունեության կարևորագույն պայմանը. «Կոմունիստների պարտականությունն է լռության չտալ իրենց շարժման թուլությունները, այլ բացահայտորեն քննադատել դրանք, որպեսզի շուտով և արմատականորեն ազատվեն դրանցից (Երկեր, հ. 31, էջ 216)։

Մենք՝ կոմունիստներս, ինքնաքննադատ մարդիկ ենք և արդեն բազմիցս սուր ու կոնկրետ խոսել ենք այդ թերությունների մասին,— ասել է Լ. Ի. Բրեժնևը՝ 1972 թ. դեկտեմբերին, ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակի առթիվ ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Գերագույն սովետի և ՌՍՖՍՀ Գերագույն սովետի համատեղ հանդիսավոր նիստում։ Մեր շրջանում, սակայն, այդպիսիների կողքին կան նաև կոմունիստներ, որոնք, ելնելով նեղ անձնական շահերից, ո՛չ թե հանդես են գալիս իրենց կազմակերպություններում, կոլեկտիվում, ասում իրենց կարծիքները, այլ, այդ բոլորը շրջանցելով, անանուն նամակներ են ուղարկում վերադաս կազմակերպություններին՝ մեծ մասամբ նրանց գցելով թյուրիմացության մեջ։ Նման երևույթներ վերջերս նկատվում էին Գյոզալդարայում։ Բայց շրջանային կոմիտեի նախաձեռնությամբ կազմակերպված հարց ու պատասխանի երեկոյից հետո, որին մասնակցում էին շրջանի գրեթե բոլոր ղեկավար աշխատողները և որտեղ առերես պարզաբանվեցին տարբեր բնույթի և տարբեր բնագավառների վերաբերող հարցեր, նման երևույթներն իսպառ վերացվեցին։

Շրջանի կուսկազմակերպությունների աշխատանքն այս տեսակետից զգալիորեն բարելավվել է։ Դրան նպաստեցին կոմունիստներին ազնվության, համարձակության և սկզբունքայնության ոգով դաստիարակելը, քննադատական դիտողությունների և առաջարկությունների նկատմամբ նրանց ցուցաբերած օբյեկտիվ ու հոգատար վերաբերմունքը, ժամանակին ընթացք տալը։ Այս առպարեզում հաջողությունը բացատրվում է նաև նրանով, որ կուսշրջկոմն ու սկզբնական շատ կազմակերպություններ ելնում են դեմոկրատական ցենտրա-

լիզմի սկզբունքներից, վարում հետևողական դեմոկրատական պրակտիկա։ Կուսակցական քննադատության տարբերիչ գիծը նրա գործարար բնույթն է, երբ ոչ միայն քննադատվում են սխալները, այլև պարզաբանվում դրանց արմատները, առաջարկություններ են մտցվում թերությունների վերացման համար։ Այսպիսին է վիճակը Համզաչիմանի, Արջուտի, Վահագնիի, Մեղրուտի, սովխոզների կուսկազմակերպություններում։ Դրանք մարտունակ են, ամուր կարգապահությամբ օժտված։

Մարտունակ է այն կուսկազմակերպությունը, որն ուշադրության կենտրոնում է պահում որոշումների կատարումը։ Կուսկազմակերպություններից պահանջվում են ո՛չ թե ընդհանուր դրույթներ, այլ կենդանի կազմակերպչական աշխատանքի միջոցով ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի կոնկրետ ղեկավարում։ Եվ որքան օպերատիվ է այդ աշխատանքը, որքան ավելի լավ է կազմակերպվում ընդունած որոշումների կատարումը, այնքան ավելի արագ են վերացվում թերությունները, ավելի մարտունակ է դառնում տվյալ կուսկազմակերպությունը։ Կուսշրջկոմի բյուրոյում, երբ քննարկվում էր Վահագնիի սովխոզի կուսկազմակերպությունում ընդունված որոշումների կատարման վիճակը, պարզվեց, որ այդ գործում կան լուրջ թերություններ։ Կուսկազմակերպությունը երբեմն ընդունում է ընդհանուր և կրկնվող որոշումներ, դրանց կատարման համար չի ստեղծում համապատասխան պայմաններ, չի նախապատրաստում որոշումը կատարող մարդկանց, ամուր կապ չի պահպանում մասսաների հետ։ ՍՄԿԿ XXIV համագումարին տված հաշվետու զեկուցման մեջ Լ. Ի. Բրեժնևը նշեց. «Կառավարման մեջ բազմաստիճանությունը վերացնելու համար հարկավոր է հասնել այն բանին, որ հարցերի մեծ մասի վերաբերյալ որոշումներն ընդունվեն մեկ անգամ ու վերջնականապես, այլ ոչ թե փոխանցվեն մեկ ինստանցիայից մյուսը» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 91)։ Այս պահանջը հավասարապես վերաբերում է նաև սկզբնական կուսկազմակերպություններին։

Կուսակցությունը սովորեցնում է, որ կուսկազմակերպության ուժը մասսաների հետ ունեցած կապի մեջ է։ Իսկ դրան հասնելու և, հետևաբար, կազմակերպության մարտունակությունը բարձրացնելու համար պետք է անսխալ որոշել մասսայի տրամադրությունը, նրա ձգտումները, պահանջները, մտքերը, կարողանալ ճիշտ որոշել նրա գիտակցականության աստիճանը, նվաճել նրա անսահման վստահությունը՝ ընկերական վերաբերմունք ցուցաբերելով նրա նկատմամբ, հոգատարությամբ բավարարելով նրա կարիքները։

Կուսշրջկոմը և սկզբնական կուսկազմակերպություններն իրենց գործունեության ընթացքում ելնում են այն իրողությունից, որ կուսակցության որոշումներն իրականացնում են մարդիկ, մեծ արդյունքներն ստացվում են աշխատավոր մասսաների ջանքերով։ Ընդհանուր գործի համար մղվող այդ պայքարում յուրաքանչյուր մարդու դերը, շարքային աշխատողից մինչև ղեկավարը, իր նշանակությունն ունի։ Նա, ով պահանջկոտ է իր նկատմամբ, կարող է պահանջկոտություն ցուցաբերել նաև շրջապատի նկատմամբ։ Ուստի, շրջանի կուսկազմակերպություններն ամեն կերպ ձգտում են բարձրացնել կոմունիստների, կուսակցական ակտիվի դերը, հետևել, որպեսզի նրանցից յուրաքանչյուրը աշխատավորների շրջանում հեղինակություն վայելի ո՛չ թե իր պաշտոնական դիրքով, այլ ընդհանուր գործի համար մղած անձնազոհ պայքարով։ Կուսկազմակերպության աշխատանքը չի կարելի բավարար համարել, եթե որո-



շումների պարզաբանմանը կուսակցական լայն ակտիվը չի մասնակցում, եթե այդ գործն ամբողջությամբ դրվում է միայն մշտական զեկուցողների և դասախոսների նեղ շրջանի և ագիտատորների վրա։ Մեզ համար պետք է գործողության ուղեցույց լինի ՍՄԿԿ XXIV համագումարում Լ. Ի. Բրեժնևի արտահայտած հետևյալ միտքը. «Մեր պարտքն է է՛լ ավելի լրիվ չափով կենսագործել լենինյան պատգամները, հասնել այն բանին, որ բոլոր բանվորները, կոլտնտեսականները, մտավորականները դառնան կուսակցության տնտեսական քաղաքականության իրականացման գիտակից մարտիկներ, գործեն որպես պետական մարդիկ, լիովին դրսևորելով իրենց ընդունակությունները, նախաձեռնությունը, տնտեսական ձեռներեցությունը» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 94)։

Կուսակցական ակտիվի ուժերի ճիշտ օգտագործման, նրանց միջոցով որոշումները մասսաների սեփականությունը դարձնելու և կենսագործելու ուսանելի փորձ ունի Շահումյանի անվան սովխոզի սկզբնական կուսկազմակերպությունը (բյուրոյի քարտուղար՝ Լ. Դալլաքյան)։ Այստեղ յուրաքանչյուր կոմունիստ մշտական և ժամանակավոր հանձնարարություն է ստանում։ Ժողովներում, բյուրոներում քննարկվող հարցերը, բացի զեկուցողից, նախապատրաստում են մի խումբ կոմունիստներ։ Կուսբյուրոն հաստատել է ագիտատորների կազմը, առաջադրել ակտիվ պրոպագանդիստներ։ Կոմունիստներից շատերը ժողովրդական վերահսկողության խմբի, ընկերական դատարանի անդամներ են։ Զրույցներով, զեկուցումներով, դասախոսություններով ո՛չ թե հանդես են գալիս միևնույն մարդիկ, այլ տարբեր հարցերի շուրջը հանդես եկողների ցուցակը միշտ թարմացվում է։ Կոմունիստներ Ժ. Առաքելյանի, Լ. Մխիթարյանի, Ա. Ալասկյարովի, Վ. Աղաբաբյանի և շատերի անուններին միշտ կարելի է հանդիպել արտադրական հարցերը վերլուծող, քաղաքական-մասսայական աշխատանք կազմակերպող անձանց մեջ։ Այստեղ չկա այն սխալ կարծիքը, թե իբր ակտիվը պետք է համալրվի գերազանցապես բարձրագույն կրթություն ունեցող և ղեկավար աշխատանքում գտնվող մարդկանցից։

Մարտունակ է նաև այն կազմակերպությունը, որտեղ ամուր հիմքերի վրա է դրված կարգապահությունը։

Ամուր կարգապահությունը, իհարկե, միայն պլան-առաջադրանքների կատարումով չի սահմանափակվում։ Մեր ուշադրության կենտրոնում է հատկապես աշխատավորների գիտակցական կարգապահության բարձրացումը կամ Լ. Ի. Բրեժնևի խոսքերով ասած. «Խոսքը վերաբերում է այն կարգապահությանը, որը կառուցված է մարդկանց բարձր գիտակցականության և պատասխանատվության վրա» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 134)։ Աշխատանքի պրակտիկան ցույց է տալիս, որ գիտակցական կարգապահությունը բարձր է այն կազմակերպությունում, որը մարտունակ է, որտեղ հետևողական աշխատանք է տարվում կոմունիստների և, ընդհանրապես, աշխատավորական հոծ զանգվածների մեջ կոմունիստական աշխարհայացքի ձևավորման ու նրանց մարքսիզմ-լենինիզմի գաղափարներով դաստիարակելու համար։

Կուսակցության քաղաքականության իրականացման գործում սկզբնական կուսկազմակերպությունների մարտունակությունը պայմանավորված է նաև այն բանով, թե ինչպես են նրանք կատարում ադմինիստրացիայի գործունեությունը վերահսկելու իրավունքի մասին ՍՄԿԿ կանոնադրության պահանջը։ Այս առումով ուսանելի փորձ ունի փայտամշակման կոմբինատի սկզբնական

կազմակերպությունը (քարտուղար՝ Վ. Ղազարյան)։ Արտադրական և տնտեսական հարցերը, բանվորների աշխատանքային գործունեությունը, կոլեկտիվում կուսակցական և պետական կարգապահության ամրապնդումը, ինչպես նաև պլանային առաջադրանքների կատարումը կուսկազմակերպության ամենօրյա ուշադրության կենտրոնում են։ Այստեղ և շրջանի շատ կազմակերպություններում կուսակցական աշխատանքն ինքնանպատակ չէ, այն նպաստում է տնտեսական-քաղաքական խնդիրների հաջող լուծմանը։ Հանրահայտ է, որ կուսակցական աշխատանքի վերլուծման, կազմակերպության գնահատման ժամանակ, առաջին հերթին, ելնում ենք տվյալ ձեռնարկության արտադրական գործունեության արդյունքներից։ Հասկանալի է, որ ադմինիստրացիայի վերահսկողությունը պետք է սերտորեն զուգակցվի այն քաղաքական աշխատանքի հետ, որն ուղղված է արտադրական պլանների հաջող կատարմանը։

Սակայն լինում են դեպքեր, երբ որոշ կուսկազմակերպությունների քարտուղարներ ճիշտ չեն հասկանում վերահսկողության իրենց իրավունքը և սահմանափակվում են միայն տնտեսական ղեկավարների հաշվետվությունների ունկնդրմամբ։ Կամ երբեմն փորձում են փոխել ադմինիստրացիայի կարգադրությունը՝ պահանջելով, որ դիրեկտորը կամ նախագահը կուսկազմակերպության հետ համաձայնեցնի իր բոլոր կարգադրություններն ու հրամանները, նրա համաձայնությամբ նշանակի, ազատի կամ վերադասավորի աշխատողներին (խոսքը վերաբերում է նոմենկլատուրային կադրերին)։

Կուստուգման կուսկազմակերպությունների քարտուղարների սեմինար-խորհրդակցությունների ժամանակ, բյուրոյում քննարկվող հարցերի և անհատական զրույցների միջոցով պարզաբանել է, որ կուսկազմակերպությունները և ադմինիստրացիան պետք է համաձայնեցնեն իրենց կազմակերպչական գործունեությունը, սերտորեն համագործակցեն իրենց առջև ծառացած խնդիրները լուծելիս։ Սակայն հարկավոր է հիշել կուսակցության այն ցուցումը, որ կուսաշխատողը չփոխարինի տնտեսական աշխատողին և հակառակը։

Կուսկազմակերպություններին ադմինիստրացիայի գործունեությանը վերահսկելու իրավունք տրված է նրա համար, որպեսզի բարելավվի տնտեսության կառավարումը, սակայն միաժամանակ վնաս չհասցվի միանձնյա ղեկավարության սկզբունքներին։ Այդ իրավունքի էությունն այն է, որ կուսկազմակերպությունը կարող է ծանոթանալ ամբողջությամբ վերցրած ձեռնարկության և նրա առանձին տեղամասերին վերաբերող հաշվետվություններին և մյուս փաստաթղթերին, իրավունք ունի և պարտավոր է լսել տնտեսական ղեկավարների հաշվետվությունները, նրանց առջև դնել պլանի կատարմանը խոչընդոտող թերությունների շուտափույթ վերացման հարցը, խորհուրդ տալ, գործերի վիճակը բարելավելու նպատակով, անցկացնել այս կամ այն միջոցառումը, հայտաբերել նոր ռեզերվներ, նշել դրանց օգտագործման ուղիները։

ՀԿԿ Գուգարքի շրջկոմն իր ամենօրյա ուշադրության կենտրոնում պահելով կուսկազմակերպությունների գործունեության բարելավումը, նրանց մարտունակության բարձրացումը, աշխատավորության ջանքերը մոբիլիզացնում է՝ արտադրության ներքին ռեզերվներն օգտագործելու, խնայողության ռեժիմն իրականացնելու, աշխատանքային կարգապահությունն ամրապնդելու, համաժողովրդական սոցիալիստական մրցությունն է՛լ ավելի ուժեղացնելու և դրանով իսկ իններորդ հնգամյակի երրորդ՝ վճռական տարում շրջանի առջև դրված խնդիրները լուծելու համար։

ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

# ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾԵԼ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ՆՅՈՒԹԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՄԱՏԱԿԱՐԱՐՈՒՄԸ

**Ա. Ս. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ**
Տնտեսական գիտությունների թեկնածու, դոցենտ

Նյութատեխնիկական մատակարարումը, որն ընդլայնված սոցիալիստական վերարտադրության կարևոր ոլորտներից մեկն է, արտադրաուժերի զարգացմանը զուգընթաց և աշխատանքի հասարակական բաժանման զարգացման ու խորացման հիման վրա վաղուց արդեն դարձել է մարդկային գործունեության ինքնուրույն բնագավառ։ Այն ժողովրդական տնտեսության լայնածավալ ճյուղերից մեկն է՝ ինչպես ՍՍՀՄ, այնպես էլ միութենական հանրապետությունների մասշտաբով։ Սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման առումով այդ ճյուղի նորմալ գործունեությունից շատ բան է կախված։

Երկրի արտադրաուժերի զարգացման բարձր մակարդակի կարևոր հետևանքներից մեկն էլ այն է, որ, ինչպես ասում է Լ. Ի. Բրեժնևը, «Ուժեղացնում է էկոնոմիկայի բոլոր օղակների փոխադարձ կախվածությունը, որի հետևանքով մեծանում է հեռանկարային պլանավորման, միջճյուղային կապերի սիստեմի կատարելագործման, նյութական մատակարարման բարելավման նշանակությունը» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 51)։

Նյութատեխնիկական մատակարարման դերն ու բացառիկ կարևոր նշանակությունը նկատի առնելով, կուսակցությունն ու կառավարությունը մեծ ուշադրություն են նվիրել նրա կազմակերպման ու պլանավորման կատարելագործման հարցերին։ Դրա շնորհիվ մեր երկրում արդեն ստեղծված է նյութատեխնիկական մատակարարման մարմինների համապետական նոր սիստեմ, որը «հնարավորություն է տալիս շրջանառության ոլորտը կազմակերպել, այն չկաշկանդելով գերատեսչական սահմանափակումներով և միաժամանակ օգտագործելով արդյունաբերության ճյուղային ղեկավարման առավելությունները» (նույն տեղը, էջ 225)։

Եվ իրոք, նյութատեխնիկական մատակարարման վերակառուցումից և ՍՍՀՄ պետմատի արտագերատեսչական սիստեմի ստեղծումից հետո դեռ ութ տարի չի անցել, բայց այդ բնագավառում կատարված հսկայական տեղաշարժերն ակներև են։ Կարճ ժամանակամիջոցում նյութատեխնիկական մատակարարման ոլորտն արագորեն զարգանալով դարձավ ժողովրդատնտեսության խոշորագույն ճյուղերից մեկը։

Այն այժմ ունի կենտրոնական և հանրապետական օրգանների լայնատարած ցանց, որի կազմում եղած օրգանների, կազմակերպությունների և ձեռնարկությունների թիվը հասնում է մոտ 11 հազարի, 136,5 հազար աշխատողներով։

ՍՍՀՄ պետմատի սիստեմն այժմ տնօրինում է մատակարարման-վաճառահանման նշանակման հիմնական ֆոնդեր՝ մոտ 667 մլն ռուբլու արժեքով, պահեստային տարածություններ՝ մոտ 11,5 մլն. քառ. մետր ընդհանուր մակերեսով։ Նրա կողմից իրականացվող մեծածախ ապրանքաշրջանառության ծավալը հասնում է մոտ 119 մլրդ ռուբլու, որից 16 մլրդ ռուբլին բաժին է ընկնում պահեստային մատակարարմանը։

Խոշորացել է նաև Հայգլխմատը, որն իր կազմում ունի մատվաճառ կազմակերպությունների, գրասենյակների, բազաների և մանրամեծածախ առևտրի խանութների ընդարձակ ցանց, մասնագետ կադրերի բարձրորակ անձնակազմ, աստիճանաբար ընդլայնվող պահեստային տնտեսություն՝ տարեցտարի հզորացող նյութատեխնիկական բազայով։

Այժմ Հայգլխմատի ենթակայության մեջ մտնում են 11 մասնագիտացված մատվաճառ վարչություններ, հանրապետության 5 քաղաքների և նրանց միջակա շրջանների մատակարարման գրասենյակներ, մանրամեծածախ առևտրի 8 խանութներ և այլն։

Բնորոշն այն է, որ ճյուղային կառավարման անցնելուց հետո, մատակարարման արտադրատեխնիկական ցանցի այդպիսի ընդլայնումը ուղեկցվեց նրա պահեստային տնտեսության ավելի արագ զարգացմամբ, որի շնորհիվ հիմնովին վերացավ հանրապետության մատվաճառ կազմակերպությունների գործունեության ծավալմանը խանգարող գլխավոր խոչընդոտներից մեկը։ Բավական է ասել, որ միայն նախորդ հնգամյակում Հայգլխմատի ցանցում պահեստային տարածություններն ավելացան 42,8 հազար ք մ։ Դա, իրավամբ, ռեկորդային ցուցանիշ էր։

Այժմ Հայգլխմատի սիստեմն ունի 370,6 հազար ք մ պահեստային տարածություն, որը միութենական մի շարք հանրապետությունների պահեստային տարածություններից զգալիորեն մեծ է։

Սակայն պետք է նշել, որ ի տարբերություն միութենական շատ հանրապետությունների, ՀՍՍՀ-ում պահեստային ծածկված տարածությունների տեսակարար կշիռն զգալի չափով փոքր է (21,3 տոկոս), մինչդեռ Լիտվայում այն հասնում է 60,4, էստոնիայում՝ 55,8, Լատվիայում՝ 49, իսկ ՍՍՀՄ պետմատի մասշտաբով՝ 33,3 տոկոսի։

Հաշվումները ցույց են տալիս, որ Հայգլխմատի պահեստային ծածկված տարածությունների տեսակարար կշիռը մոտ 6 տոկոսով բարձրացնելու դեպքում մատվաճառ կազմակերպությունները հնարավորություն կունենան հանրապետությունում նորմալ ձևով կազմակերպելու նյութական արժեքների պահպանման և իրացման գործը։

Հայգլխմասի ենթակայության մատվաճառ կազմակերպությունները լավ արդյունքների են հասել նաև պահեստային տնտեսությունների նյութատեխնիկական բազայի ամրապնդմամբ, դրանց հիմնական աշխատանքների մեքենայացմամբ։

Պահեստային տարածությունների ընդարձակմամբ և նյութատեխնիկական բազայի ամրապնդմամբ, զգալի չափով ընդլայնվել է Հայգլխմատի ցանցի



գործունեության ոլորտը, նկատելիորեն բարելավվել են հիմնական տնտեսական ցուցանիշները։ Բավական է ասել, որ դրա կողմից սպասարկվող ձեռնարկությունների, կառույցների ու կազմակերպությունների քանակն այժմ հասնում է 6.051-ի։

Չնայած այդ ամենին, Հայգլխմատը դեռևս լիովին չի տնօրինում հանրապետության նյութատեխնիկական մատակարարման ճյուղը։ Դրա հետ միասին և դրան զուգահեռ տեխնիկա-արտադրական բնույթի արտադրամիջոցների իրացման ֆունկցիաներ են կատարում ոչ միայն «Հայգլխնավթմատն» ու «Հայգյուղտեխնիկա» միավորումը, այլև մինիստրությունների ու գերատեսչությունների երկու տասնյակից ավելի մատվաճառ կազմակերպություններ։ Սակայն պետք է ասել, որ հանրապետության բոլոր ձեռնարկությունների, կառույցների ու կազմակերպությունների կարևոր արտադրամիջոցների մատակարարման ողջ ծանրությունը (1966 թվականից սկսած մինչև այժմ) հիմնականում ընկած է Հայգլխմատի սիստեմի վրա։

Ահա թե ինչու հանրապետության նյութատեխնիկական մատակարարման ճյուղի զարգացման պրոցեսն ու կատարելագործման ուղիները ճիշտ պատկերացնելու համար, անհրաժեշտ է քննարկել Հայգլխմատի սիստեմի ողջ գործունեությունը, վերլուծել դրա տնտեսական ցուցանիշների համակարգը, տեսնել, թե դրանք նախորդ տարիներին ինչպե՞ս են փոփոխվել և գործնականում ի՞նչ հնարավորություններ կան դրանց արմատական բարելավման համար։

Այդ առումով առանձնահատուկ հետաքրքրություն են ներկայացնում հանրապետության մեծածախ ապրանքաշրջանառության ծավալը, կառուցվածքն ու դինամիկան ըստ ենթակայության ձևերի բնութագրող տվյալները։

Բերենք դրանք մի աղյուսակում՝ թեկուզ միայն 1966 և 1971 թվականներին (մլն ռուբլիներով)։

| Տարիները | Մատակարարման ձևերը | Հանրապետության մասշտաբով | Այդ թվում | | |
|---|---|---|---|---|---|
| | | | Հայգլխմատի ցանցում | Նավթմատում և գյուղտեխնիկայում | Գերատեսչական մատվաճառներում |
| | Ընդամենը | 1116,7 | 834,0 | 112,9 | 169,8 |
| | Այդ թվում՝ | | | | |
| | Պահեստային | 215,5 | 96,2 | 71,2 | 48,1 |
| 1966 | Տրանզիտային | 901,2 | 737,8 | 41,7 | 121,7 |
| | Որից՝ | | | | |
| | Մասնակցությամբ | 54,6 | 11,8 | 28,7 | 14,1 |
| | Առանց մասնակցության | 846,6 | 726,0 | 13,0 | 107,6 |
| | Ընդամենը | 1531,4 | 1237,6 | 180,3 | 113,5 |
| | Այդ թվում՝ | | | | |
| | Պահեստային | 368,8 | 184,7 | 118,0 | 66,1 |
| 1971 | Տրանզիտային | 1162,6 | 1052,9 | 62,3 | 47,4 |
| | Որից՝ | | | | |
| | Մասնակցությամբ | 94,6 | 20,3 | 57,3 | 17,0 |
| | Առանց մասնակցության | 1068,0 | 1032,6 | 5,0 | 30,4 |

Աղյուսակի տվյալներից երևում է, որ վերջին տարիներս Հայգլխմատի սիստեմի միջոցով է կատարվում հանրապետության մեծածախ ապրանքա-

շրջանառության ավելի քան 80 տոկոսը, իսկ «Հայգլխնավթմատի», «Հայգյուղտեխնիկա» միավորման և գերատեսչական մատվաճառ կազմակերպությունների միջոցով՝ 20 տոկոսից էլ պակաս մասը, ընդ որում միայն գերատեսչական մատվաճառ կազմակերպություններին (որոնց քանակը երկու տասնյակից ավելի է) բաժին է ընկնում հանրապետության ամբողջ մեծածախ ապրանքաշրջանառության միայն 7,4 տոկոսը։

Ուշագրավն այն է, որ մեծածախ ապրանքաշրջանառության ծավալում Հայգլխմատի սիստեմին ընկնող բաժինը ոչ միայն մեծ է, այլ գնալով ավելի արագորեն է աճում (1966 թվականի 74,7 տոկոսից 1971 թվականին հասել է 80,8 տոկոսի), մինչդեռ գերատեսչական մատվաճառ կազմակերպություններին ընկնող առանց այն էլ փոքր բաժինը (1966 թվականին 15,2 տոկոս) աստիճանաբար նվազելով 1971 թվականին հավասարվել է 7,4 տոկոսի, իսկ «Հայգլխնավթմատին» և «Հայգյուղտեխնիկային» ընկնող բաժինը նշված 6 տարում ավելացել է ընդամենը 1,7 տոկոսով։

Մեծածախ ապրանքաշրջանառության կառուցվածքային փոփոխությունների այդպիսի տենդենցը հաշվի առնելով, համարձակորեն կարելի է պնդել, որ ընթացիկ տասնամյակի վերջում Հայգլխմատի սիստեմի տեսակարար կշիռը հանրապետության նյութատեխնիկական մատակարարման ճյուղում կհասնի մոտ 90 տոկոսի, իսկ գերատեսչական մատվաճառ կազմակերպություններինը (եթե նրանք շարունակեն իրենց ինքնուրույն գոյությունը, որ մեր կարծիքով քիչ հավանական է) կունենա շատ աննշան մակարդակ։

Աղյուսակի տվյալներից նաև երևում է, որ հանրապետության մասշտաբով կատարվող պահեստային ապրանքաշրջանառության ծավալի մեջ նույնպես գերակշռությունը պատկանում է Հայգլխմատի սիստեմին (1966 թվականին 44,6 տոկոս, 1971 թվականին՝ 50,1 տոկոս), իսկ գերատեսչական մատվաճառ կազմակերպությունների մոտ, մատակարարման այս ձևում էլ նկատվում է նվազում (1966 թվականի 22,4 տոկոսից, 1971 թվականին իջել է 17,9 տոկոսի), չնայած նրանց մեծածախ ապրանքաշրջանառության մեծ մասը (58,2 տոկոսը) կատարվում է պահեստային մատակարարումների ձևով։

Նվազման տենդենց ունի նաև «Հայգլխնավթմատի» և «Հայգյուղտեխնիկայի» պահեստային ապրանքաշրջանառության տեսակարար կշիռը, սակայն դրա փոխարեն նրանց մոտ աճում է հաշվարկներին մասնակցությամբ տրանզիտային մատակարարումների տեսակարար կշիռը (1966 թվականի 52,6 տոկոսից 1971 թվականին հասել է 60,6 տոկոսի), իսկ գերատեսչական մատվաճառ կազմակերպություններինը նույն ժամանակաշրջանում նվազել է 7,8 տոկոսով։ Հայգլխմատի սիստեմում տրանզիտային մատակարարման այդ ձևը (մասնակցությամբ) մնացել է գրեթե նույն մակարդակի վրա, մինչդեռ նրա՝ առանց հաշվարկներին մասնակցելու տրանզիտային մատակարարումների տեսակարար կշիռը հանրապետության նյութատեխնիկական մատակարարման ճյուղի համանուն ցուցանիշում աճել է մոտ 11 տոկոսով։ Այժմ հանրապետության նյութատեխնիկական մատակարարման ճյուղում իրականացվող տրանզիտային մատակարարումների այդ ձևի (առանց մասնակցության) 97 տոկոսը բաժին է ընկնում Հայգլխմատի սիստեմին, 0,5-ը «Հայգլնավթմատին» և «Հայգյուղտեխնիկային» միասին վերցրած և միայն 2,5 տոկոսը՝ մնացած գերատեսչական մատվաճառ կազմակերպություններին։

Հայգլխմատի սիստեմը աչքի է ընկնում նաև ապրանքաշրջանառության



ընդհանուր ծավալի և, հատկապես, նրա պահեստային ձևի աճի բարձր տեմպերով։ Բավական է ասել, որ եթե նրա ապրանքաշրջանառության ընդհանուր ծավալը 1971 թվականին, համեմատած 1966 թվականի հետ, բացարձակապես աճել է 48,4 տոկոսով, պահեստայինը՝ 92,1 տոկոսով, իսկ տրանզիտայինը՝ 42,7 տոկոսով, ապա գերատեսչական մատվաճառ կազմակերպություններում, ընդհակառակը, առաջինի մակարդակը նույն ժամանակաշրջանում նվազել է 33,2 տոկոսով, տրանզիտային ձևինը՝ 61,1 տոկոսով և միայն պահեստայինն է, որ աճել է 37,4 տոկոսով։

Հայգլխմատի և մյուս ենթակայությունների մատվաճառ կազմակերպությունների մեծածախ ապրանքաշրջանառության կառուցվածքի համեմատական վերլուծությունից ակնհայտորեն երևում է, որ տնտեսական խթանման նոր համակարգի կատարելագործմանը զուգընթաց, հաշվարկներին մասնակցությամբ տրանզիտային մատակարարման ձևը (աստիճանաբար կորցնելով նախկինում ունեցած իր տնտեսական բովանդակությունը) իմաստազրկվում է՝ կապված սպառող ձեռնարկությունների ֆինանսական դրության կայունացման հետ։

Ճիշտ է, առայժմ որոշ ձեռնարկությունների համար այն դեռ լրիվին չի կորցրել իր նշանակությունը և նույնիսկ առանձին դեպքերում նկատելիորեն բարձրացնում է դրանց սպասարկող մատվաճառ կազմակերպությունների պատասխանատվությունը՝ մատակարարումները ժամանակին և ռիթմիկ իրականացնելու գործում, սակայն զարգացման ընդհանուր տենդենցը ցույց է տալիս, որ, հատկապես, տեխնիկա-արտադրական նշանակման հիմնական արտադրատեսակների մատակարարման մեջ այն կրճատվում է հարաբերականորեն, իսկ առանձին մատվաճառ կազմակերպություններում՝ նաև բացարձակորեն։

Բավական է ասել, որ մատակարարման այդ ձևի տեսակարար կշիռը 1966—1971 թվականներին Հայգլխմատի ապրանքաշրջանառության ընդհանուր ծավալի մեջ ավելացել է 0,2 տոկոսով և կազմում է ընդամենը 1,6 տոկոս, իսկ «Հայմետաղմատվաճառում», «Հայգունմետաղմատվաճառում» և «Հայէլեկտրամատվաճառում» այդ ձևը առհասարակ գոյություն չունի։ Նշենք նաև այն, որ դրա տեսակարար կշիռը Հայգլխմատի ապրանքաշրջանառության մեջ այժմ արդեն 1,13 անգամ պակաս է, քան մանրամեծածախ առևտրի ցանցինը։ Դրությունն այդպես է նաև Մոլդավական և Լատվիական ՍՍՀ-ներում։ Մնացած միութենական հանրապետություններում նույնպես տրանզիտային ապրանքաշրջանառության տեսակարար կշիռը 1968 թ. սկսել է աստիճանաբար նվազել։

Դժվար չէ նկատել, որ այդպիսի փոփոխությունների օբյեկտիվ ընթացքը, որն աստիճանաբար հանգեցնելու է հաշվարկներին մասնակցությամբ տրանզիտային մատակարարման ձևի տեսակարար կշռի է՛լ ավելի իջեցմանը և ապա նրա լիակատար արտամղմանը՝ մեծածախս առևտրի ծավալման, ինչպես նաև ուղղակի և երկարատև կապերի հիման վրա իրականացվող մատակարարումների ընդլայնման պայմաններում։ Վերջին տարիներս սկսված այդ պրոցեսը աստիճանաբար անհրաժեշտ նախադրյալներ է ստեղծում արտադրության միջոցների ֆոնդավորված բաշխման սկզբունքից մեծածախ առևտրին անցնելու համար։

Տնտեսվարման նոր սիստեմի պայմաններում որքան էլ ընդլայնվել են նյութատեխնիկական մատակարարման ճյուղի շրջանակները, որքան էլ նրա բոլոր ցուցանիշների մեջ մեծացել է մատակարարման արտագերատեսչական սիս-

տեմին ընկնող բաժինը, այնուամենայնիվ, արտադրամիջոցների շրջանառության ծախսերի կազմավորման պրոցեսն իր էական գծերով մնացել է նույնը. Բանն այն է, որ արտադրամիջոցների շրջանառության ոլորտում կատարվող բոլոր ծախսերը իրենց բնույթով հանդիսանում են շրջանառության ծախսեր, սակայն միշտ չէ, որ դրանք երևում են վերջինի ձևով։

Օրինակ, շրջանառության այն ծախսերը, որ անմիջականորեն կատարում են արդյունաբերական ձեռնարկությունները ու շինարարական կազմակերպությունները, անմիջականորեն վերագրվում են նրանց կողմից թողարկվող արտադրանքի ինքնարժեքին (կառուցվող օբյեկտների արժեքին), ուստի շրջանառության ծախսերի արտաքին տեսքը չեն ընդունում։ Մինչդեռ մատակարար կազմակերպությունների կողմից կատարվող ծախսերն անմիջաբար շրջանառության ծախսեր են թե՛ էությամբ և թե՛ իրենց ձևով։ Ահա թե ինչու հանրապետության մատակարարման ճյուղի շրջանառության ծախսերի մակարդակի և կառուցվածքի մասին ամբողջական պատկերացում ստանալու համար պետք է ուսումնասիրել բոլոր մատակարար կազմակերպությունների միացումար տվյալները։

Բերենք դրանք մի աղյուսակի մեջ դարձյալ 1966 և 1971 թվականների համար (հազար ռուբլիներով)։

| Տարիները | Հանրապետության մատակարար կազմակերպությունները ըստ ենթակայությունների | Շրջանառության ծախսերի ընդհանուր ծավալը | Այդ թվում | | | |
|---|---|---|---|---|---|---|
| | | | Ներկրման ծախսեր | Պահպանման և իրացման ծախսեր | Ավտոտրանսպորտային ծախսեր | Վարչակառավարական ծախսեր |
| | Ընդամենը հանրապետությունում այդ թվում. | 12875 | 6997 | 4127 | 466 | 1285 |
| | «Հայգլխմատի» սիստեմում | 4402 | 2098 | 1831 | 36 | 437 |
| 1966 | «Հայգլխնավթմատում» և «Հայգյուղտեխնիկայում» | 5638 | 3509 | 1398 | 412 | 317 |
| | Մնացած գերատեսչական մատակարարներում | 2837 | 1390 | 898 | 18 | 531 |
| | Ընդամենը հանրապետությունում այդ թվում. | 21336 | 11045 | 8485 | 633 | 1173 |
| | «Հայգլխմատի» սիստեմում | 7832 | 3085 | 4245 | 32 | 470 |
| 1971 | «Հայգլխնավթմատում» և «Հայգյուղտեխնիկայում» | 9775 | 5891 | 3018 | 577 | 289 |
| | Մնացած գերատեսչական մատակարարներում | 3729 | 2060 | 1222 | 24 | 414 |

Աղյուսակում բերված տվյալներից երևում է, որ շրջանառության ծախսերի ծավալը նշված ժամանակամիջոցում ընդհանուր առմամբ աճել է ինչպես հանրապետության մասշտաբով, այնպես էլ առանձին ենթակայություններում։ Սակայն ապրանքաշրջանառության ծավալի ավելացման և շրջանառության ծախսերի աճման հարաբերակցությունները տարբեր ենթակայություններում փոփոխվել են տարբեր չափերով։ Հանրապետության մասշտաբով, օրինակ, շրջանառության ծախսերն աճել են 65,7 տոկոսով, մինչդեռ մեծածախ ապրանքաշրջանառության ծավալն ավելացել է ընդամենը 37,1 տոկոսով։ Այլ կերպ ասած, շրջանառության ծախսերի աճը 1,8 անգամ գերազանցել է մե-



ծածախ ապրանքաշրջանառության աճին։ Այդքան մեծ տարբերությունը առաջացել է հիմնականում գերատեսչական մատակարար կազմակերպությունների զանցանքով, այն պատճառով, որ նրանց շրջանառության ծախսերի աճը կատարվել է մեծածախ ապրանքաշրջանառության ծավալի անհամամասնության հետևանքով։

Աղյուսակում բերված տվյալներից երևում է նաև, որ հանրապետության նյութատեխնիկական մատակարարման ճյուղի շրջանառության ծախսերի ընդհանուր ծավալի մեջ Հայգլխմատին ընկնող բաժինը, համեմատած մյուս ենթակայությունների ծախսերին, զգալի չափով փոքր է (1966 թվականին՝ 34,2 տոկոս, 1971 թվականին՝ 36,7 տոկոս), չնայած նրա ցանցի միջոցով է կատարվում հանրապետության ամբողջ մեծածախ ապրանքաշրջանառության մոտ 81 տոկոսը։ Այդ հանգամանքը զգալի չափով կարգավորում է հանրապետության մասշտաբով շրջանառության ծախսերի մակարդակի միջին տվյալները, չեզոքացնում մյուս ենթակայությունների բացասական ներգործությունը նրա վրա։

Հայգլխմատի սիստեմը մյուս ենթակայություններից էապես տարբերվում է նաև շրջանառության ծախսերի, հատկապես ներկրման և պահպանման ծախսերի միջև եղած հարաբերակցություններով ու դրանց փոփոխման ուղղություններով։ Եթե մյուս ենթակայություններում շրջանառության ծախսերի ընդհանուր ծավալի մեջ մեծ տեսակարար կշիռ ունեն ներկրման ծախսերը, ապա Հայգլխմատի սիստեմում 1968 թվականից պահպանման և իրացման ծախսերի տեսակարար կշիռը սկսել է աստիճանաբար աճող չափերով գերազանցել ներկրման ծախսերին։ 1966 և 1971 թվականներին, օրինակ, պահպանման և ներկրման ծախսերի հարաբերակցությունը կազմում էր 1 : 1,2, 1968 թվականին այն դարձավ 1 : 0,8, իսկ հետագա 3 տարիներին՝ 1 : 0,7։

Հայգլխմատի սիստեմը աչքի է ընկնում նաև շրջանառության ծախսերի ցածր մակարդակով։ Հաշվումները ցույց են տալիս, որ 1971 թվականին հանրապետության նյութատեխնիկական մատակարարման ճյուղի մասշտաբով մեկ ռուբլու ապրանքաշրջանառությանն ընկնող ծախսը կազմում էր 1,39 կոպեկ, Հայգլխմատի սիստեմում՝ 0,63 կոպեկ, «Հայգլխնավթմատում» և «Հայգյուղտեխնիկայում»՝ 5,42 կոպեկ, իսկ մնացած գերատեսչական մատակարարներում՝ 3,29 կոպեկ։ Ի դեպ, այստեղ ծախսերի մակարդակը որոշված է շրջանառության ծախսերի ընդհանուր ծավալը հարաբերելով ամբողջ ապրանքաշրջանառության վրա։ Իսկ եթե վերցնենք զտված ծախսերը (առանց տրանսպորտային ծախսերի, որոնք սպառողների կողմից չեն հատուցվում և կապված են ֆրանկո-նշանակման կայարան գնով իրացվող արտադրատեսակների փոխադրման հետ) և այն հարաբերենք միայն պահեստային ապրանքաշրջանառության վրա (ներառված մանրամեծածախ առևտրի շրջանառությունը), ապա Հայգլխմատի շրջանառության ծախսերի մակարդակը 1970 թվականին կկազմի 2,35 տոկոս, իսկ 1971 թվականին՝ 2,19 տոկոս։

Վերը շարադրվածից հեշտ է նկատել, որ մինիստրությունների ու գերատեսչությունների մատակարար կազմակերպությունները չնայած մեծաթիվ են, բայց տնօրինում են հանրապետության մեծածախ ապրանքաշրջանառության չնչին մասը, այն էլ հսկայական չափերի հասնող շրջանառության ծախսերով։ Դրա համար օրինական հարց է առաջանում, թե ինչո՞վ է պատճառաբանված նրանց ինքնուրույն գոյությունը Հայգլխմատի սիստեմի կողքին ու նրան զուգահեռ։

ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի 1965 թվականի № 728 որոշման հիման վրա բոլոր գերատեսչական մատվաճառ կազմակերպությունները պետք է հանձնվեին Հայգլխմատի սիստեմին, բացառությամբ 7 մատվաճառ կազմակերպությունների (Անդրերկաթուղու Երևանի բաժանմունքի նյութատեխնիկական մատակարարման բաժինը, «Հայգլխէներգոմատը», «Ջրովտմատը», «Ջրմատը», «Հայգյուղտեխնիկա» միավորումը, ՀՍՍՀ կապի մինիստրության մատակարարման գրասենյակը, Երքաղմատը)։

Սակայն, թվարկվածներից բացի, հանրապետությունում պահպանվեցին նաև մի շարք այլ մինիստրությունների և գերատեսչությունների պատվաճառ կազմակերպություններ, բայց իհարկե ամենևին ոչ այն պատճառով, որ նրանք իրենց ենթակա օբյեկտներին մատակարարում էին իբր թե այնպիսի «սպեցիֆիկ» արտադրատեսակներ, որոնց իրացմամբ Հայգլխմատի բազաները չէին զբաղվում։ Ընդհակառակը, 1969 թվականին այդ ասպարեզում կատարված ստուգումները պարզեցին, որ որոշ գերատեսչական մատվաճառ կազմակերպությունների ապրանքաշրջանառության ընդհանուր ծավալի մեջ «սպեցիֆիկ» արտադրատեսակները փոքր տեսակարար կշիռ ունեին։

Եթե այդ կազմակերպությունները զբաղվեին միմիայն, այսպես կոչված, «սպեցիֆիկ» արտադրատեսակների մատակարարմամբ, ապա հասկանալի է, որ նրանց ապրանքաշրջանառության ծավալը կլիներ ավելի փոքր, ուստի վերջինս արհեստականորեն մեծացնելու նպատակով ամեն կերպ ձգտում էին ավելի շատ ընդհանուր-արդյունաբերական նշանակման արտադրատեսակներ իրացնել։

Եվ պատահական չէ, որ ՀՍՍՀ Մինիստրների սովետի կողմից առաջարկվեց 1968 թվականի հունվարի 1-ից սկսած արգելել գերատեսչական մատվաճառ կազմակերպությունների բազաներն ու պահեստները այնպիսի նյութերի ու սարքավորումների ներկրումը, որոնց իրացմամբ զբաղվում էին Հայգլխմատի ենթակայության մատվաճառ կազմակերպությունները։

Դեռ 1967 թվականի դեկտեմբերի 20-ին գերատեսչական մատվաճառ կազմակերպությունների կարգավորման հարցով զբաղվող միութենական հանձնաժողովին հասցեագրված մի գրության մեջ ՀՍՍՀ Մինիստրների սովետը իրավացիորեն գտնում էր, որ «Պետք է հասնել այն բանին, որպեսզի հանրապետության տերիտորիայում գտնվող բոլոր ձեռնարկություններին ու կազմակերպություններին, անկախ նրանց ենթակայության ձևերից, ընդհանուր-արդյունաբերական նշանակման արտադրատեսակներ մատակարարելու գործով զբաղվեն միայն Հայգլխմատի ենթակայության մատվաճառ կազմակերպությունները»։

Միութենական մի շարք հանրապետություններում համանուն մինիստրություններն ու գերատեսչությունները, որոնք ունեն նույնանման ձեռնարկություններ ու կազմակերպություններ, վերջինների մատակարարման գործը վաղուց հանձնել էին իրենց գլխմատների ենթակայության մատվաճառ կազմակերպություններին։ Օրինակ, Բելոռուսական, Լիտվական, Լատվիական, Էստոնական, Մոլդավական, Թուրքմենական, Տաջիկական և Կիրգիզական ՍՍՀ-ներում կինեմատոգրաֆիայի պետական կոմիտեները մատվաճառ կազմակերպություններ չունեին։ ՌՍՖՍՀ-ի, Բելոռուսիայի, Մոլդավիայի, ինչպես նաև Տաջիկական և Թուրքմենական ՍՍՀ-ների մամուլի պետական կոմիտեներին ենթակա օբյեկտների նյութատեխնիկական մատակարարումը կատարում են այդ



հանրապետությունների գլխմատներին ենթակա մատվաճառ կազմակերպությունները, մինչդեռ Հայկ. ՍՍՀ-ում կինեմատոգրաֆիայի և մամուլի պետական կոմիտեները ունեին (այժմ էլ ունեն) իրենց առանձին մատվաճառ կազմակերպությունները և դա արդարացնում են այն պատճառաբանությամբ, որ իբր թե դրանք ենթակա օբյեկտներին մատակարարում են խիստ «սպեցիֆիկ» նյութեր ու սարքավորումներ։

Հարց է առաջանում, թե ինչո՞ւ դրանք «սպեցիֆիկ» են հենց միայն Հայաստանում։ Չէ՛ որ նույնանման նյութեր ու սարքավորումներ են օգտագործում նաև վերը թվարկված հանրապետությունների համանուն գերատեսչությունների ենթակայության օբյեկտները, որոնց համար սակայն այդ նյութերը ամենևին էլ «սպեցիֆիկ» չեն և իրացվում են նրանց գլխմատների մատվաճառ կազմակերպությունների կողմից։

Գերատեսչական մատվաճառ կազմակերպությունների պահպանման գլխավոր պատճառն այն է, որ Հայգլխմատը մինչև վերջին տարիներս չուներ արտադրա-տեխնիկական նշանակման արտադրանքի իրացման բազաների, պահեստների և մանրամեծածախ առևտրի խանութների զարգացած և ճյուղավորված ցանց։ Այն կենտրոնացված էր գլխավորապես Երևանում, իսկ Լենինականի և Կիրովականի քաղաքներում կազմակերպված մեկական մատակարարման գրասենյակների հնարավորությունները խիստ սահմանափակ էին և հաճախ ի վիճակի չէին իրենց սպասարկման գոտում եղած օբյեկտների պահանջները ժամանակին և լրիվ բավարարել։ Դրա հետ միասին, լեռնային շրջանների համար, որոնք երկաթուղիներից զգալի հեռավորության վրա էին գտնվում, Երևանյան բազաներից նյութական ռեսուրսների կանոնավոր առաքումը, հատկապես ձմեռվա ամիսներին, շատ մեծ դժվարությունների հետ էր կապված։ Այդպիսի պայմաններում միայն գերատեսչական մատվաճառ կազմակերպություններն էին ի վիճակի իրենց ենթակա մանր, բայց մեծաթիվ օբյեկտներին նյութական ռեսուրսներով ապահովելու։

Բայց այժմ, երբ հանրապետության նյութատեխնիկական մատակարարման գլխավոր վարչության սիստեմը զգալի չափով ամրապնդվել է թե՛ կազմակերպչորեն և թե՛ նյութատեխնիկական բազայի տեսակետից, երբ մատակարարման գրասենյակների ու մանրամեծածախ առևտրի խանութների ընդարձակ ցանց է ստեղծվել հանրապետության բազմաթիվ շրջաններում, մեր կարծիքով արդեն ժամանակն է կտրուկ կերպով դնել և առանց վարանելու լուծել հանրապետությունում եղած ավելորդ և զուգահեռաբար գործող գերատեսչական մատվաճառ կազմակերպությունները Հայգլխմատի սիստեմին հանձնելու հարցը։ Դա կապահովի միջոցների հսկայական տնտեսում, միաժամանակ, հնարավորություն կտա հանրապետությունում ստեղծելու նյութատեխնիկական մատակարարման միասնական սիստեմ, ավելի ռացիոնալ ձևով լուծելու մատվաճառ կազմակերպությունների խոշորացման, միավորումների կազմակերպման, դրանց կազմակերպչական կառուցվածքի կատարելագործման, սպասարկման շրջանակների ճշտման և ֆունկցիաների սահմանազատման ու պարզեցման հարցերը։

Հավանաբար այդ ամենը նկատի առնելով, ՍՍՀՄ պետմատը դեռ 1966 թվականի փետրվարի 4-ին ՀՍՍՀ Մինիստրների սովետին ուղղված մի գրության մեջ հատուկ կերպով ընդգծում էր, որ «Նշված հարցի անհապաղ լուծումը կարագացնի անցումը՝ ՀՍՍՀ ժողովրդական տնտեսության նյութատեխնիկական մատակարարման միասնական սիստեմին»։

# ԽՈՐԴԵՆԻՆ ԱՐԺԵՔԱՎՈՐ ԿՈՒԼՏՈՒՐԱ Է

**Վ. Հ. ՂԱԶԱՐՅԱՆ**
ՀՍՍՀ սննդարդյունաբերության մինիստրի տեղակալ

*Հայաստանի կոմկուսի Կենտկոմը և Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետը, ելնելով ժողովրդատնտեսական զարգացման իններորդ հնգամյա պլանից, խնդիր են դրել հանրապետությունում զգալիորեն ավելացնել գյուղատնտեսության համար նոր, բայց զարգացման հեռանկար ունեցող խորդենու կանաչ զանգվածի եթերայուղի արտադրությունը։*

*Սովետական Միության մի շարք հանրապետություններում՝ Մոլդավիայում, Վրաստանում, Տաջիկստանում լայն թափով զարգանում են վարդենու, դաղձի, փաղանգամուշկի, խորդենու և այլ կուլտուրաների մշակումը, որոնցից ստանում են արժեքավոր բնական հոտավետ յուղեր։*

*Մեր հանրապետության երկու շրջանների՝ Հոկտեմբերյանի և Էջմիածնի կոլտնտեսություններում ու սովխոզներում մշակվում է եթերայուղատու վարդաբույր խորդենին, որի պահանջը տասն անգամ ավելի շատ է, քան եթերային մյուս յուղերինը։ Նրա դերը ժողովրդատնտեսական բնագավառում շատ մեծ է։ Պարֆյումերային արդյունաբերության մեջ դրանցից պատրաստում են օծանելիքներ, օդեկոլոններ։ Այն օգտագործվում է օճառի, սննդի, ծխախոտի, լիկյորի արտադրության մեջ, գործածվում բժշկության, կոսմետիկայի, սանիտարիայի ու հիգիենայի ասպարեզում և ախտահանիչ միջոց է։*

*Վարդաբույր խորդենու աճեցմամբ Սովետական Միությունում զբաղվում են 1924, իսկ Հայաստանում՝ 1926 թվականից։ 1938 թ. այդ կուլտուրան մշակել են Հոկտեմբերյանի և Էջմիածնի շրջանների մի քանի կոլտնտեսություններ՝ փոքր տարածության վրա։ Հետագայում խորդենու տարածությունների ընդարձակման շնորհիվ Հոկտեմբերյանի շրջանում կառուցվեց դրա կանաչ մասսայի մշակման գործարան, որի բազայի վրա կազմակերպվեց խորդենու սովխոզ-գործարանը։ 1940 թ. միայն Հոկտեմբերյանի շրջանի տնտեսություններում մշակված վարդաբույր խորդենու 410 հեկտարից ստացվել է 6.560 տոննա կանաչ զանգվածի համախառն բերք, իսկ դրանից արդյունահանվել է 5.780 կգ կամ յուրաքանչյուր տոննայից 881 գրամ յուղ։ 1972 թ. Հոկտեմբերյանի և Էջմիածնի շրջանների տնտեսություններում 1.406 հեկտար տարածության վրա մշակված կանաչ զանգվածի համախառն բերքը կազմել է 32.131 տոննա (հեկտարից միջինը 227 ցենտներ), որից ստացվել է 25.582 կգ եթերայուղ կամ մեկ տոննայից՝ 849 գր յուղ։ Այսպիսով, գրեթե երեք տասնամյակում*



*կանաչ զանգվածի բերքն աճել է 4,9, իսկ եթերայուղի արտադրանքը՝ 4,4 անգամ։ Իններորդ հնգամյակի պլանով 1975 թ. խորդենու կանաչ զանգվածի աճը 1970 թ. համեմատությամբ, կկազմի 85,7, իսկ եթերայուղի արտադրությանը՝ 73,3 տոկոս։*

*Սովետական Միությունում մշակվող եթերայուղի 50 տոկոսից ավելին բաժին է ընկնում մեր հանրապետությանը։ Խորդենու բազմաթիվ տեսակներից Հայաստանում մշակվում է միայն մեկը՝ վարդաբույր խորդենին, որը մի շարք դրական հատկանիշների (բարձր բերքատվություն, լավ թփակալման, արմատակալման) հետ միասին նաև ունի աչքի ընկնող թերություններ (յուղի ցածր ելք՝ 0,06—0,18 տոկոս, մենտոնի բարձր պարունակություն)։*

*Խորդենու հայրենիքը Հարավային Աֆրիկան է։ Այդ մշտադալար բազմամյա բույսը մեզ մոտ աճում է ջերմոցներում՝ կտրոն սածիլներով։ Ձմռանը ջերմոցում արմատակալելուց հետո ապրիլի երկրորդ տասնօրյակից փոխադրում են դաշտ և տնկում 60×60 սմ միջբուսային և միջշարային տարածությամբ, յուրաքանչյուր հեկտարի վրա տեղադրելով 28 հազար բույս։*

*ՀՍՍՀ սննդարդյունաբերության մինիստրությունը վերջին 5—10 տարիներին Հոկտեմբերյանի շրջանի խորդենու սովխոզ-գործարանում և Էջմիածնի շրջանի Խաթունարխի պահածոների գործարանում ջերմատներ է կառուցել (121 հազար քմ տարածությամբ)։ Այս տարի շահագործման կհանձնվի ևս 15 հազար քմ տարածություն։ Այդ հնարավորություն կընձեռի աճեցնելու 68 մլն խորդենու արմատակալ, որը կապահովի 2.000 հեկտար տարածություն։*

*Հոկտեմբերյանի շրջանի խորդենու սովխոզ-գործարանում, պահածոների և Էջմիածնի շրջանի Խաթունարխի պահածոների գործարաններում խորդենու կանաչ զանգվածի վերամշակության համար կառուցվել են գազիֆիկացված ջեռուցման սիստեմով արտադրամասեր։ Այս ձեռնարկություններում տեղադրված են խորդենու վերամշակման 50 ապարատներ, որոնք օրական կարող են մշակել 1.800 տոննա կանաչ զանգված, այսինքն այնքան, որքան նախատեսված է ընթացիկ հնգամյակի վերջին տարվա համար։ Սակայն նկատի ունենալով խորդենու կանաչ զանգվածի վերամշակման սեզոնի կարճեցման և այդ կուլտուրայի հետագա զարգացման կարևորությունը, ՀՍՍՀ սննդարդյունաբերության մինիստրությունը նախատեսել է մոտակա տարիներին կառուցել նոր ջերմոցներ և ավելացնել կանաչ զանգված մշակող ապարատների կարողությունները։ Միայն այս տարի կտեղադրվեն 8 ՆԴՏ 3Մ նոր ապարատներ, որից 5-ը՝ խորդենու սովխոզ-գործարանում, 2-ը՝ Հոկտեմբերյանի, իսկ մեկը՝ Խաթունարխի պահածոների գործարաններում։*

*Կուսակցությունը և կառավարությունը եթերայուղատու կուլտուրաների հետագա զարգացումն ապահովելու նպատակով մշակել են մի շարք միջոցներ, որոնք շահագրգռում են կոլտնտեսություններին ու սովխոզներին։ Խորդենու կանաչ զանգվածի 1 տոննայի արժեքը 170-ից հասել է 200 ռուբլու։ Փոփոխություններ են մտցվել նաև կանաչ զանգվածի հանձնման ժամկետի և դրանց գների միջև, որոնք շահագրգռում են տնտեսություններին՝ բարձր յուղայնությամբ հումք տալու գործարանին։ Օրինակ, Հոկտեմբերյանի շրջանի Նոր Արմավիր կոլտնտեսությունը 1972 թ. հեկտարից միջինը հավաքել է 269 ցենտներ, որի եկամուտը կազմել է 4.573 ռուբլի։ Իսկ, ընդհանուր առմամբ, խորդենուց ստացել է 228,6 հազար ռուբլի եկամուտ։ Նալբանդյանի անվան կոլտնտեսությունը հանձնված 2.558 տոննա կանաչ զանգվածի դիմաց ստացել է*

449 հազար, իսկ Շենավանի կոլտնտեսությունը՝ 1.469 տոննայի դիմաց՝ 258 հազար ռուբլի։

Սակայն ոչ բոլոր տնտեսություններն են, որ խորդենուց բարձրորակ բերք են ստանում. Վերջին տարիներին մեկ տոննա կանաչ զանգվածի մեջ չի ապահովվում եթերայուղի ելքի պլանավորված քանակը։ Պետական ստանդարտի համաձայն, վարդաբույր խորդենու մեկ տոննա կանաչ զանգվածից պետք է ստացվի ոչ պակաս մեկ կգ բարձրորակ եթերայուղ։ Սակայն 1966 թ. 1 տոննա կանաչ զանգվածից ստացվել է 850, 1967-ին՝ 620, 1968-ին՝ 740, 1969-ին՝ 770, 1970-ին՝ 950, 1971-ին՝ 910, իսկ 1972-ին՝ 849 գրամ։

Սա առաջին հերթին, հետևանք է այն բանի, որ չի պահպանվում բերքահավաքի համար սահմանված ժամկետը։ Փորձը ցույց է տալիս, որ խորդենու կանաչ զանգվածի մեջ եթերայուղի կուտակման ամենաբարձր տոկոսը լինում է սեպտեմբերի 16-ից հոկտեմբերի 15-ն ընկած ժամանակաշրջանում, իսկ տերևների մեջ եղած եթերայուղերի քանակը վեգետացիայի ընթացքում անընդհատ փոփոխվում է և ամենից շատ կուտակվում սեպտեմբեր ամսվա առաջին տասնօրյակում։ Հետևաբար, օգտակար կլինի կանաչ զանգվածի բերքահավաքը սկսել սեպտեմբերի 20-ից և ավարտել հոկտեմբերի 10—15-ին։ Սակայն, խորդենի մշակող տնտեսությունները բերքահավաքն սկսում են հոկտեմբերի 5-ից ոչ շուտ և ավարտում նոյեմբերի 1—5-ը։ Դրա հետևանքով յուղի զգալի կորուստներ է լինում։ Հաճախ հոկտեմբերի 20-ից հետո խորդենու կանաչ զանգվածը ցրտահարվում է և ստացված յուղից ձկան հոտ է գալիս, որը պիտանի չէ պարֆյումերային արդյունաբերության։ Այսպես, սեպտեմբերի վերջերին Հոկտեմբերյանի շրջանի տնտեսությունների հանձնած կանաչ զանգվածի յուրաքանչյուր 1 տոննայի մեջ եթերայուղի քանակը եղել է 1.200, հոկտեմբեր ամսին՝ 880, նոյեմբերին՝ 550 գրամ։ Էջմիածնի շրջանի կոլտնտեսություններինը՝ սեպտեմբերին՝ 1.300, հոկտեմբերին՝ 860 գրամ։ Խորդենու սովխոզ-գործարանինը՝ սեպտեմբերին՝ 1.270, հոկտեմբերին՝ 870, նոյեմբերին՝ 600 գրամ։

Խորդենու որակը պահպանելու համար անհրաժեշտ է կանաչ զանգվածը դաշտում կտրելուց հետո 2 ժամում հասցնել գործարան և անմիջապես վերամշակել։ Սակայն այդ պահանջը հաճախ տնտեսությունը և գործարանը չեն կատարում։

Կանաչ զանգվածի մեջ բարձր տոկոսն ապահովելու նպատակով հարկավոր է փոխադրումները և բեռնաթափումը կատարել գրաֆիկով սահմանված ժամերին։ Փորձերը ցույց են տվել, որ 1971 թ. սեպտեմբերի 26-ին զանգվածը կտրելիս 1 տոննայի մեջ եղել է 1.200 գրամ եթերայուղ, ութ ժամ պահելուց հետո մնացել է 950 գրամ, հոկտեմբերի 10-ին՝ 880 գրամ, վեց ժամ պահելուց հետո՝ 750 գրամ, հոկտեմբերի 18-ին՝ 700 գրամ, 12 ժամից հետո՝ 550 գրամ։

Մեր հանրապետությունում մշակվող վարդաբույր խորդենին բարդ հիբրիդ է և բազմանում է միայն վեգետատիվ ճանապարհով։ Չնայած այս կուլտուրան տասնյակ տարիներ մշակվում է հանրապետությունում, բայց մինչև այժմ այդ ուղղությամբ սելեկցիոն-սերմնաբուծական ոչ մի աշխատանք չի տարվել։ Բույսն աստիճանաբար այլասերվել է, սկսվել ճեղքավորման պրոցեսը և հիբրիդը կորցրել է իր կայուն սորտային հատկանիշները։ Այժմ կարելի է հանդիպել խորդենու ինչպես ցածր յուղատու, այնպես էլ բոլորովին անյուղ բույսերի։ Վերջին տարիներին երևան են եկել նաև խորդենու մենտոնային ձևեր, որոնց



ներսում սինթեզվող եթերայուղը բոլորովին պիտանի չէ պարֆյումերային և սննդարդյունաբերության համար։

Ամենամեծ վտանգն այն է, որ մենտոնային ձևերը մորֆոլոգիապես չեն տարբերվում սովորական հիբրիդներից, որի հետևանքով մոտակա տարիներին դրանք արագ կբազմանան և կաղտոտեն ցանքատարածությունները։ Սպասվող վտանգի դեմ պայքարի միակ միջոցը խորդենու սերմնաբուծության գործի արագ կազմակերպումն է։ Այս գործում մեծ անելիքներ ունի առաջին հերթին եթերայուղատու կուլտուրաների համամիութենական գիտահետազոտական ինստիտուտը։

Հայաստանի ԿԿ Կենտկոմը և Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետը 1971 թ. մայիսի 5-ի և Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետը 1971 թ. հուլիսի 27-ի որոշումներով նշեցին, որ պետք է ստեղծել խորդենու սորտային տնկանյութերի արտադրություն և պարտավորեցրին եթերայուղատու կուլտուրաների համամիութենական գիտահետազոտական ինստիտուտի հայկական փորձնական կայանին (Եղեգնուտի սովխոզ) 1971 թ. կազմակերպել խորդենու սորտային տնկանյութի արտադրություն այն հաշվով, որ առաջիկայում խորդենի մշակող տնտեսությունները լրիվ ապահովվեն սորտային և որակյալ տնկանյութերով։ Առաջադրվեց 1974—1976 թթ. յուրաքանչյուր տարի վերարտադրել 12 մլն խորդենու կտրոն։ Հոկտեմբերյանի շրջանի խորդենու սովխոզ-գործարանը 1975, 1976 թթ. տարեկան աճեցնելու և վաճառելու է 10 մլն հատ։

Այս առաջադրանքը կատարելու նպատակով ՀՍՍՀ սննդարդյունաբերության մինիստրությունը խորդենու սովխոզ-գործարանում խորդենու մասնագետներից ստեղծել է սելեկցիոներների խումբ։

Խորդենու յուղի պահանջը (տարեկան շուրջ 130 տոննա) այժմ բավարարվում է միայն 50—60 տոկոսով։ Ուստի, գյուղատնտեսության աշխատողների խնդիրն է՝ աճեցնել նոր, բարձր յուղատու խորդենու սորտեր, որոնք միաժամանակ պարֆյումերային արդյունաբերության համար կհանդիսանան բարձրորակ հումքի աղբյուր։

Խորդենու բարձր յուղատու սորտերը արտադրության մեջ ներդնելու նպատակով Հայկական ՍՍՀ գյուղատնտեսության մինիստրության Էջմիածնի երկրագործության գիտահետազոտական ինստիտուտի գիտնականները որոշակի աշխատանքներ են կատարել։ Ինստիտուտի փորձադաշտում ուսումնասիրված խորդենու մի շարք հիբրիդ սորտերից ընտրված են երկուսը՝ Ս—18—Կ—4 և Պ/2—Կ—37—2, որոնք իրենց բարձր յուղայնությամբ, որակով և հիվանդությունների նկատմամբ դիմացկունությամբ կարող են ո՛չ միայն փոխարինել վարդաբույր խորդենուն, այլև ապահովել 1 հեկտարից 3—3,5 անգամ ավելի եթերայուղի ստացումը, հետևապես նպաստել նաև տնտեսությունների եկամուտների ավելացմանը։

Նշված հիբրիդների լայն ներդրմամբ ու մշակմամբ կավելանա խորդենու յուղի արտադրությունը, կբարելավվի որակը, միաժամանակ հնարավորություն կընձեռվի խնայելու տնկվող տարածությունները, բանվորական ուժը, տնտեսելու փոխադրամիջոցները։ Ամենակարևորն այն է, որ գործարաններն ավելի քիչ կանաչ զանգված մշակելով շատ եթերայուղ կստանան։ Այստեղից էլ՝ մեծ չափով օժանդակ նյութերի և բանվորական ուժի խնայողություն, որը կնպաստի ձեռնարկությունների շահութաբերության ավելացմանը։

Հայկական ՍՍՀ գյուղատնտեսության և սննդարդյունաբերության մինիս-

*տրրությունները պետք է համատեղ բարելավեն և աճեցնեն խորդենու բարձր յուղատու հիբրիդ սորտերը և դրանք արմատավորեն Հոկտեմբերյանի ու Էջմիածնի շրջանների տնտեսություններում։ Խորդենու հետագա արագ զարգացման համար անհրաժեշտ է գիտության նվաճումներն ավելի լայնորեն ներդնել արտադրության մեջ, կոմպլեքսային մեքենայացման ենթարկել այդ կուլտուրայի մշակումը։ Եթե եթերայուղատու մի շարք կուլտուրաների, օրինակ, վարդենու, փաղանգամուշկի (լավանդա), դաղձի մշակության մի շարք պրոցեսներ (տնկում, փխրեցում, բերքահավաք, բարձում, ապարատներին հանձնում) մեքենայացված են, ապա այդ չի կարելի ասել խորդենու մշակության մասին, որտեղ կտրոնների մթերումը, ջերմոցներում տնկումը և ամբողջ մշակումը կատարվում են ձեռքով։ Ձեռքով են կատարվում նաև կտրոնների տընկման, փխրեցման, բերքահավաքի, գործարանում կանաչ զանգվածի վերամշակման պրոցեսները։ Չնայած խորդենու բերքահավաքի և փխրեցման աշխատանքների մեքենայացման նպատակով ինչպես հանրապետությունում, նույնպես և Սիմֆերոպոլի գիտահետազոտական ինստիտուտում որոշ քայլեր կատարվել են, սակայն մինչև հիմա արդյունքն անբավարար է։ Խորդենու բերքահավաք մեքենայի և եթերայուղային գործարանի ՆԴՏ—3Մ ապարատի կատարելագործման համար սննդարդյունաբերության մինիստրությունն արդեն պայմանավորվել է Սիմֆերոպոլի գիտահետազոտական ինստիտուտի հետ։*

*Այս գործի հետագա առաջընթացը պահանջում է մտահոգվել խորդենու կանաչ զանգվածի մշակող ձեռնարկությունների ընդարձակման, դրանց արտադրապրոցեսների մեքենայացման և տեխնոլոգիական ընթացքի կատարելագործման հարցերի լուծմամբ։ Գործարաններն ապահովել մշտական կադրերով, որպեսզի վերամշակման ժամանակաշրջանը տևի 15—20 օր 30-ի փոխարեն։ Դրա համար անհրաժեշտ է ավելացնել ապարատների քանակը։*

*Զգձգվում են բնակելի շենքերի, դպրոցների ու կուլտ-կենցաղային սպասարկման օբյեկտների կառուցումը։ Անցյալ տարի Հոկտեմբերյանի խորդենու սովխոզ-գործարանը 500 քմ փոխարեն շահագործման հանձնեց 360 քմ բնակելի տարածություն։ Հաճախ ընդհատումներով են մատակարարվում էլեկտրաէներգիան, որի հետևանքով մեծ վնասներ են կրում տնտեսությունները։ 1972 թ. ձմռանը էլեկտրաէներգիայի խափանման պատճառով Էջմիածնի շրջանի Խաթունարխի պահածոների ջերմատներում ցրտահարվեցին խորդենու մոտ 3 մլն արմատակալներ։*

*Ինչպես ՀՍՍՀ սննդարդյունաբերության մինիստրությունը, այնպես էլ շրջանային կուսակցական և սովետական օրգանները պետք է մտահոգվեն, որպեսզի խորդենու վերամշակող ձեռնարկությունները նորմալ գործեն։*

*Հանրապետության խորդենու գործարաններն իններորդ հնգամյակի երրորդ վճռական տարում պետք է աճեցնեն 36 հազար տոննա խորդենու կանաչ զանգված և պետությանը հանձնեն 30.000 կգ բարձրորակ հոտավետ եթերայուղ։ Բոլոր նախապայմանները կան ժամկետից շուտ ապահովելու հնգամյա պլանով նախատեսված խորդենու կանաչ զանգվածի և եթերայուղի ստացումը։*

---

# ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԻՆՏԵՆՍԻՎԱՑՄԱՆ ՀԱՐՑԻ ՇՈՒՐՋ

**ՍԻՐՈՒՇ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ**

*ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1971—1975 թթ. հնգամյա պլանի՝ ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներում խնդիր է դրված՝ «Նախորդ հնգամյակի համեմատությամբ գյուղատնտեսական մթերքների արտադրության տարեկան միջին ծավալը մեծացնել 20—22 տոկոսով։ ...Այդ խնդրի կատարման վճռական պայմանը գյուղատնտեսության նյութատեխնիկական բազայի ըստ ամենայնի ամրապնդումն է հողագործության և անասնապահության քիմիացման, կոմպլեքսային մեքենայացման, հողերի լայն մելիորացման միջոցով գյուղատնտեսությունը ինտենսիվացնելու կուրսի հետևողական իրագործումը» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 345)։*

*Գյուղատնտեսության արտադրության ինտենսիվացումը միավոր հողատարածության վրա աշխատանքի և արտադրամիջոցների լրացուցիչ ներդրումն է՝ հավելյալ արտադրանք ստանալու նպատակով։ Գյուղատնտեսության նյութատեխնիկական բազայի փոփոխությունները մեծ ազդեցություն են գործում նաև կենդանի աշխատանքի օգտագործման վրա։ Գիտության զարգացումը և տեխնիկայի առաջընթացն անհրաժեշտ նախադրյալներ են ստեղծում աշխատանքի թեթևացման, արտադրողականության աճի, ինչպես նաև աշխատողների որակավորման բարձրացման համար։*

*Տեխնիկական պրոգրեսի աճի և աշխատանքի կազմակերպման ձևի կատարելագործմամբ բարձրանում է աշխատանքի արտադրողականությունը, որի շնորհիվ կրճատվում են միավոր աշխատանքի կատարման ծախսումները։ Մյուս կողմից՝ ինտենսիվացման աճն ավելացնում է աշխատանքի ծավալը, որը և լրացուցիչ ծախսումներ է պահանջում։*

*Աշխատանքային ռեսուրսների ռացիոնալ օգտագործման բնագավառում գյուղատնտեսության արտադրության ինտենսիվացումն ունի վճռական նշանակություն, հատկապես, մերձքաղաքային տնտեսություններում, որտեղ բնակչությունը անհամեմատ խիտ է, իսկ ցանքատարածությունների ընդարձակման հնարավորությունները՝ սահմանափակ։ Մերձքաղաքային տնտեսություններում այս երևույթը պայմանավորված է կաթի, բանջարեղենի, պտղի, խաղողի և այլ ցածր փոխադրունակ մթերքների արտադրության մասնագիտացմամբ։ Վերջինս իրականանում է էներգազինվածության և մեքենաների աճի, ջերմոցների ու ջերմատների, անասնագոմերի շինարարության, ոռոգման սիստեմի և պարարտանյութերի օգտագործման ավելացման, կենդանիների ցեղերի ու կուլտուրաների սորտային կազմի բարելավման շնորհիվ։*

Ներկայումս, հանրապետության կոլտնտեսությունների գերակշռող մասը, արտադրության լավագույն տեխնիկազինվածության և բարձրապրանքայնության շնորհիվ միջոցների կուտակման լայն հնարավորություններ ունի։ Այս հանգամանքը նորանոր հիմքեր է ստեղծում գյուղատնտեսության արտադրության հետագա ինտենսիվացման համար։

Բանուժի զբաղվածության բարձրացման և արդյունավետ օգտագործման համար գյուղատնտեսության արտադրության ինտենսիվացումը կարևոր պայման է։ Այդ կարևոր գործոններից մեկի՝ գյուղատնտեսական ֆոնդերի և դրա հետ կապված աշխատանքային ռեսուրսների օգտագործման նպատակով կատարած ուսումնասիրությունից պարզվում է, որ այն տնտեսություններում, որտեղ բարձր է ֆոնդաապահովվածությունը և ֆոնդազինվածությունը, այնտեղ կոլտնտեսականի տարեկան զբաղվածությունն ավելի բարձր է։

Արարատյան հարթավայրի և նրա նախալեռնային գոտու կոլտնտեսությունների խմբավորումները, ըստ 100 հեկտար գյուղատնտեսական պիտանի հողատարածությանն ընկնող արտադրաֆոնդերի արժեքի (ֆոնդաապահովվածության), ցույց տվեցին, որ երկու գոտիներում էլ ֆոնդաապահովվածության և ֆոնդազինվածության աճն ուղեկցվում է աշխատունակ կոլտնտեսականի տարեկան զբաղվածության և աշխատանքի արտադրողականության բարձրացմամբ։ Այսպես, Արարատյան հարթավայրի կոլտնտեսությունները խմբավորելիս առաջին և վերջին խմբերի միջև ֆոնդաապահովվածության աճը (162,4 տոկոս) ուղեկցվեց, համապատասխան խմբերի համեմատությամբ, աշխատունակի տարեկան զբաղվածության (19,2 տոկոս) և աշխատանքի տարեկան ու օրական արտադրողականության (45,0 և 21,6 տոկոս) բարձրացմամբ։ Նախալեռնային գոտին խմբավորելիս ծայրային խմբերի միջև ֆոնդաապահովվածության աճը կազմել է 118, աշխատունակի տարեկան զբաղվածությունը՝ 11, իսկ աշխատանքի տարեկան և օրական արտադրողականությունը՝ 43,5 և 31,5 տոկոս։

Այսպիսով, միավոր հողատարածության և մեկ աշխատողի հաշվով արտադրաֆոնդերի ավելացմամբ (մինչև որոշակի սահմանը) ռացիոնալ է օգտագործվում բանվորական ուժը, անգամ բնակչության այնպիսի բարձր խտության պայմաններում, ինչպիսին Արարատյան հարթավայրի գոտին է։

Ինտենսիվացման դերը բանուժի զբաղվածության բարձրացման խնդրում ի հայտ է գալիս նրանով, որ միավոր հողատարածության վրա ավելանում է արտադրության ծավալը, որը մեծացնում է ինչպես առարկայացած, այնպես էլ կենդանի աշխատանքի նկատմամբ առաջացած պահանջը։ Նույն խմբավորումների արդյունքներից պարզվեց, որ Արարատյան հարթավայրի կոլտնտեսությունների I խմբում, որտեղ ֆոնդաապահովվածությունն ամենացածրն է, մեկ հեկտար վարելահողի վրա կատարվող աշխատանքային ծախսումները կազմում են 201 մարդ-օր։ Ֆոնդերի աճին զուգընթաց ավելանում են ծախսումները (մեկ հեկտարի հաշվով) և III խմբում, որտեղ ֆոնդաապահովվածությունն ամենաբարձրն է. այն կազմում է 294 մարդ-օր կամ, I-ի համեմատությամբ, ավելանում է 41,3 տոկոսով։ Նախալեռնային գոտում ևս նույն պատկերը կրկնվում է. ծայրային խմբերում ֆոնդաապահովվածության աճը ուղեկցվում է մեկ հեկտար վարելահողի վրա ծախսումների ավելացմամբ (2,2 անգամ)։

Գյուղատնտեսության բնագավառում, ի հակադրություն արդյունաբերու-



թյան, ֆոնդազինվածության և աշխատանքի արտադրողականության միջև ուղղակի կապը միշտ չէ, որ պահպանվում է. երբեմն այդ համաչափությունը խախտվում է։ Սա բացատրվում է նրանով, որ աշխատանքի արտադրողականության կարևորագույն արդյունքային ցուցանիշը, ինչպիսին է արտադրանքի ելքը, սերտ կապված է նաև հողի տնտեսական բերրիության հետ։ Որքան էլ բարձր լինի ֆոնդազինվածությունը, ցածր բերքի դեպքում այն չի ուղեկցվի արտադրողականության աճով։

Արտադրաֆոնդերի արդյունավետության (ֆոնդահատույց) մակարդակի վրա ազդում են նաև հիմնական ֆոնդերի կառուցվածքը, հիմնական և շրջանառու ֆոնդերի հարաբերակցությունը, մեքենատրակտորային պարկի օգտագործումը, տնտեսությունների մասնագիտացման ուղղությունը և այլն։

Ինտենսիվացման կարևորագույն գործոններից մեկը արտադրության ոլորտում աշխատատար պրոցեսների մեքենայացման մակարդակի բարձրացումն է։ Արտադրության մեքենայացումն աշխատանքային ռեսուրսների հավասարաչափ և ռացիոնալ օգտագործման վրա երկկողմանի ազդեցություն է գործում։ Այն մի կողմից՝ կրճատում է բանվորական ժամանակաշրջանը, որով և մեծանում է բուսաբուծության դադարի շրջանը, մյուս կողմից՝ աշխատատար պրոցեսների մեքենայացումը կտրում է գյուղատնտեսական կուլտուրաների մշակության և բերքահավաքի շրջանում առաջացած «պիկը» և մեղմացնում աշխատանքի սեզոնայնությունը։

Հանրապետության կոլտնտեսությունները մեծ հաջողությունների են հասել գյուղատնտեսության արտադրության մեքենայացման ասպարեզում։ Վերջին 10 տարում աճել է կոլտնտեսությունների մեքենատրակտորային պարկի հզորությունը։ Այսպես, 1970 թ., 1960 թ. համեմատությամբ, հանրապետության կոլտնտեսություններում պայմանական տրակտորների թիվն ավելացել է 1,7, մեքենայացված աշխատանքի ծավալը (ըստ մեկ հեկտար ցանքի հաշվով կատարված փափուկ վարի)՝ 1,2 անգամ։ Այսուհանդերձ, գյուղատնտեսության արտադրության շատ աշխատատար պրոցեսներ, որոնք աշխատուժի մեծ պահանջ են ներկայացնում, դեռևս մեքենայացված չեն։

Աբովյանի և Հոկտեմբերյանի շրջաններում կուլտուրաների մշակության վրա կատարվող աշխատանքային ծախսումների ուսումնասիրությունից պարզվում է, որ ծխախոտի սածիլման, քաղհանի և բերքահավաքի աշխատանքներին ընկնում է ընդհանուր ծախսումների մոտ 60, բանջարանոցային կուլտուրաների սածիլմանը, քաղհանին և բերքահավաքին՝ 60—80, խորդենու սածիլմանը, սնուցմանը և քաղհանին՝ 63, խաղողի այգեբացին, այգեթաղին, էտին, միջվաղային փխրեցմանը, հենակավորմանը, բերքահավաքին՝ 70 տոկոսը։

Աշխատատար պրոցեսների մեքենայացման ցածր մակարդակը, վերը նշված կուլտուրաների մշակման գործում, բացատրվում է ոչ համապատասխան մեքենաների սիստեմի բացակայությամբ։ Շատ դեպքերում, ինչպես, օրինակ, խաղողի այգիների թմբային սիստեմի պատճառով, այգեբացի, այգեթաղի, միջվաղային մշակության աշխատանքների 35 տոկոսն է մեքենայացված։ Բանջարանոցային կուլտուրաների քառակուսի բնային ցանքի դեպքում հնարավոր է մեքենայացնել ցանքի և սածիլման աշխատանքները։ Փորձարկվել է հանրապետության ծխախոտագործության որոշ շրջաններում նաև ծխախոտի մեքենայացված բերքահավաքը, որը ծախսումները կրճատում է 14—20 տոկոսով։

Հասկանալի է, որ վերը թվարկված պրոցեսների մեքենայացմամբ նկատելի արդյունք կստացվի աշխատանքները ժամանակին և որակով կատարելու, ինչպես նաև բանվորական ուժը խնայելու տեսակետից։

Գյուղատնտեսության ինտենսիվացումը պայմանավորող կարևոր գործոններից է նաև քիմիայի լայն կիրառումը։ Տարեցտարի գյուղատնտեսության արտադրության մեջ աճում է հանքային պարարտանյութերի ներմուծվող քանակը։ 1971 թ., 1966—1970 թթ. միջինի համեմատությամբ, հանրապետության կոլտնտեսություններում 100 հեկտար հողատարածության հաշվով օգտագործվող հանքային պարարտանյութերի քանակը (ազդող նյութերի հաշվով) աճել է 50,2 տոկոսով։

Հանքային պարարտանյութերի օգտագործումը կոլտնտեսություններում

| | 100 հեկտար գյուղատնտեսական օգտագործվող հողատարածությանն ընկնող հանքային պարարտանյութերի քանակը (ցենտներ) | | | | 1971 թ. 1966—1970 թթ. միջինի նկատմամբ (տոկոսներով) |
|---|---|---|---|---|---|
| | 1966 թ. | 1970 թ. | 1966—1970 թթ. միջինը | 1971 թ. | |
| Հոկտեմբերյանի շրջան | 83,5 | 119,0 | 101,8 | 150,9 | 148,2 |
| Աբովյանի » | 18,5 | 26,4 | 21,0 | 27,5 | 130,9 |
| Հանրապետությունում | 23,4 | 34,0 | 27,3 | 41,0 | 150,2 |

Հանքային պարարտանյութերի օգտագործման դինամիկան ցույց է տալիս, որ (ինչպես միջինը հանրապետությունում, այնպես էլ ուսումնասիրվող շրջաններում) այն տարեցտարի աճելու տենդենց ունի։ Այսպես, 1966 թ. համեմատությամբ, 1971 թ. պարարտանյութերի օգտագործման չափը (100 հեկտարի հաշվով) աճել է հանրապետությունում 75,2, Հոկտեմբերյանում՝ 80,7, Աբովյանում՝ 48,6 տոկոսով։

Հանքային պարարտանյութերի օգտագործման խնդրում հանրապետության որոշ կոլտնտեսություններ պասիվ են։ Երբեմն խախտում են այս կամ այն կուլտուրայի համար նախատեսված պարարտանյութերի օգտագործման չափը, որի հետևանքով միայն 1971 թ. կոլտնտեսություններում չի օգտագործվել 44,9 հազար ցենտներ հանքային պարարտանյութ, այդ թվում՝ Հոկտեմբերյանում՝ 8.611, իսկ Աբովյանում՝ 841 ցենտներ։ Վերջին տարիներին գյուղատնտեսության արտադրության մեջ լայն չափով կիրառվում են քիմիական որոշ պրեպարատներ, որոնք նպաստում են բույսերի աճին ու հասունացմանը։

Մեր հանրապետությունում փորձարկվել են հերբիցիդներից՝ «Սիմազինը» եգիպտացորենի, «Մանուրինը» կարտոֆիլի, «Կրոտիլինը» հացահատիկի վրա. արդյունքը բոլոր դեպքերում եղել է այն, որ 90—100 տոկոսով կրճատվել են մոլախոտերի դեմ տարվող պայքարի աշխատանքները։ Հերբիցիդների կիրառմանը ևս մեր կոլտնտեսությունները դեռևս անհրաժեշտ ուշադրություն չեն հատկացնում։

Հասկանալի է, որ քաղհանի պրոցեսի կրճատմամբ կամ լրիվ վերացմամբ ո՛չ միայն կխնայվի բանվորական ուժը, այլև կթուլացվի աշխատանքային լարվածությունը։ Հետևաբար, ինտենսիվացման գործոնների համատեղ օգտագործման և ճիշտ զուգակցման պայմաններում հնարավոր է ապահովել կոլտնտեսությունների ինչպես նյութական միջոցների, այնպես էլ աշխատանքային ռեսուրսների առավել արդյունավետ օգտագործումը։



# ՀԱԿԱԿՈՄՈՒՆԻԶՄԻ ՋԱՏԱԳՈՎՆԵՐԸ ՋՐՊԱՐՏՈՒՄ ԵՆ

Լ. Մ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ, Ս. Գ. ՍԱՂԱԹԵԼՅԱՆ

Մեր երկրի ժողովուրդները, առաջավոր մարդկությունը լայնորեն ու հանդիսավոր նշեցին նշանակալից տարեթիվը՝ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կազմավորման 50-ամյակը։ «Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների 50-ամյակի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի զեկուցման մեջ տրված է սովետական սոցիալիստական բազմազգ պետության պատմական զարգացման, նրա ավելի քան կեսդարյա նվաճումների բազմակողմանի ու խոր վերլուծությունը։ Զեկուցումը համակողմանիորեն ուրվագծում է կոմունիստական շինարարության հոյակապ խնդիրներն ու հեռանկարները։ Այդ փաստաթուղթը բնութագրում է միջազգային արդի իրադրությունը, ՍՄԿԿ XXIV համագումարի մշակած խաղաղության ծրագրի կենսագործման նպատակով մեր կուսակցության նպատակասլաց, ակտիվ գործունեությունը։

Սովետական հանրապետությունների պետական միավորումը եղավ այն վճռական գործոններից մեկը, որը բարենպաստ պայմաններ ապահովեց սոցիալիստական հիմունքներով հասարակության վերակառուցման, բոլոր սովետական հանրապետությունների էկոնոմիկայի ու կուլտուրայի վերելքի, սովետական պետության միջազգային դիրքերի ամրապնդման համար։

«Ամփոփելով անցած կես դարի հերոսական մեծագործությունների արդյունքները,— նշեց Լ. Ի. Բրեժնևը,— մենք բոլոր հիմքերն ունենք ասելու, որ ազգային հարցը այն տեսքով, ինչպես նա մեզ հասավ անցյալից, լուծված է լիակատար կերպով, լուծված է վերջնականապես և անդառնալիորեն» (Լ. Ի. Բրեժնև, Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության հիսնամյակի մասին, Երևան, 1973, էջ 16)։

Կոմունիստական կուսակցության և սովետական կառավարության լենինյան ազգային քաղաքականության հետևողական իրականացման շնորհիվ նախկինում ետ մնացող ազգերն ու ազգությունները, առավել զարգացած ազգերի և, ամենից առաջ, ռուս մեծ ժողովրդի անշահախնդիր օգնությամբ ստեղծեցին իրենց բազմաճյուղ էկոնոմիկան, գիտությունն ու կուլտուրան։

ՍՍՀՄ-ում իրականացվել է մեծ Լենինի այն կանխատեսությունը, որ սոցիալիզմը «կերտում է մարդկային համակեցության նոր, ամենաբարձր ձևերը»։ Մեզ մոտ հաստատվել, ռեալ իրականություն է դարձել մարդկանց նոր պատմական հանրությունը՝ սովետական ժողովուրդը։ Սովետական բոլոր ազգերի ու ժողովուրդների միավորողը և ղեկավարը ՍՄԿԿ-ն է՝ ինտերնացիոնալիստ լենինյանների կուսակցությունը, որն այդ կոչմանն է արժանացել իր անխոնջ գործունեությամբ՝ ինչպես երկրի ներսում, այնպես էլ միջազգային ասպարեզում։

ՍՍՀ Միության հիսնամյակը հանդիսացավ միջազգային հսկայական նշանակություն ունեցող մի իրադարձություն։ Եվ պատահական չէ, որ մեր Միության ոսկե հոբելյանի տոնակատարությանը մասնակցեցին արտասահմանյան 115 պատվիրակություններ։ Դա մի անգամ ևս ցույց տվեց, թե աշխարհում ինչպիսի հսկայական հեղինակություն և հարգանք են վայելում ՍՄԿԿ-ն ու սովետական պետությունը, որքան մեծ է ՍՍՀ Միության կազմավորման համար հիմք ծառայող գաղափարների ազդեցությունը։

* * *

Պատմական այդ իրադարձության նկատմամբ անտարբեր չմնացին նաև մեր հակառակորդները։ Իրենց պրոպագանդայի բոլոր միջոցներով նրանք ուժեղացրին գաղափարական դիվերսիաները, աղավաղեցին և այսօր էլ ջանում են վարկաբեկել ազգային հարցի մարքս-լենինյան տեսության դրույթները, ճըգնում նսեմացնել ՍՄԿԿ լենինյան ազգային քաղաքականության հսկայական նվաճումները, բացառել սովետական փորձի միջազգային հուժկու ներգործությունը և խափանել մեր բազմազգ պետության հեղինակության աճը։ Ընդ որում, նրանք շարունակում են թմբկահարել վաղուց հերքված այն կեղծ թեզը, թե, իբր, երկրի ազգային շրջաններում սովետական իշխանության հաստատումն ու միասնական բազմազգ պետության մեջ նրանց միավորումը՝ սովետական կառավարությունն իրականացրել է բռնությամբ։

Այդ հարցերի շուրջ տարիներ շարունակ հանդես են գալիս Ռ. Փայպսը, Ֆ. Բարգհուրին և ԱՄՆ-ի ուրիշ «սովետաբաններ»։

Ազգային ծայրամասերում և, հատկապես, Հայաստանում սովետական իշխանության հաստատման իրողությունը երկար տարիներ խեղաթյուրում են դաշնակ գրչակները, որոնց զրպարտչական հոդվածները տեղ են գտնում նրանց մամուլում։

Հակակոմունիզմի գաղափարախոսները, միաժամանակ, փորձում են մասսաների ուշադրությունը շեղել կապիտալիստական երկրներում ազգային ճընշման ուժեղացումից և ազգամիջյան հակամարտությունների սրումից։ Նրանք ազգային հողի վրա ձգտում են տարանջատել աշխատավորների տարբեր ջոկատները, ազգային երևույթները կտրել սոցիալական երևույթներից։ Այդ միտումով նրանք հորինում են ազգային հարցի հակագիտական այլևայլ կոնցեպցիաներ, դիմում են զանազան «տեսական» և փաստական կեղծարարությունների։ Օբյեկտիվորեն հակակոմունիզմի դաշնակիցն է ժամանակակից օպորտունիզմը, աջ և «ձախ» ռևիզիոնիստները, որոնք նույնպես զրպարտում են ՍՄԿԿ-ի և սովետական պետության ազգային քաղաքականությունը։

ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակի նախապատրաստության մասին ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ նշված է, որ «ազգային հարցը սոցիալիզմի ու կապիտալիզմի միջև մղվող պայքարի, բուրժուական, ռևիզիոնիստական գաղափարախոսության դեմ մարքսիզմ-լենինիզմի պայքարի սուր տեղամասերից մեկն է...

Անհրաժեշտ է վճռականորեն մերկացնել հակակոմունիզմի, աջ և «ձախ» ռևիզիոնիզմի, նացիոնալիզմի և շովինիզմի գաղափարախոսներին» (Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության 50-ամյակի նախապատրաստության մասին։ ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը, Երևան, 1972, էջ 30—31)։

* * *

Չկարողանալով ժխտել տնտեսության, գիտության ու կուլտուրայի ասպարեզներում սովետական բոլոր ժողովուրդների ձեռք բերած մեծ հաջողությունները, բուրժուական գաղափարախոսները անվերջ բարբաջում են սուվերենության հարցի շուրջը։ Նրանք իրենց պրոպագանդայի արխիվներից գըտնում-հանում են հեքիաթներն այն մասին, թե, իբր, սովետական հանրապետությունները զրկված են ինքնուրույնությունից, չունեն սուվերենություն։ Սակայն, մինչև այդ հարցին անցնելը, նշենք, որ սուվերենությունը չի կարելի հանգեցնել լոկ մի շարք իրավունքների և իրավասությունների առկայությանը։ Ինչպես երևում է, բուրժուական գաղափարախոսները չեն կարողանում հասկանալ, որ «սուվերենությունն» ու «իրավասությունը» նույն բանը չեն։

Հանրահայտ է, որ սուվերենությունն ամբողջությամբ վերցրած արտահայտում է պետական իշխանության գլխավոր դիրքը երկրի ներսում և անկախությունը՝ դրսում։ Սուվերենության մարքս-լենինյան հասկացությունը կապված է նաև պետության դասակարգային էության բացահայտման, նրա կառուցման ու կառավարման պատմական կոնկրետ ձևի հետ։ Միայն այդ դիրքերից ելնելով կարելի է օբյեկտիվորեն բացահայտել իսկական սուվերենության բուն էությունը։

Կապիտալիզմի պայմաններում ազգային սուվերենությունը մշտապես խախտվում է տիրող դասակարգի ու նրա շահերն արտահայտող բուրժուական պետության մեծապետական շովինիստական և նացիոնալիստական քաղաքականությամբ։ Իսկ սոցիալիզմի պայմաններում աշխատավորների իշխանությունն ու ազգերի իրավահավասարությունը, ազգային սուվերենությունն ու բազմազգ սոցիալիստական պետության սուվերենությունն անքակտելի հասկացություններ են։ Դրանք կազմում են միևնույն պատմական երևույթի՝ սոցիալիստական հասարակական-քաղաքական կարգի երկու կողմերը։

Սովետական յուրաքանչյուր հանրապետության սուվերենության էությունն այն է, որ նա կարող է մյուս ժողովուրդների հետ կամավոր կերպով և հավասար իրավունքներով մտնել պետական միության մեջ, ունի ինքնորոշման և ազատ կերպով ՍՍՀ Միությունից դուրս գալու իրավունք, ունի իր սահմանադրությունը, ազգային պետականության կամ ազգային-վարչական ինքնավարության ձևերը, քաղաքացիությունը հաստատելու և ներքին ու արտաքին կյանքի մյուս հարցերը լուծելու իրավունք։

Մտնելով միասնական ֆեդերատիվ սոցիալիստական պետության կազմի մեջ, սովետական հանրապետությունները բնականորեն իրենց սուվերեն իրավունքների մի մասը զիջեցին համամիութենական կազմակերպություններին։ Բայց դա բնավ չի նշանակում, թե նրանք կորցրեցին իրենց սուվերենությունը, քանի որ սովետական բազմազգ պետության կառավարման կազմակերպման ամբողջ գործը հիմնվում է նրա կազմի մեջ մտնող բոլոր հանրապետություն-

ների կամավորության, լիիրավ հավասարության, դեմոկրատական ցենտրալիզմի և դեմոկրատական մյուս սկզբունքների վրա։

Կառավարման գործնական կազմակերպման տեսակետից Վ. Ի. Լենինը հատուկ նշանակություն էր տալիս դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքին։ Նա ընդգծում էր, որ առանց այդ սկզբունքի անհնար է ապահովել ազգությունների սուվերենությունը, իրականում հաշվի առնել ազգային առանձնահատկություններն ու գիտականորեն կառավարել ազգային հարաբերությունները։ Վ. Ի. Լենինն ապացուցեց այն պնդումների անհիմն լինելը, թե, իբր, ցենտրալիզմը հակասում է ինքնավարությանն ու ֆեդերացիային։ Նա գիտականորեն հիմնավորեց այն դրույթը, որ, իրականում, ֆեդերացիան և ավտոնոմիան, թեպետ կառուցվում են ազգային առանձնահատկությունները հաշվի առնելու և պետական որոշակի առանձնացվածության հիման վրա, բոլորովին չեն հակասում դեմոկրատական ցենտրալիզմին։ Դեմոկրատական ցենտրալիզմը սոցիալիստական պետության ու սոցիալիստական տիպի ֆեդերացիայի կառավարումը կազմակերպելու նոր սկզբունքն է։ Բուրժուական ֆեդերացիայի բյուրոկրատական ցենտրալիզմի փոխարեն, սոցիալիզմը հաստատում է սոցիալիստական ֆեդերացիայի դեմոկրատական ցենտրալիզմը։

Կոնկրետ ինչպե՞ս է դրսևորվում սովետական ֆեդերացիայի դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքը։ Սովետական սոցիալիստական ֆեդերացիայում, ամենից առաջ, պետական բոլոր գործերի կենտրոնացված ղեկավարությունը և տեղական կազմակերպությունների ենթարկումը կենտրոնին զուգակցվում է իշխանության օրգանների ընտրողականության ու դրանց ժողովրդի առջև հաշվետու լինելու, կառավարման գործին ժողովրդական լայն զանգվածներին մասնակից դարձնելու հետ։

Այդ բանը կոնկրետ արտահայտվում է ՍՍՀ Միության, միութենական և ինքնավար հանրապետությունների իշխանության ու կառավարման օրգանների սիստեմի կառուցման մեջ։ Սովետական Ֆեդերացիայի յուրաքանչյուր օղակ ունի իշխանության և տնտեսության, գիտության ու կուլտուրայի տարբեր բնագավառների կառավարման իր ներկայացուցչական օրգանները, իսկ միութենական հանրապետություններն ունեն նաև արտաքին հարաբերությունների իրենց օրգանները։ Ըստ որում, այդ օրգանները կենտրոնական իշխանության տեղական ներկայացուցիչները չեն, ինչպես դա փորձում է ներկայացնել բուրժուական պրոպագանդան։ Հանրահայտ է, որ իշխանության ու կառավարման հանրապետական օրգաններն ունեն անհրաժեշտ ինքնուրույնություն և իրավունքներ, որոնք լիովին ապահովում են գործերի կառավարումը տեղերում՝ կոնկրետ պայմաններին և ազգային առանձնահատկություններին համապատասխան։ Դրանով իսկ իրագործվում է ՍՍՀՄ շահերի զուգակցումը յուրաքանչյուր հանրապետության շահերին։

Այնուհետև, շահերի զուգակցումը և սովետական ֆեդերացիայի դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքը դրսևորվում են նաև այն բանում, որ միութենական հանրապետություններն ու ֆեդերացիայի մյուս սուբյեկտներն իրենց ներկայացուցչությունն ունեն երկրի իշխանության ու կառավարման բարձրագույն օրգաններում։

Ազգային հարցի վերաբերյալ կուսակցության XII համագումարի ընդունած բանաձևում նշվել է, որ «Միության բարձրագույն օրգանները պետք է այնպես կառուցվեն, որ նրանք լիովին արտացոլեն ոչ միայն ՍՍՀՄ բոլոր



ազգությունների ընդհանուր կարիքներն ու պահանջները, այլև առանձին ազգությունների հատուկ կարիքներն ու պահանջները։ Ուստի, Միության գոյություն ունեցող կենտրոնական օրգանների հետ միասին, որոնք ամբողջ Միության աշխատավոր մասսաների ներկայացուցչությունն են, անկախ ազգությունից, պետք է ստեղծվի ազգությունների ներկայացուցչության հատուկ օրգան՝ հավասարության հիմունքներով» (ՍՄԿԿ-ն համագումարների բանաձևերում ու որոշումներում, 1-ին մաս, 1954 թ., էջ 914—915)։ Սրան համապատասխան, ՍՍՀՄ առաջին սահմանադրության մեջ նշվեց, որ ՍՍՀ Միության կենտգործկոմը պետք է կազմված լինի 2 պալատից՝ Միության սովետից և ազգությունների սովետից։ Նման բան չէր տեսել բուրժուական սահմանադրության ամբողջ պատմությունը։

ՍՍՀՄ Գերագույն սովետի երկու պալատներն էլ՝ Միության սովետն ու Ազգությունների սովետը, օժտված են հավասար իրավունքներով։ Դա արտացոլվում է նրանց ընդունած որոշումներում, ժողովրդատնտեսական պլաններում, բյուջեում և երկրի կյանքի մյուս կարևոր հարցերի վերաբերյալ ընդունված որոշումներում։ Դա ՍՍՀ Միության ազգային պետական կազմավորումների սուվերենության կարևոր երաշխիքներից մեկն է։

Միութենական հանրապետությունների սուվերենությունն ապահովվում է նաև համամիութենական մյուս օրգանների կառուցվածքում։ Այսպես, օրինակ ՍՍՀ Միության Գերագույն սովետի նախագահության կազմի մեջ յուրաքանչյուր միութենական հանրապետությունից ընտրվում են նախագահի տեղակալներ, ըստ իրենց պաշտոնի ՍՍՀՄ կառավարության կազմի մեջ մտնում են միութենական հանրապետությունների մինիստրների սովետների նախագահները, ՍՍՀՄ Գերագույն դատարանի կազմի մեջ՝ միութենական հանրապետությունների գերագույն դատարանների նախագահները։ Բացի այդ, միութենական հանրապետությունների ներկայացուցիչները մտնում են ՍՍՀ Միության մինիստրությունների ու պետական կոմիտեների կազմի մեջ։ Տնտեսական ու սոցիալ-կուլտուրական խնդիրների ծավալի աճի համեմատ ընդլայնվում ու կատարելագործվում են և այդ ներկայացուցչության ձևերը։

Դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքը, որը երաշխավորում է միութենական հանրապետությունների սուվերենությունը և ընդհանուր միութենական շահերի զուգակցումը տեղական շահերին, իր արտահայտությունն է գտնում նաև սովետական օրենսդրության սիստեմում։ Ընդհանուր միութենական օրենսդիր օրգանը՝ ՍՍՀՄ Գերագույն սովետը, ընդունում է երկրի կյանքի տարբեր հարցերի վերաբերյալ օրենսդրության հիմունքները։ Ըստ որում, բոլոր կարևոր օրինագծերը, մինչև ՍՍՀՄ Գերագույն սովետում ընդունվելը, ուղարկվում են միութենական հանրապետությունները՝ քննարկման։ Այնուհետև, հանրապետության համար օրենքներ մշակելիս, նրանք առաջնորդվում են ընդհանուր միութենական օրենսդրության հիմունքներով, բայց հաշվի են առնում ազգային ու տեղական մյուս առանձնահատկությունները։ Բացի այդ, հանդես են գալիս ընդհանուր միութենական օրենսդրական ակտերի նախապատրաստման նախաձեռնությամբ։ Ըստ որում, ամենագլխավորն այն է, որ մեր երկրի տարբեր ազգերի ու ազգությունների սուվերենությունը, ամենից առաջ, մարմնավորվում է սովետական բազմազգ պետության սուվերենության մեջ։ Սովետական ժողովուրդների սուվերենության այդ միասնությունն ընկած է միութենական ֆեդերատիվ պետության ու նրա սուբյեկտների միջև իրավասությունների

սահմանման վերաբերյալ հարցի գիտական ու դեմոկրատական լուծման հիմքում: Սուվերենությունը մշտական է, իսկ իրավասությունները՝ փոփոխական, կախված պատմական իրադրության կոնկրետ խնդիրներից ու ազգային առանձնահատկություններից: Այսպես, օտարերկրյա ինտերվենցիայի ու քաղաքացիական պատերազմի, սոցիալիզմի կառուցման տարիներին ու Հայրենական մեծ պատերազմի ժամանակաշրջանում գերակշռողը կենտրոնացված կառավարումն էր: Պարզ է, որ դա նշանակում էր ընդհանուր միութենական օրգանների ավելի լայն իրավասություն: Միայն ուժեղ կենտրոնացման պայմաններում էր հնարավոր հաղթանակ ապահովել արտաքին ու ներքին թշնամիների նկատմամբ, բոլոր ռեսուրսների կենտրոնացված կարգավորման դեպքում էր միայն հնարավոր կատարել ինդուստրացման ու երկրի տնտեսության վերելքի ծրագիրը:

Այդպիսի կենտրոնացման անհրաժեշտությունը թելադրվում էր նաև նրանով, որ մեր բազմազգ երկրի զարգացման առաջին ժամանակաշրջանում միութենական հանրապետությունները և ողջ երկիրը չունեին բավարար քանակությամբ որակյալ ու փորձված կադրեր, որոնք կարողանային ապահովել տնտեսական, քաղաքական ու կուլտուրական շինարարության տարբեր ճյուղերի գիտական ղեկավարումը:

Մեր բազմազգ պետության զարգացման և ամրապնդման, սովետական ժողովուրդների տնտեսության ու կուլտուրայի աճի համեմատ, ընդլայնվեցին միութենական հանրապետությունների ու տեղական օրգանների իրավասությունները:

ՍՄԿԿ ծրագրում և կուսակցության XXIII և XXIV համագումարների որոշումներում նախատեսված է հանրապետությունների իրավասությունների զգալի ընդլայնման ու նրանց սուվերենության հետագա ամրապնդման՝ գիտականորեն հիմնավորված միջոցառումների սիստեմ: Այդ ուղղությամբ մեծ ու արդյունավետ աշխատանք է կատարվել հատկապես վերջին տարիներին:

Ժողովրդական տնտեսության ղեկավարման գործում՝ միութենական հանրապետությունների իրավունքների ընդլայնման տեսակետից կարևոր փուլ հանդիսացավ ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան (1965 թ.) պլենումը, որը նախանշեց անցումը տնտեսական նոր ռեֆորմին: Պլենումը նշեց, որ «կառավարման ճյուղային սկզբունքը պետք է զուգորդվի տերիտորիալ սկզբունքի հետ. ամբողջ ժողովրդական տնտեսության և երկրի հանրապետությունների ու շրջանների էկոնոմիկայի կոմպլեքսային զարգացման միջճյուղային խնդիրների հետ, հանրապետությունների տնտեսական իրավունքների ընդլայնման հետ»: Դրա հիման վրա ընդունվեցին համապատասխան նորմատիվ այնպիսի ակտեր, որոնք նախատեսում էին միութենական հանրապետությունների իրավասությունների ընդլայնում՝ պլանավորման, կապիտալ շինարարության, ֆինանսավորման, աշխատանքի ու աշխատավարձի և այլ բնագավառներում: Այսպես, ժողովրդական տնտեսության պլանավորման ասպարեզում միութենական հանրապետությունների պլանային կոմիտեներն այժմ մշակում են միութենահանրապետական ենթակայության բոլոր ճյուղերի պլանները, ինչպես նաև իրենց առաջարկներն են ներկայացնում հանրապետության տերիտորիայում գտնվող միութենական մինիստրությունների ձեռնարկություններում արտադրանքի թողարկման պլանների նախագծերի կազմման ժամանակ: Միութենական հանրապետություններն իրավունք ունեն իրենց կարիքների համար օգտագործել թողարկված գերպլանային արտադրանքի 50 տոկոսը:



Կապիտալ շինարարության ասպարեզում միութենական հանրապետություններն իրավունք ունեն որոշակի սահմաններում կապիտալ ներդրումները վերաբաշխել առանձին կառույցների միջև՝ ապահովելու արտադրական խիստ կարևոր նշանակություն ունեցող, անհրաժեշտ օբյեկտների ժամանակին գործարկումը:

Միութենական հանրապետությունների մինիստրների սովետները իրավունք ունեն տեղական ենթակայության արդյունաբերության կառավարման օրգաններն օժտել տնտհաշվարկի ֆունկցիայով, վերանայել կոմունալ ծառայությունների տարիֆները, ավելացնել տեղական սովետների բնակարանային ֆոնդի և կուլտուր-կենցաղային նշանակություն ունեցող օբյեկտների նորոգման միջոցները, հաստատել ապրանքաշրջանառության պլանները և սահմանել ժողովրդական սպառման մի շարք առարկաների գները: Նրանք կարող են նաև առանձին ձեռնարկություններին թույլատրել իջեցնելու մնացած ապրանքների գները, հաստատել շինարարական և նախագծային կազմակերպությունների աշխատանքի պլանները, կիրառել տարբեր կատեգորիաների աշխատողների աշխատանքի վարձատրման ակորդային սիստեմը և այլն:

Էական միջոցառումներ են իրականացվել և իրականացվում նաև գյուղատնտեսության ղեկավարման գործում՝ միութենական հանրապետությունների ու տեղական օրգանների դերի բարձրացման նպատակով:

Միութենական հանրապետությունները մեծ իրավունքներ ունեն ժողովրդական կրթության ղեկավարման ասպարեզում: Ներկայումս նրանք վարում են հանրապետության դպրոցական կրթության ամբողջ գործը, նրանց են ենթարկվում բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատությունները, գիտության ու կուլտուրայի հիմնարկությունները: Հանրապետության կառավարությունը կարող է թույլատրել լրացուցիչ թվով ուսանողներ ընդունել բարձրագույն ուսումնական հաստատություններում և սովորողներ՝ միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում: Նա կարող է նաև ավելացնել նախադպրոցական հիմնարկությունների երեխաների, հիվանդանոցային մահճակալների թիվը, սահմանել կուլտուրայի մի շարք հիմնարկությունների դոտացիան և այլն:

Տնտեսության, գիտության, կուլտուրայի ու հասարակական կյանքի մյուս ոլորտների ղեկավարման մարզում միութենական հանրապետություններին տրվող լայն իրավասությունների ռեալ իրականացման համար կարևոր նշանակություն ունի նրանց բյուջետային իրավունքների հետագա ընդլայնումը: Այդ ասպարեզում միութենական հանրապետությունների ունեցած հիմնական իրավունքներն ապահովվում են ՍՍՀՄ Գերագույն սովետի ընդունած հայտնի օրենքով: Այդ օրենքը բխում է երկրի ֆինանսական քաղաքականության միասնականության վերաբերյալ լենինյան դրույթներից: Բացի այդ, միութենական հանրապետությունների գերագույն սովետները կարող են ավելացնել եկամուտների ու ծախսերի ընդհանուր գումարները, առանց փոփոխելու ընդհանուր միութենական պետական եկամուտներից իրենց բյուջեներին տրվող հատկացումները: Ըստ որում, էական նշանակություն ունի այն բանը, որ լրացուցիչ գումարները կարող են օգտագործվել միութենական հանրապետության հայեցողությամբ:

Միութենական հանրապետությունների իրավասությունները զգալիորեն ընդլայնվել են և օրենսդրության ասպարեզում։ Միայն վերջին տարիների ընթացքում նրանք ընդունել են քրեական ու քաղաքացիական դատավարության, աշխատանքային իրավունքի, հողօգտագործման, ջրային տնտեսության, առողջապահության, ամուսնա-ընտանեկան ու կյանքի մյուս կողմերին վերաբերող նոր կոդեքսներ և օրենսդրական ակտեր, կոնկրետ հաշվի առնելով տեղական պայմանները։

Այդ նույն ժամանակաշրջանում միութենական հանրապետությունների ինքնուրույնությունն ընդլայնվել է արդարադատության և դատական օրգանների աշխատանքի ղեկավարման իրականացման ասպարեզում։ Մասնավորապես զգալիորեն ընդլայնվել են միութենական հանրապետությունների գերագույն դատարանների հսկողական ֆունկցիաները։ Ներկայումս միութենական հանրապետության արդարադատությանը վերաբերող ոչ մի գործ չի կարող ՍՍՀՄ Գերագույն դատարում քննվել հսկողական կարգով, եթե այն դեռևս նույն կարգով չի քննվել միութենական հանրապետության Գերագույն դատարանում։ Արդարադատության ասպարեզում միութենական հանրապետությունների ունեցած դերի բարձրացման վկայությունն է նաև արդարադատության հանրապետական մինիստրությունների վերականգնումը։

ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակին նվիրված զեկուցման մեջ Լ. Ի. Բրեժնևն ընդգծեց, որ «ազգային հարաբերությունները հասուն սոցիալիզմի հասարակության մեջ էլ մի այնպիսի իրողություն են, որը մշտապես զարգանում է, առաջադրում նոր պրոբլեմներ ու խնդիրներ։ Կուսակցությունը մշտապես այդ հարցերը պահում է տեսադաշտում, ժամանակին լուծում դրանք՝ ելնելով ողջ երկրի և յուրաքանչյուր առանձին հանրապետության շահերից, կոմունիստական շինարարության շահերից» (Լ. Ի. Բրեժնև. Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության հիսնամյակի մասին, էջ 36)։

Սովետական բազմազգ պետության կազմակերպման ու զարգացման պատմական պրակտիկան ցույց է տալիս, թե ինչքան անհեթեթ են մեր հանրապետությունների սուվերենության վերաբերյալ բուրժուական գաղափարախոսների զրպարտչական հայտարարությունները։

Ժողովուրդների ու պետությունների սուվերենության հարցում բուրժուական գաղափարախոսները ո՛չ միայն զբաղվում են ռեալ իրականության աղավաղմամբ, այլև իրենց «տեսություններում» հանդես են բերում բացահայտ անհետևողականություն։ Նրանցից ոմանք, թվում է, պայքարում են սուվերենության համար, երբ ուզում են աղավաղել սովետական բազմազգ պետության կազմավորման դեմոկրատական սկզբունքները։ Իսկ մյուսները հանդես են գալիս ընդդեմ սուվերենության, երբ այն խանգարում է իմպերիալիստական պետությունների գաղութատիրական ու ագրեսիվ քաղաքականությանը։

«Սուվերենությունը,— գրում է անգլիացի պրոֆեսոր Ջ. Բրայերլին,— մեկն է այն կոնցեպցիաներից, որի մասին ամերիկացի նշանավոր դատավորը գրել է, թե նրանք ավելի շուտ դառնում են մեր բռնակալները, քան՝ ծառաները»։ Սուվերենության այդ գնահատումը բնորոշ է իմպերիալիզմի ժամանակակից գաղափարախոսներից շատերին։ Սուվերենությունից հրաժարվելը նրանք համարում են միջազգային հարաբերություններում տիրող անարխիայից կամ կիսաանարխիայից պաշտպանվելու միակ միջոցը։ «Սուվերենությունը,— գրում է իմպերիալիզմի նշանավոր ջատագով Կ. Լոնդոնը,— վնաս է



հասցնում ժողովուրդների հարաբերություններին։ Սուվերենությունն արդյու-
նավետ միջազգային համագործակցության ճանապարհի գլխավոր խոչընդոտն
է, այդ պատճառով էլ առանձին ազգությունների շահերը, իհարկե, բացառու-
թյամբ ԱՄՆ-ից, պետք է ենթարկվեն միջազգային կառավարմանը՝ գաղափա-
րապես հիմնավորված կազմակերպման միջոցով»։ Սուվերենության ժխտման
մյուս փաստարկը «մարդասիրության նկատառումներով» ուրիշ պետություն-
ների գործերին միջամտելու արդարացումն է։ Ելնելով դրանից, ամերիկացի
իրավագետ Մ. Բելովը բացահայտորեն խոսում է «ազգային պետության սու-
վերենության վրա ճակատային գրոհի» նախապատրաստման անհրաժեշտու-
թյան մասին։ Այդ հեղինակների կարծիքով, ժամանակակից ազգային պետու-
թյունների սահեղծումը, գաղութատիրությունից ազատագրվելու ընթացքում,
հակասում է մեր ժամանակի ռազմական, քաղաքական ու տնտեսական իրա-
կանությանը»։

Բուրժուական գաղափարախոսները սուվերենության ժխտումը բացատրում
են նաև նրանով, թե, իբր, ժամանակակից գիտա-տեխնիկական հեղափոխու-
թյան պայմաններում այն արգելակում է արտադրաուժերի զարգացումը բոլոր
երկրներում։ Ելնելով դրանից, նրանք փորձում են «տեսականորեն» հիմնավո-
րել պետությունների մի մասի կախումը մյուսներից։ Այսպես, Ռ. Սվինտոն
գրում է, որ ներկայումս «կախվածությունն ավելի մեծ նշանակություն ունի
միջազգային կյանքում, քան պետությունների սուվերեն անկախությունը»։

Սուվերենությունը ժխտող բուրժուական գաղափարախոսները նույնիսկ
այն անհամատեղելի են համարում խաղաղ գոյակցության սկզբունքի հետ
(Ու. Ռոստոու, Մ. Բելով, Գ. Կելզոն, Շուման և ուրիշներ)։ Դեռ ավելին, նրանք
ուղղակի հայտարարում են, թե պատերազմը պետական սուվերենության ար-
դյունք է։ Այսպես, Ֆ. Շումանը նշում է, որ մշտական խաղաղության հասնե-
լու համար կամ «բոլոր սուվերենությունները պետք է ենթարկվեն մեկ համաշ-
խարհային պետությանը, որը ծնունդ է առնում հաղթանակի շնորհիվ» կամ
«սուվերենությունները կամավոր միաձուլվեն», այսինքն՝ ստեղծվի «համաշ-
խարհային պետություն»։

Թեպետ «համաշխարհային պետության» գաղափարը նույնպես նոր չէ,
բայց այն ներկայումս մեծ տեղ է գրավում բուրժուական սոցիոլոգիայում և
հատկապես օգտագործվում է սուվերենության ժխտման նպատակով։ Այդ
նույն նպատակին է ծառայում և «Եվրոպայի Միացյալ Նահանգների» ստեղծ-
ման վերաբերյալ ոչ պակաս հնացած գաղափարը։

Սովետական պետականությունը, առաջնորդվելով մարքս-լենինյան գա-
ղափարախոսությամբ, սկզբից ևեթ հայտարարեց, որ յուրաքանչյուր ժողո-
վուրդ իրավունք ունի տնօրինելու իր բախտը՝ բոլոր ներքին գործերում, ան-
կախ իր հարևաններից, եթե դա չի խախտում մյուսների ազատությունը։

Մարքս-լենինյան ուսմունքը ոչ գիտական է համարում ինչպես սուվերե-
նության, այնպես էլ պետությունների փոխկախվածության աբսոլյուտացումը։
Առաջնորդվելով այդ ուսմունքով և հետևողականորեն իրականացնելով լենին-
յան ազգային քաղաքականությունը, սովետական պետությունն ապահովում է
մեր բոլոր հանրապետությունների իսկական սուվերենությունը, միջազգային
հարաբերություններում վարում է բոլոր պետությունների և ազգությունների
սուվերեն իրավունքները հարգելու քաղաքականություն։

## ԵՐԻՏԱՍԱՐԴ ՍԵՐՆԴԻ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅԱՆ ՀԱՐՑԵՐ

# Վ. ՍՈՒԽՈՄԼԻՆՍԿՈՒ ՄԱՆԿԱՎԱՐԺԱԿԱՆ ՀԱՅԱՑՔՆԵՐԸ

ՌԱՖԱՅԵԼ ԱԹԱՅԱՆ

Ամեն անգամ, երբ ասում ենք **ժամանակակից մանկավարժություն,** ինքնաբերաբար հիշում ենք Վասիլի Ալեքսանդրովիչ Սուխոմլինսկուն: Արդարև, հենց նրա ստեղծած դպրոցն ու հեղինակած երկերն են, որ պարզորոշ մարմնավորում են այդ հասկացողությունը մեր գիտակցության մեջ:

Ուկրաինայի Կիրովոգրադի մարզի Պավլիշ գյուղի (ներկայումս՝ ավանի) դպրոցի դիրեկտորն էր Սուխոմլինսկին մինչև իր վաղաժամ մահը (վախճանվեց 52 տարեկան հասակում, 1970 թըվականի սեպտեմբերի 2-ին): Իր մանկավարժական երկերի մեծ մասը նա, որոշ առումով, ներկայացնում էր իբրև իր ղեկավարած դպրոցի ուսուցչական կազմի կոլեկտիվ աշխատանքի և գիտական հետազոտությունների տեսական ընդհանրացում: Այդուհանդերձ, պատերազմի դաժան իրականության դեմ-հանդիման՝ երիտասարդ մանկավարժի վաղ ձևավորված աշխարհըմբռնումը, նրա խոր մարդասիրությունն ու քնքուշ մանկասիրությունը, որոնք միտքը և կազմակերպչի եռանդն են բեղմնավորել նաև ուսուցչական այդ կոլեկտիվի աշխատանքը և այնպիսի բարձրության հասցրել Պավլիշի դպրոցը, որ այն երևում է աշխարհի բոլոր ծեգերից:

Ուսուցչական գործունեության 25 տարիներին մանկավարժն աստիճանաբար նվաճեց համընդհանուր ճանաչում ու հեղինակություն: Ռուբիկոնը կարող է համարվել **Սիրտս նվիրաբերում եմ մանուկներին** գիրքը, որը 1968-ին գերմաներեն լույս ընծայեց Բեռլինի «Կուլտուրա և առաջադիմություն» հրատարակչությունը, իսկ 1969-ի գարնանը ռուսերեն լույս տեսավ Կիևում: Պատահական չէ, որ «Պրավդան» 1969 թվականի փետրվարի 24-ին «Դպրոցի դիրեկտորը» վերնագրով առաջնորդողում այնպես հանգամանորեն լուսաբանել է նրա մանկավարժական գործունեությունը: Հենց այս շրջանին են վերաբերում Սուխոմլինսկու մյուս աչքի ընկնող հետազոտությունները ևս: Հիշենք հատկապես **Պավլիշի դպրոցը** մեծածավալ մենագրությունը: 1971-ին, հետմահու հրապարակ եկավ դեռահասների հոգեբանությանը նվիրված նրա նշանավոր գիրքը՝ **Քաղաքացու ծնունդը,** որը հեղինակի բազում խոհերի, դիտումների և հուզախռով ապրումների արգասիքն է: Վերջապես Սուխոմլինսկու երկերի յոթհատորանոց ժողովածուի (հրատարակվում է Կիևում, բաժանորդագրությամբ) առաջին գրքում զետեղվում է նրա **Համակողմանի զարգացած անձնավորության դաստիարակման պրոբլեմները** ուսումնասիրությունը, որը դեռ մի տասնամյակ առաջ նա պատրաստել էր իբրև դոկտորական դիսերտացիա, բայց իր բազմազբաղ վիճակի բերումով ժամանակ չունեցավ այն պաշտպանության ներկայացնելու:

Այսօր, երբ փորձում ենք մի հայացքով ընդգրկել Սուխոմլինսկու գրական ժառանգությունը, տեսնում ենք, որ նրա՝ տասնամյակներ շարունակ չթուլացող ստեղծագործական ավյունի ու խանդավառության ակունքները հիմնականում երեքն են. առաջին՝ կյանքի թելադրանքը, նոր սերնդի կրթության ու դաստիարակության հրատապ պահանջները, որոնք կանխորոշում էին նրա գիտական հետազոտությունների բովանդակությունը, մանկավարժական որոնումների բնույթն ու ուղղությունը:

Երկրորդ՝ դասական մանկավարժությունը հանձինս իր նշանավոր ներկայացուցիչների՝ Կոմենսկի, Պեստալոցցի, Ռուսսո, Դիստերվեգ, Ուշինսկի, անշուշտ նաև XX դարի մեծ մանկավարժները մինչև Կրուպսկայա և Յանուշ Կորչակ: Սուխոմլինսկին հիանալի գիտեր մանկավարժության ու մանկավարժական հոգեբանության այդ հանրագիտարանը և հաճախ էր դիմում նրա օգնությանը: Մեր՝ մանկավարժներիս, դպրոցական աշխատողներիցս շատերի դժբախտությունն այն է, որ տապակվելով մեր յուղի մեջ, հաճախ մոռացության ենք տալիս շատ ու շատ բան այն ամենից, որ բազմիցս պարզել, սպառիչ հաստատել ու սահմանել են ուրիշները և բաց դռներ ենք բախում՝ «նոր մեթոդներ ու հնարներ» որոնելով: Սուխոմլինսկին, ընդհակառակը, շարունակ ջանում էր վերակենդանացնել իր դպրոցում այն, ինչ բազմիցս հաստատված ու սահմանված է փորձով: Դրանով իսկ նրա դպրոցը դառնում էր **գիտական մանկավարժության մի լաբորատորիա,** հանդիսանալով նրա աստիճանաբար հարստացող ըմբռնումների ու համակարգվող մանկավարժական ուսմունքի երրորդ, ու թերևս հիմնական աղբյուրը: Այս ամենի շնորհիվ Սուխոմլինսկու գիտական ստեղծագործությունը համապարփակ բնույթ ունի: Նրա ուսմունքը ոչ այլ ինչ է, եթե ոչ գործնականում ստուգված, Պավլիշի դպրոցի փորձով վերահաստատված «մանկավարժական համոզմունքների» (ինչպես նա սիրում էր արտահայտվել) համադրյալ ամբողջություն: Այդ «համոզմունքները» վերածվել էին անխախտ սկզբունքային դրույթների, որոնք նա հաստատում և տեսականորեն հիմնավորում էր իր աշխատություններում:

Ահա դրանցից մեկը՝ ուսման և դաստիարակության միասնության սկըզբունքը, ուսման և դաստիարակության, որ դիտվում և կիրառվում են իբրև անտրոհելի մի պրոցես, իրար հետ զուգորդվող, միահյուսվող ու համատեղվող բազմապիսի ձեռնարկումների անընդմեջ մի շղթա: Մանկավարժական աշխատանքի այս էական յուրահատկության տարբեր կողմերին, նրանց կոնկրետ դրսևորումներին հաճախ է անդրադարձել Սուխոմլինսկին իր գրքերում ու հոդվածներում: Ուշադրություն հրավիրենք, թեկուզ, դրանցից մեկի վրա, որ դասական մանկավարժության լավագույն ավանդույթների նորօրյա, ավելի կատարյալ մարմնացումը լինելով, վերին աստիճանի բնորոշ է Սուխոմլինսկու ուսումնադաստիարակչական սիստեմին: Դա վեց տարեկան երեխաների նախակըրթարանն է և, հատկապես, այդ ուրախության դպրոցում տրվող մտածողության դասերը: Անսահման բավականություն կարող է ստանալ ամեն մի ընթերցող, կարդալով նրա **Սիրտս նվիրաբերում եմ մանուկներին** գիրքը, ուր նկարագրված է այդ սքանչելի նախակրթարանը: Ահա գրքի մի քանի ենթավերնագրեր, որոնք նախնական պատկերացում կտան և այդ կրթարանի բնույթի մասին. **Դպրոցը կապույտ երկընքի տակ, Մեր երազանքի անկյունը, Մեր ճամփորդությունները դեպի աշխատանքի աշխարհը, Մենք ունկընդրում ենք բնության երաժշտությունը, Արտույտի տոնը, Ինչպես գրել-կարդալ սովորեցինք, Մեր կոլեկտիվը մի համերաշխ ընտանիք է:** Ինչպես տեսնում ենք, դժվար է տարանջատել այստեղ ուսումը դաստիարակությունից, թեկուզ մոտավոր կերպով սահմանել, թե ո՛ր զբաղմունքն ավելի շատ նպաստ ունի զարգացնել միտքը, որը՝ հոգեպես կրթել երեխային, թե որտե՛ղ է վերջանում հաճույքը և սկսվում լուրջ պարապմունքը կամ օգտավետ աշխատանքը և հակառակը, որտե՛ղ է ավարտվում երեխաների բնավորության,

հակումների, խառնվածքի, առողջության ուսումնասիրությունը, որտե՛ղ սկսվում նեղ իմաստով մանկավարժական-ուսուցողական ներգործությունը նրանց վրա: Էականն այն է, որ ֆիզիկական, բարոյական, հոգեկան ու մտավոր բազմապիսի ներգործության շնորհիվ երեխաները ապրել են համակողմանի զարգացման մի պրոցես, որը հետագայում դյուրացրել է նաև ուսումնական այլևայլ բարդ հարցերի լուծումը:

Բայց և այնպես, եթե փորձենք ճշտորոշել, թե կանխահայաց մոտեցման դեպքում ինչի՛ն էր առաջնություն տալիս Սուխոմլինսկին, ուսմա՞նը, թե՞ դաստիարակությանը, ո՛րն է կինելու ելակետը երեխաների հետ աշխատելիս, ապա պետք է ասենք, որ նախապատվությունը նա տալիս էր դաստիարակությանը՝ բառիս լայն առումով: Նա բազմիցս որոշակի արտահայտել է իր այս հայեցակետը: «Նախքան գիտելիքներ հաղորդելը պետք է սովորեցնել մտածել, ընկալել, դիտել»,— ասում է նա: Ամեն մի ուսուցչի, համենայն դեպս, շատ շատերին, անշուշտ, հայտնի և հասկանալի է այս բանը: Քչերին է, սակայն, հաջողվում առօրյայում հետևողականորեն ղեկավարվել այդ սկզբունքով:

Սուխոմլինսկին մեծ նշանակություն է տալիս հատկապես **էմոցիոնալ կուլտուրայի** զարգացմանը երեխայի մեջ: «Սովորեցնել զգալ, սա է ամենադժվար բանը դաստիարակության գործում,— ասում է նա,— զգալ և, մանավանդ, համազգաց լինել ուրիշներին»:

Զգացմունքների դաստիարակությունն անբաժանելիորեն զուգակցված է աշակերտներին «մարդկային կյանքի գլխավոր խնդրին»՝ լուրջ և համառ ուսումնական աշխատանքի պատրաստելը: Այս խնդրին են ծառայում մտածողության դասերը, որ նա անվանում է նաև «ուղևորություններ դեպի խոսքի սկզբնաղբյուրները»: Դրանք բնության գրկում տեղի ունեցող զրույցներ են, որոնց նպատակն է՝ երեխաների մեջ արթնացնել և զարգացնել խոսքի զգացողությունը: Դիտելով կենդանական ու բուսական կյանքի զարմանալի երևույթները՝ երեխաները դրանց անմիջական տպավորության տակ, ուսուցչի օգնությամբ, աշխատում են **անվանել** իրենց տեսածը, լսածն ու զգացածը, աստիճանաբար անցնելով առանձնակիից բազմակիին, բառերից ու պարզ նախադասություններից ծավալուն, կապակցված խոսքի, հորինում են փոքրիկ պատմություններ և հեքիաթներ: Ի դեպ, հենց դրանք, այդ «մտածողության դասերն» են եղել ակունքը իր՝ Սուխոմլինսկու ստեղծած բազմաթիվ հեքիաթների, որ նա տեղն ու տեղը պատմում էր իր սաներին կամ հետո կարդում նրանց համար: Գեղարվեստական-դաստիարակչական բարձրարժեք, փոքրածավալ գրվածքներ են դրանք, որ վերջին տարիներին սկսեցին լույս տեսնել Կիևի, Մինսկի և Մոսկվայի մանկական հանդեսներում և առանձին գրքույկներով՝ ռուսերեն, ուկրաիներեն և բելոռուսերեն:

**Ուրախության դպրոցը** նկարագրելիս Սուխոմլինսկին հատուկ տեղ է հատկացնում իր **սաների ծնողներին:** Անշուշտ, ամեն մի դասվար կամ դասղեկ այս կամ այն չափով ճանաչում է «իր» ծնողներին: Բայց Պավլիշի դպրոցում հարցը մանկավարժական և բարոյահասարակական ավելի նշանակալից բովանդակություն է ձեռք բերել: Ծանոթանալով երեխաներից ամեն մեկի բնավորությանը, «ուրախության դպրոցում» դաստիարակը խոհեմաբար քննում է յուրաքանչյուրի ֆիզիկական վիճակի և հոգեկան խառնվածքի այն կողմերը, որոնք կենսամիջավայրի բացասական ներգործության արդյունք են և մտածված ու հետևողական ջանքերով ձգտում է առողջացնել և արատազերծել երեխային, փոխել նրա բնավորությունը: Սուխոմլինսկու դպրոցում ոչ մի խնդիր թերևս այնպիսի տեվական ու մանրակրկիտ ուշադրության չի արժանացել, որքան աշակերտների առողջությունը. կատարվող տևական ուսումնասիրությունից արվել են շատ կարևոր հետևություններ: Ուսուցչական կոլեկտիվը ժամանակի ընթացքում համոզվել է, որ թույլ աշակերտների մոտ 85 տոկոսի ետ մնալու պատճառը վատառողջությունն է: Սուխոմլինսկին թվարկում է մանկական այն հիվանդությունները, որոնք հաճախ, աննկատ մնալով, խանգարում են երեխաների ուսմանը, որոնց բուժումը ծնողների, բժիշկների և ուսուցիչների համատեղ ջանքերն է պահանջում: Դրանցից է



տեսողության թուլացումը գարնանը, որ մեզ մոտ ևս տարածված է: Սա զուգադիպում է օրգանիզմի ընդհանուր դիմադրողականության թուլացմանը. երեխան շուտ է մրսում, իջնում է նրա աշխատունակությունը: Պավլիշի դըպրոցում ուշադրության են առնվում երևույթի սուբյեկտիվ ֆիզիոլոգիական պատճառները, ասենք՝ վիտամինների պակասը սննդի մեջ՝ գարնան ամիսներին, կամ մտավոր աշխատանքի լարվածությունը, որ արդեն անհարիր է օրգանիզմի ունակություններին, ինչպես նաև օբյեկտիվ կլիմայական փոփոխությունները, օրինակ՝ արևի ռադիացիայի ներգործության շեշտակի նվազումը: Այս ամենից համապատասխան հետևություններ են արվում երեխաների սննդի և ռեժիմի վերաբերյալ, որոնք հաղորդվում են և ծնողներին: Այսպիսով, դպրոցն զգալի չափով ըստանձնում է նաև հոգսեր, որոնք սովորաբար ծանրանում են միայն ծնողների ուսերին:

Ավելին, ներթափանցելով «բժշկական մանկավարժության» ոլորտը, Սուխոմլինսկին մշակում էր նրա ժամանակակից սկզբունքները և աշխատում հետևողականորեն ղեկավարվել դրանցով: Ահա դրանցից մի քանիսը. ա) խնամքով, զգուշորեն վերաբերվել մանկան նրբազգաց, դյուրաբեկ հոգուն, բ) դպրոցական աշխատանքի ոճով, դպրոցական կյանքի ողջ դըրվածքով երեխաներին հեռու պահել մռայլ մտքերից ու ծանր ապրումներից, զարկ տալ կենսախնդությանն ու կենսասիրությանը, բնավ չզգացնել երեխային, որ նրա հետ վարվում են իբրև հիվանդի:

Բայց սա միայն դպրոցի ջանքերով հնարավոր չէ գլուխ բերել: Լավ գիտակցելով այդ՝ Սուխոմլինսկին գրում է. «Չի կարելի աչք փակել այն բանի վրա, որ մեր շուրջը դեռևս կան չարիքներ ու աղտեղություններ: Ոչ մի քարե պարիսպ չի կարող հեռու պահել դըրանք դպրոցից»: Այդ չարիքների դեմ պայքարելու, դրանք հաղթահարելու համար նա կոչ է անում համարձակ նայել ճշմարտության երեսին: Նկարագրում է ընտանիքներ, որտեղ աղարտվում է երեխաների անբիծ հոգին, որտեղ նրանք զուրկ են ուրախությունից, պարզապես մանկություն չունեն: Նըման դեպքերում մանկավարժի խնդիրն է՝ վերադարձնել մանկությունն այդ երեխաների, դիմելով բազմապիսի միջոցների՝ սկսած **ընտանեկան միջավայրի բարեփոխումից,** որը չի արվում սոսկ մասնակի միջամտություններով. դպրոցական դասընթացին առընթեր և զուգահեռ, նույնքան խնամքով, գիտականորեն ծրագրված ձեռնարկումների մի համակարգ է այդ: Ամենաորակյալ դաստիարակների ղեկավարությամբ դպրոցին կից գործում է **ծնողական դպրոցը:**

**Նախադպրոցական երեխաների ծնողների և ապագա ծնողների** բաժանմունքը, օրինակ, ուսումնասիրում է երեսուն հարց, որոնցից նշենք մի քանիսը. ընտանեկան փոխհարաբերությունների և երեխաների բարոյական դաստիարակությունը. ծնողների սիրո ըզգացմունքը և պատասխանատվությունը երեխաների ապագայի համար. ամուսնության բարոյական նախապատրաստությունը. ալկոհոլիզմը և երեխաները. մայրական դաստիարակությունը. մըտավոր կրթությունը երկու շաբաթից երեք տարեկան հասակում, այդ տարիքի բացառիկ նշանակությունը երեխաների մտավոր ընդունակությունների դաստիարակման գործում. զգացմունքային դաստիարակությունը մինչև երեք տարեկան և երեքից յոթ տարեկան հասակում. երեխայի ֆիզիկական և հոգեկան զարգացումը երեքից յոթ տարեկան հասակում. խոսքի զարգացումը և երեխայի մտավոր ընդունակությունները. ինչպես կանխել երեխաների նյարդային հիվանդությունները. քմահաճությունների, դյուրագրգռության և նեղացկոտության կանխումը. ինչպես դաստիարակել կոլեկտիվիզմ և հարգանք մարդու հանդեպ. բնությունը նախադպրոցականի դաստիարակության մեջ. խաղը նախադպրոցականի կյանքում. նախադպրոցականի առողջությունը և բանականությունը և այլն, և այլն:

Զարմանալի չէ, որ երիտասարդ ծնողների հետ միասին այս դպրոցն էին հաճախում նաև նոր հասունության վըկայական ստացած պատանիներ ու աղջիկներ: Ի դեպ, նորավարտ պատանիներից շատերը դպրոցի VIII—X դասարաններում անցել էին **սեր, ամուսնություն, ընտանիք** ֆակուլտատիվ

առարկան. դա կյանքի այսօրվա պահանջներից բխող լուրջ դասընթաց է, որը, որքան մեզ հայտնի է, իր ողջ կարևորությամբ հանդերձ առայժմ ավանդվում է միայն Պավլիշի դպրոցում:

Իսկ VIII—X դասարանցիների ծնողների ուշադրությունը հրավիրում են հետևյալ հարցերի վրա.

15—17 տարեկան տղաների և աղջիկների անատոմա-ֆիզիոլոգիական և հոգեկան յուրահատկությունները. ֆիզիկական, սեռական, բարոյական ու սոցիալական հասունության միասնությունը. կարողանանք հարգել պատանու ինքնուրույնությունը. բարոյական կայունության, չարի հանդեպ անզիջողության, անհաշտության դաստիարակումը. գիրքը պատանեկության հոգեկան կյանքում. տղայի և աղջկա անձնական գրադարանը. աշխատանքի և ուսման ռեժիմը վաղ պատանեկության տարիներին. ինքնադաստիարակումը վաղ պատանեկության շրջանում. պատանու հոգեկան պահանջներն ու դրանց զարգացումը. անհատական հակումների, ընդունակությունների, կոչման և ձիրքի դաստիարակումը. ինչպես խոսել պատանու և աղջկա հետ սիրո, ընտանիքի, ամուսնության և երեխաների մասին. պատանեկության իրավական գիտակցությունը. նյարդային և սրտի հիվանդությունների կանխումը պատանեկության տարիներին. պատանիների նախապատրաստումը սովետական բանակում ծառայելու համար. ինչպես սովորեցնել պատանիներին ու աղջիկներին հարգել ու գնահատել մեր հասարակության սրբությունները:

Առերևույթ փոքր-ինչ կողմնակի հարց է թվում մտավորապես անզարգացած երեխաների, նրանց ծնողների հետ կատարվող աշխատանքը. բայց Սուխոմլինսկու մարդասիրական աշխարհզգացման, նրա մանկավարժական ըմբռնումների էական դրսևորումներից մեկն է դա: Ծնողական դպրոցը ևս ուներ թուլամիտ երեխաների ծնողների հատուկ բաժանմունք, որտեղ արծարծվում էին այդ երեխաների աճման ու զարգացման, նրանց կրթության յուրահատուկ խնդիրները, առանց ծնողներին ընկճելու կամ վիրավորելու: Անա, իրոք, կնճռոտ, բայց կարգավորման խիստ կարիք ունեցող պրոբլեմներից մի քանիսը, որ շոշափվում են այս բաժանմունքում. ընտանիքի ինտելեկտուալ կուլտուրան և երեխայի մտավոր զարգացումը. թուլամիտ, սահմանափակ ընդունակությունների տեր երեխաների մտավոր զարգացման յուրահատկությունները. ինչպես հաղթահարել այդ երեխաների մտավոր զարգացման կասեցումն ու դանդաղումը. մտավորապես թույլ երեխաների դպրոցական ու ընտանեկան դաստիարակության գլխավոր խնդիրը նրանց մտածողական ընդունակություններին զարկ տալն է, և ոչ թե գիտելիքների որոշ շրջանակի տիրապետումը. մտածողությունն իբրև աշխատանք. երեխային մտավոր աշխատանքի տրամադրող ազդակները. հեքիաթի դերը թուլամիտ երեխայի մտավոր զարգացման մարզում. ինչպես զարգացնել մտավորապես թույլ երեխայի հիշողությունը. գեղեցկության դերը թույլ զարգացած երեխայի զգացմունքային ու մտավոր դաստիարակության մեջ. մտավոր վարժանքներ, ինչպես կատարել դրանք տանը. ուրախությունն ու հրճվանքը մտավորապես թույլ երեխաների կյանքում. խոսքով ստեղծագործելը՝ հեքիաթներ ու պատմվածքներ հորինելը իբրև թուլամիտ երեխաների բանականության զարգացման բացառիկ կարևոր ազդակ. երեխաների բուժական ռեժիմը գարնանը, ամռանը, աշնանն ու ձմռանը. բուժիչ սնունդը. ալկոհոլը իբրև սոցիալական չարիք և երեխաների մտավոր թուլության պատճառ:

Այսպիսով, Սուխոմլինսկու մանկավարժական ըմբռնումներում բացառիկ կարևոր է **դպրոցի ու հասարակության, ուսուցչի և ծնողների մանկավարժական պահանջների ու ձեռնարկումների ներդաշնակման, համաձայնեցման և հետևողական իրականացման սկզբունքը,** որը կիրառում է նա դաստիարակչական գործունեության բոլոր բնագավառներում:

Այս կերպ Սուխոմլինսկին պատրաստում էր իր սաներին կյանք մտնելու: Մանկավարժական ներգործության բոլոր բնագավառներում, լինի դա ծրագրային առարկաների ուսուցում, էթիկական զրույց, պարապմունք լաբորատորիայում, զբոսանք թե հանրօգուտ աշխատանք, նա հետապնդում է երեք



նպատակ— ստեղծել այդ ներգործության առավելագույն չափով նպաստող օբյեկտիվ ու սուբյեկտիվ պայմաններ. դրա համար ամբողջովին օգտագործել տվյալ իրավիճակի, ուսումնական առարկայի, տվյալ սոցիալ-պատմական երևույթի ընձեռած բոլոր հնարավորությունները. աշխատանքի պրոցեսում, դիմելով գերազանցորեն ակտիվ մեթոդների, հասնել աշակերտների հոգեկան, բարոյական, իմացական ու աշխատանքային առավելագույն ինքնադրսևորման:

Այլ կերպ ասած՝ թե՛ մանկավարժության պատմության դասերից և թե սովետական դպրոցի փորձից ելնելով, նա պարտադիր էր համարում միասնորեն և ներդաշնակորեն օգտագործել երեխայի զարգացմանը, նրա ուսմանն ու դաստիարակությանը նպաստող բոլոր ազդակները և կոնկրետ իրավիճակից ելնելով՝ որոնել նորերը:

Մանկավարժական ներգործության միջոցների այս հավաքագրման, յուրահատուկ ընդհանուր զորակոչման մեջ իրենց ուրույն տեղն ունեն թե՛ բնությունը, թե՛ մարդկության պատմությունը և թե՛ ժամանակակից կյանքը՝ իր տարբեր կողմերով: Բնությունը, ըստ նրա տեսության, միայն գեղեցկության, հմայքների աղբյուր չէ, որը, հայեցողաբար ընկալելով ևս, կարելի է բազում հաճույքներ ստանալ: Լինելով մարդու կյանքի բնական միջավայրը, այն կարիք ունի ներգործուն սիրո, խնամքի, գուրգուրալից հոգածության: «Մարդը եղել է և կմնա բնության զավակը,— գրել է նա,— և այն, ինչը հարազատացնում է նրան բնությանը, պետք է օգտագործվի մարդուն հոգեվոր մշակույթի գանձերին հաղորդակից դարձնելու համար: Ես ձգտում եմ, որ նախքան գիրք բացելը և առաջին բառը վանկ առ վանկ կարդալը, երեխան ընթերցի աշխարհի ամենահրաշալի գրքի՝ բնության գրքի էջերը»:

Տասնամյակների նրա աշխատանքը երեխաների հետ՝ բնության ծոցում, ի վերջո, 1969 թվականին հանգեցրեց ուսումնական նոր առարկայի **(բնության պահպանություն)** ստեղծմանը (մեզ մոտ, որքան գիտենք, դեռևս միայն Պավլիշի դպրոցում է ավանդվում այն): Դպրոցի 1970—1971 ուսումնական տարվա համար կազմած ուսումնա-դաստիարակչական աշխատանքի պլանում Սուխոմլինսկին ճշտորոշում է առարկայի դերն ու խնդիրները, այդ առարկայից աշակերտին գնահատելիս նկատի են առնվում տեսական գիտելիքների կիրառումը գործնականում. դրական գնահատական ստանալու համար ամեն մի աշակերտ պիտի կատարի գործնական աշխատանք, տանը և դպրոցական այգում խնամի պտղատու ծառեր, իր դասարանի, դպրոցի, ջերմոցի և այգու համար բերի տանն աճեցրած ծաղիկներ, տարրական դասարաններում խնամի ու աճեցնի աղավնիներ ու ճագարներ: VIII—X դասարաններում, օրինակ, ըստ ծրագրի ուսումնասիրվում են և այսպիսի թեմաներ.

Երկրի մակերևույթի և օվկիանոսների դերը երկրագնդի թթվածնային հաշվեկշռի պահպանման գործում. ի՞նչ է կենսաոլորտը. երկրագնդի բնական հարստությունների անսպառության առասպելը. բնության հարստությունների վերականգնումը և մարդու գիտակցական գործունեությունը և այլն:

Չպետք է ենթադրել սակայն, թե սա սոսկ նեղ նյութական նպատակներ հետապնդող դասընթաց է: Բնության պահպանման և հարստացման ուղղությամբ կատարած աշխատանքի ընթացքում աշակերտները պետք է գիտակցեն, որ միայն իրենց համար չեն աշխատում, այլև հանուն վսեմ մի նպատակի՝ մարդկային հասարակության ընդհանուր շահերի: Այս կերպ, ահա, կրկին փոխադարձաբար ներթափանցում են տեսությունն ու պրակտիկան, ուսումն ու աշխատանքը, օգտակար գիտելիքների յուրացումն ու գաղափարական, հոգեկան, բարոյական ու գեղագիտական դաստիարակությունը:

Փոխպայմանավորված բազմապիսի ձեռնարկումների մի համակարգ է մշակել Սուխոմլինսկին նաև մարդկային հասարակության պատմությունը, հատկապես, կուլտուրայի և ազատագրական շարժումների պատմությունը երեխաների դաստիարակությանն ի սպաս դնելու համար: Բացառիկ կարևորություն տալով այն ամենին, ինչ նպաստում է աշակերտների ընդհանուր զարգացմանն ու մտահորիզոնի ընդլայնմանը, օգտագործելով գրական հա-

րուստ աղբյուրները, մանկավարժը դպրոցում իրականացնում է իր համոզմունքները տվյալ խնդրում, կազմակերպելով նաև սովետական եղբայրական ժողովուրդների կուլտուրային, նրանց պատմությանն ու ժամանակակից կյանքին նվիրված երեկույթներ: 1966 թվականի հոկտեմբերին լավ մտածված ու կազմակերպված նման երեկույթ նվիրվեց նաև հայ ժողովրդի կուլտուրային:

Սուխոմլինսկին համոզված էր, որ առաջադեմ գաղափարներն ու բարոյական նորմերն ավելի դյուրությամբ են ընկալվում ու յուրացվում, երբ աշակերտները դրանք մարմնացած են տեսնում մարդկանց մեջ: Մանկավարժության պատմությամբ բազմիցս հաստատված և կենսափորձով ստուգված այս դրույթից ելնելով՝ նա մշակել էր համայն մարդկության ու, հատկապես, ուկրաինական ժողովրդի մեծ երախտավորների մի անվանացանկ, ժողովել հարուստ գրականություն և դասղեկների միջոցով աշակերտությանը պարբերաբար ծանոթացնում էր նրանց կյանքին ու գործունեությանը: Այդ ցանկում ընդգրկված են Մարքսը, Էնգելսը, Լենինը, Կամոն, Դիմիտրովը, Անտոնիո Գրամշին, Յուլիուս Ֆուչիկը, Նիկոս Բելոյաննիսը, Խոսրով Ռուզբեհը և ուրիշներ:

Ապա՝ հանուն հայրենիքի ազատության, սոցիալական առաջընթացի մարտնչած պատմական գործիչները— Սպարտակ, Կամպանելլա, Գարիբալդի, քաղաքացիական կռիվների ու Հայրենական պատերազմի հերոսները— Չապաև, Բլյուխեր, Տուխաչևսկի, Ֆաբրիցիուս, Գայ, Պանֆիլով, Գաստելլո, Օլեգ Կոշևոյ և ուրիշներ: Հիշատակվում են նաև մարդկային երջանկությանը իրենց տաղանդը նվիրաբերած մարտիկ-գրողները՝ Շևչենկո, Գերցեն, Նալբանդյան, Խրիստո Բոտև, Հայնե, Հյուգո, Գորկի, Էժեն Պոտիե, Մուսա Ջալիլ, Նիկոլայ Օստրովսկի, Յանուշ Կորչակ. ի վերջո մեծ գիտնականները՝ Ջորդանո Բրունո, Լոմոնոսով, Էվարիստ Գալուա, Յան Ամոս Կոմենսկի, Կուրչատով, Կովալյով և արվեստի ականավոր գործիչները՝ Լեոնարդո դա Վինչի, Միքել Անջելո, Ռեպին, Ռեմբրանդտ, Չայկովսկի, Գրիգ, Մոցարտ և ուրիշներ:

Բացառիկ կարևորություն ունի ըստ Սուխոմլինսկու աշակերտներին իրենց տաղանդավոր հասակակիցների պատանեկան սխրանքին հաղորդակից դարձնելը: Այդ առիթով, դեռևս 1961 թվականին, մի նամակով նա խնդրում էր իրեն ուղարկել Սերգեյ Մերգելյանի լուսանկարը: Այս ամենն արվում էր գիտակից, հասարակական պատասխանատվության խոր զգացումով համակված քաղաքացիների նոր սերունդ դաստիարակելու նպատակով, որը գլխավորն էր տաղանդավոր մանկավարժի համար:

Մշակելով կյանքի ժամանակակից պահանջներից բխող իր **դաստիարակության տեսությունը,** Սուխոմլինսկին երբեք մոռացության չէր տալիս ուսումնական առանձին առարկաների տեղն ու դերը աշակերտներին արտադրական-աշխատանքային գործունեության նախապատրաստելու մարզում և հետևողականորեն մշակում էր ինչպես առանձին առարկաների ուսուցման, նույնպես և միջառարկայական կապերի հարցերը: Առանձին եռանդով ու շահագրգռվածությամբ էր նա զբաղվում մայրենի լեզվի ու գրականության ավանդման, աշակերտների լեզվական կուլտուրայի զարգացման խնդիրներով (լինելով ուկրաինական և ռուսաց լեզվի ու գրականության մասնագետ, նա քաջատեղյակ էր դպրոցական բոլոր առարկաներին ու դրանց ավանդման մեթոդիկային): Լեզվի ու գրականության ուսուցմանը նվիրված նրա խորհրդածությունները կազմում են ամբողջական մի տեսություն, ուր օգտակար շատ բան կա նաև մեզ համար: Մայրենի լեզվի և գրականության մեր ուսուցիչների ուշադրությունն ենք հրավիրում այդ խորհրդածությունների վրա:

Անդրադառնանք նրա մանկավարժական հայացքների բուն առանցքը կազմող մի խնդրի. դա ուսուցչի վերաբերմունքն է երեխայի նկատմամբ: Ամենից առաջ նշենք, որ, ի տարբերություն վերջին տասնամյակներում դըպրոցական մանկավարժությանը վերաբերող որոշ աշխատությունների (գըլխավորապես դիսերտացիոն), որտեղ «դպրոցի փորձը» ևս հաճախ դրսևորվում է թվական և փաստական «տվյալներով», Սուխոմլինսկու բոլոր երկերում



մեր աչքի առջև երեխան է— հոգեկան ու մտավոր լիարժեք կյանքով ապրող մարդ արարածը՝ իր ուրույն զբաղմունքներով, զվարճություններով ու հոգսերով, ուրախություններով ու տառապանքներով:

Սուխոմլինսկու բոլոր գրվածքները՝ լրագրային հոդվածներ, թե ծավալուն երկեր, ներանձնական ապրումներով ու վերապրումներով հագեցած հուզական գործեր են: Այդ համայնաթափանց հուզականության գլխավոր աղբյուրը մանկավարժի մանկասիրությունն է, որը և կորով ու հմայք է հաղորդում նրա երկերին, հրապուրիչ դարձնում դրանք: Նա ինքը գրել է. «Ի՞նչն է եղել ամենագլխավորը իմ կյանքում: Առանց երկմտանքի պատասխանում եմ. **սերը երեխաների հանդեպ**»:

Այս խոսքը, բնավ իր սոսկ անձնական, սուբյեկտիվ վերաբերմունքը բնութագրող սահմանում չէ: Դրա իմաստը շատ ավելի խոր է: Դրանում արտացոլվում է Սուխոմլինսկու մանկավարժական դավանանքի բուն էությունը, քանի որ նրա, իբրև գիտնականի՝ անդադրում որոնումները, ստեղծած ընդհանրական ուսմունք, ինչպես և երեխաների հետ ունեցած ամեն մի զրույց, նախատրամադրված, պայմանավորված են այդ զորեղ, ամենամարդկային, վսեմ զգացմունքով: Այս առումով Սուխոմլինսկին շատ ու շատ բանով, նաև իր բացառիկ անձնվիրությամբ, նմանվում է լեհ հանրահռչակ մանկավարժ ու մանկագիր Յանուշ Կորչակին, որին, ի դեպ, շատ բարձր էր դասում, իր երկերում հաճախ վկայակոչելով իբրև նոր ժամանակների մեծ մանկավարժներից մեկի:

Պատահական չէ, անշուշտ, որ Սուխոմլինսկին Կոմենսկուց, Պեստալոցցիից, Ռուսսոյից, Ուշինսկուց, Կրուպսկայայից և Կորչակից հետո, այնքան մեծ ուշադրություն է հատկացրել **մանկավարժական էթիկայի** հարցերի մըշակմանը: Առավել հատկանշական է, որ նա հաճախ իր սուղ ժամանակից օրեր ու ժամեր, նույնիսկ շաբաթներ էր նվիրում **այլ վայրերում** որևէ, նույնիսկ անծանոթ երեխայի հասցված վիրավորանքի հետևանքները մեղմելուն, չեզոքացնելուն, նրա հոգեկան հավասարակշռությունը վերականգնելուն, անձամբ գնալով նամակի հետքերով (տե՛ս, օրինակ, նման մի առիթով գրված նրա նամակը, որը հետմահու հրապարակել է «Նարոդնոե օբրազովանիե» ամսագիրը, 1970, № 11):

Այս ամենից հետո զարմանալի չէ, որ նրա մոտ էին գալիս ո՛չ միայն ուսուցիչներ, այլև, երբեմն, հեռավոր վայրերում ապրող պատանիներ ու աղջիկներ՝ իրենց տանջող հարցերին պատասխան ստանալու, և միշտ արժանանում էին զգայուն վերաբերմունքի:

Մանկավարժական էթիկան, անշուշտ, գերազանցորեն դրսևորվում է աշակերտների ու ծնողների հանդեպ ուսուցչի վերաբերմունքի մեջ: Սակայն անսահման կարևոր են նաև ուսուցիչների ներքին հարաբերությունները ու հատկապես, դպրոցի ղեկավար աշխատողների և ուսուցիչների փոխհարաբերությունը: Դպրոցական կյանքի ցավոտ հարցերից մեկն է այս: Ո՞վ չգիտե՝ եթե դպրոցի դիրեկտորն իր տեղում չէ, եթե նա անզարգացած կամ, առավել ևս՝ կոպիտ ու անկիրթ մարդ է (ինչպես դեռևս պատահում է), ապա դա անտանելի մթնոլորտ է ստեղծում մանկավարժական կոլեկտիվի համար, կազմալուծող ազդեցություն ունենում դպրոցի ուսումնա-դաստիարակչական ողջ աշխատանքի վրա: Սուխոմլինսկին հանգամանորեն մշակել է դիրեկտորի և ուսուցչական կոլեկտիվի փոխհարաբերությունների հարցերը. այդ նրա մանկավարժական տեսության անկապտելի բաժինն է*: Ո՛չ միայն դպրոցի ղեկավար աշխատողների, այլև առհասարակ որևէ արտադրական-աշխատանքային կոլեկտիվի ղեկավարություն ստանձնող անձանց համար վերին աստիճանի օգտակար մի ձեռնարկ կարող է լինել նրա **Զրույցներ երիտասարդ դիրեկտորի** հետ աշխատությունը, որը ժամանակին տպագրվեց մանկավարժական մամուլում և հենց վերջերս լույս տեսավ Մոսկվայում, առանձին գրքով («Պրոսվեշչենիե» հրատարակչություն): Իր այդ աշխատության մեջ ևս Սուխոմլինսկին մեծ նշանակություն է տալիս դպրոցի դիրեկտորի անձնական օրինակին, ինչպես և **ուսուցչի** անձնական օրինակին աշակերտների համար և, առհասարակ,

** Տե՛ս մեր հոդվածն այդ մասին. «Սովետական մանկավարժ», 1966, № 6:*

իրական հատկանիշներով օժտված գաղափարական մարդու դերին:

Այս դեպքում ևս Սուխոմլինսկու համար բնորոշ է խոսքի և գործի, տեսության ու պրակտիկայի միասնությունը, որևիցէ անջրպետի բացակայությունը նրանց միջև. նա ինքն առաջին հերթին իրագործում էր բարոյա-էթիկական այն բոլոր պահանջները, որ ներկայացնում էր ուրիշներին և տեսականորեն հիմնավորում իր երկերում: Անձնական անբասիրությունը բարոյական ավելի մեծ ուժ էր հաղորդում նաև նրա տեսական դրույթներին:

Սուխոմլինսկու մանկավարժական ժառանգությունը հատուկ ուսումնասիրության առարկա է: Երեք տարի է, որ վախճանվել է նա, և արդեն լույս են տեսել նրա կյանքին նվիրված մենագրություններ, նույնիսկ վիպակներ, և դա զարմանալի չէ: Սոցիալիստական աշխատանքի հերոսի գործունեության վերջին տասնամյակը ֆիզիկական ու հոգևոր ախրանքների անընդմեջ մի շղթա է: Ահա ինչ է գրել նա 1969 թվականին «Նարոդնոե օբրազովանիե» հանդեսի խմբագրությանն ուղղած իր մի նամակում. «Իմ առողջական վիճակն այժմ այնպիսին է, որ առժամանակ անց մետաղյա այն երկու բեկորները, որ պատերազմից մնացել են կրծքումս, մի քանի միլիմետր առաջ կգնան դեպի սրտից ոչ հեռու որևէ արյունատար անոթ, և այն ժամանակ... հավատացե՛ք ինձ՝ ես կատարելապես զգոն եմ այն բանի հանդեպ, թե ինչ կլինի այն ժամանակ, թեև, երևի ավելի լավ կլիներ, եթե նախապես չիմանայի... Նոր վիրահատում չի կարելի, սիրտս չի դիմանա:

Այն ժամանակամիջոցում, որ չափել-թողել են ինձ այդ աննշան բեկորները, ուզում եմ որքան կարելի է շատ բան անել: Կաշխատեմ ուժերիս լիակատար լարումով, ավարտելու համար ամենագլխավորը— դեռևս կիսատ մի քանի գիրք... Մի քանի ավարտված ձեռագրեր ունեմ ռուսերեն— «Աշակերտական կոլեկտիվի դաստիարակման մեթոդիկա», էթիկայի ձեռնարկ ուսուցիչների համար («Ինչպես դաստիարակել կատարյալ ուսուցիչ»), «Էթիկայի քրեստոմատիա»՝ 10 մասից, ամեն մի դասարանի համար առանձին, «Մանկավարժական աշխատանքի կուլտուրան», «Գիտելիքներ և համոզմունքներ», «Թուլամիտ երեխաների հետ աշխատելու մեթոդիկա», «Դժվար երեխաներ», «Սիրտս նվիրաբերում եմ մանուկներին» (3-րդ մասը՝ պատանիների շրջանում կատարվող աշխատանքի մասին, 2-րդ մասը լույս է ընծայելու «Ռադյանսկա շկոլա» հրատարակչությունը՝ 1970 թվականին), «Մանկավարժական հակումների դաստիարակումը բարձր դասարանցիների մեջ», «Ծնողական մանկավարժություն» (երկու մասից), «Բարոյականի և գեղագիտականի միասնությունը դաստիարակչական աշխատանքում», «Մանկավարժությունն իբրև ստեղծագործություն», «Մտավոր աշխատանքի ղեկավարումը դասի ժամանակ և դպրոցի ղեկավարման պրակտիկան»... («Народное образование», 1970, № 11, стр. 52):

Հիշատակվող գրվածքներից մի քանիսն արդեն լույս են տեսել, մյուսները տպագրության են պատրաստվում: Սուխոմլինսկու երկերի ամբողջական ժողովածուն ժամանակակից մանկավարժական մտքի մեծահարուստ մի հանրագիտարան կլինի, որի մի քանի կողմերին միայն կարողացանք թռուցիկ անդրադառնալ այս հոդվածում: Հարկ է, որ ամեն մի ընթերցող, նոր սերնդի դաստիարակությամբ հետաքրքրվող բոլոր մարդիկ անմիջականորեն ծանոթանան նրա երկերին, առաջին հերթին՝ **Սիրտս նվիրաբերում եմ մանուկներին** և **Քաղաքացու ծնունդը** գրքերին, որոնց ընթերցումը ոչ միայն իմացության, այլև գեղագիտական հաճույքի աղբյուր կարող է լինել:



Ա. Ի. ՄԻԿՈՅԱՆ

# ՆԻԺՆԻ ՆՈՎԳՈՐՈԴՈՒՄ*

## ՊԱՅՔԱՐ ՕՊՈԶԻՑԻՈՆ ՖՐԱԿՑԻԱՆԵՐԻ ԵՎ ԽՄԲԱՎՈՐՈՒՄՆԵՐԻ ՄՆԱՑՈՒԿՆԵՐԻ ԴԵՄ

*Սակայն մեր ուժերը ծախսվում էին ո՛չ միայն քաղցի, ցրտի, տնտեսական փլուզման հաղթահարման, հին ձեռնարկությունների վերականգնման և նորերի կառուցման վրա...*

*Պակաս ժամանակ, եռանդ և առողջություն չէր խլում կուսակցական համագումարում ջախջախված ու գաղափարապես պսակազերծված օպոզիցիոն ֆրակցիաների մնացուկների, ինչպես նաև տեղային խմբակայնության դեմ մղվող պայքարը:*

*Հին խմբավորման «բեկորները», որոնք այն ժամանակ խրամատավորվել էին նահանգգործկոմում և նահանգային արհխորհրդում, չնայած կուսակցության XI նահանգային կոնֆերանսում կրած իրենց պարտությանը, շարունակում էին ամեն ինչում ընդդիմանալ նոր նահանգկոմին: Նրանք իրենց հակադրում էին նահանգկոմին, ամեն կերպ փորձում ձախողել մեր կողմից անցկացվող միջոցառումները, դիմում էին ամեն տեսակ գործողությունների՝ ընդհուպ մինչև կուսակցական կարգապահության ուղղակի խախտումները:*

*Օրինակ, խիստ անթույլատրելի մի այսպիսի դեպք տեղի ունեցավ նահանգգործկոմի բաժինների կոլեգաների անդամների հաստատման կապակցությամբ: Ինչպես սովորաբար, նահանգկոմը քննեց ու հավանություն տվեց այդ կոլեգաների անձնակազմին և նրանց ցուցակը հանձնեց նահանգգործկոմի հաստատմանը: Կայացավ նահանգգործկոմի ֆրակցիայի ժողովը, որտեղ նահանգկոմի առաջարկությունը հատուկ քննարկվեց: Մի քանի մարդ արտահայտվեցին առանձին թեկնածությունների դեմ, բայց ֆրակցիայի անդամների մեծամասնությունը հավանություն տվեց ցուցակին:*

*Իսկ երբ նահանգգործկոմի նիստում (որտեղ ներկա էին նաև անկուսակցականներ) սկսեցին վերջնականապես հաստատել այդ ցուցակը, գործկոմի անդամ չորս կոմունիստներ, որոնք ներկա էին եղել ֆրակցիայի ժողովին, անսպասելիորեն հանդես եկան կոլեգիաների կազմում առաջադրված մի քանի թեկնածությունների դեմ և նրանց հաստատելիս ձեռնպահ մնացին քվեարկությունից:*

*Մենք չէինք կարող անցնել կուսակցական կարգապահության այդպիսի կոպիտ խախտման կողքից:*

*Բանն այն է, որ, ըստ կուսակցության կանոնադրության, նահանգգործկոմի անդամ կոմունիստները, համաձայն չլինելով նահանգկոմի այս կամ այն որոշմանը, իրավունք ունեին հավաքելու ֆրակցիան և, քննարկելով հարցը, խնդրելու նահանգկոմին՝ վերանայելու իր որոշումը: Նահանգկոմի կողմից սկզբնական որոշումը երկրորդ անգամ քննելուց ու հաստատելուց հետո նրանք պարտավոր էին կատարել այն: Այս անգամ նրանք մոռացել էին ամեն մի կուսակցական նորմա:*

*Նահանգկոմը ո՛չ միայն հաստատեց իր սկզբնական որոշումը, այլև լրացուցիչ կերպով որոշեց գործկոմում կատարած աշխատանքից ետ կանչել առավել չափն անցրած մի քանի խմբակայինների: Այդպիսի որոշման նրանք չէին սպասում. սկսեցին աղմկել, սպառնացին բողոքել Կենտկոմին: Բայց մենք հանգիստ պատասխանեցինք, որ նրանք, իհարկե, լիակատար ի-*

* Սկիզբը տես «Լենինյան ուղիով» № 11, 1972 թ.:

Կոնֆերանսն ուշադրությամբ լսեց կուսակցության Կենտկոմի ներկայացուցիչ Զալուցկու ողջույնի ճառը։ Այդ ճառում նա տվեց երկրի ընդհանուր դրության հակիրճ և գործարար տեսությունը, պատմեց այն դժվարությունների բնույթի մասին, որ կուսակցությունը կրել է քաղաքացիական պատերազմում և կրում է այժմ՝ խաղաղ պայմաններում, նոր տնտեսական քաղաքականության անցնելիս, ինչպես և կուսակցական աշխատանքի այն նոր մեթոդների մասին, որոնք պետք է ապահովեն մեր շուտափույթ հաղթանակը։

Կենտկոմի ներկայացուցչի ելույթից հետո, կոնֆերանսի նախագահության հայտարարությամբ, ես առաջարկեցի ողջույնի հեռագիր ուղարկել ՌԿԿ Կենտկոմին, որը ղեկավարում է «...մեզ բոլոր ճակատներում՝ ինչպես քաղաքացիական պատերազմի, այնպես էլ սովի դեմ մղվող պայքարի ճակատում», և հավաստիացնել Կենտրոնական կոմիտեին, որ նա կարող է հանգիստ ու վստահ «...հենվել մեր նիժնինովգորոդյան կազմակերպության՝ որպես մի ամուր, համբերաշխ և անհաղթ ամրոցի վրա, որը ո՛չ միայն ինքը կանգուն կմնա, այլև օգնություն ցույց կտա մյուսներին, ովքեր դրա կարիքը զգան...»։

Կոնֆերանսի բոլոր պատգամավորները միահամուռ պաշտպանեցին այդ առաջարկությունը։

Պետք է ասել, որ դեռ կուսակցության XII կոնֆերանսի բացումից առաջ մեր նահանգկոմը որոշեց դիմել կուսակցության մի շարք հարևան նահանգների կոմիտեներին, առաջարկելով մասնակցել մեր կոնֆերանսին։

Կոնֆերանսը բացելիս խոսելով այդ մասին և ողջունելով մեզ մոտ եկած հյուրերին, ես առաջարկեցի նրանց ելույթները լսել կոնֆերանսի աշխատանքի հենց սկզբում, մինչև մեր նահանգկոմի հաշվետվությունը։ «Մենք պետք է փորձի փոխանակություն կատարենք, գնահատենք փոխադարձ հաջողություններն ու սխալները, սովորենք այն լավը, որ արված է հարևան նահանգներում, որպեսզի խուսափենք նրանց մոտ եղած սխալներից։ Մեր նահանգկոմների միջև փորձի այդպիսի փոխադարձ փոխանակությունն առավել ևս կարևոր է այն պատճառով— որ համառուսաստանյան կոնֆերանսներում ու համագումարներում սովորաբար քիչ բան կարելի է իմանալ առանձին կուսակցական կազմակերպությունների կոնկրետ փորձի մասին»։

Դրանից հետո կուսակցության Իվանովո-Վոզնեսենսկի, Կոստրոմայի և Ռիբինսկի նահանգային կոմիտեների ներկայացուցիչները հետաքրքրական ու բովանդակալի ելույթներ ունեցան։ Պետրոգրադի նահանգկոմի անունից մեր կոնֆերանսին ողջունեց Կրայնովը, որը դրանից քիչ առաջ Պիտերից մեզ մոտ էր եկել որպես կուսակցության գծման նահանգային հանձնաժողովի նախագահ։

Դեռևս հետաքրքրական է այն հարցերի թեկուզ պարզ թվարկումը, որոնք այն ժամանակ քննարկվում էին մեր կուսակցական կոնֆերանսում. դրանք ինքնին բավականաչափ համոզիչ կերպով վկայում են այդ ժամանակ նահանգային կուսակցական կազմակերպությանը հուզող պրոբլեմների լայն շրջանակի մասին։

Բացի նահանգկոմի հաշվետու զեկուցումից (որի մասին մի քանի խոսք կասեմ հետո), կոնֆերանսը լսեց և քննարկեց հետևյալ զեկուցումները. նահանգկոմի վերստուգիչ հանձնաժողովի գործունեության մասին, նահանգային վերահսկիչ հանձնաժողովի աշխատանքի մասին, տնտեսական քաղաքականության և նահանգում արդյունաբերության կազմակերպման մասին, պարենհարկի գանձման և ապրանքափոխանակության մասին, արհեստագործական (տնայնագործական) և գյուղատնտեսական կոոպերացիայի մասին, կուսակցական աշխատանքը գյուղում սովետական իշխանության նոր տնտեսական քաղաքականության կապակցությամբ, կուսակցության գծման ընթացքի մասին, սովյալներին օգնելու մասին։ Բացի դրանից, կոնֆերանսում կատարվեցին նահանգի ղեկավար կուսակցական օրգանների ընտրությունները։

Չեմ վերապատմի նահանգկոմի հաշվետու զեկուցման բովանդակությունը, որով հանդես եկա այդ կոնֆերանսում։ Կմատնանշեմ միայն մի քանի կոնկրետ փաստեր, որոնք բերված են այնտեղ որպես վկայություններ վերջին կոնֆերանսից հետո վեց ամսվա ընթացքում կատարված աշխատանքի բնույթի և ընդհանուր մասշտաբի վերաբերյալ։

Այն ժամանակ կարևորագույն պետական խնդիրներից մեկը հակահեղափոխության դեմ պայքարն էր։ Եվ, պետք է ասել, որ նիժնինովգորոդցիներն իրենց արժանի լուման ներդրին այդ մեծ գործում։ «X կուսակցական համագումարի կոչով,— զեկուցում էի ես կոնֆերանսի պատգամավորներին,— 24 ժամից էլ պակաս ժամանակամիջոցում նահանգկոմը մոբիլիզացրեց և Պիտեր ուղարկեց նահանգային 25 ղեկավար աշխատողների՝ Կրոնշտադտի խռովությունը ճնշելու համար... X համագումարի նիժնինովգորոդյան պատգամավորության կազմից, նույն պատգամավորության որոշմամբ, Կրոնշտադտի մոտ ուղարկվեցին չորս կոմունիստներ՝ պահանջվող երկուսի փոխարեն, ընդ որում, պետք է նշել, որ սկզբում գրեթե ամբողջ պատգամավորությունն ուզում էր կամավոր կերպով ռազմաճակատ մեկնել, բայց Նիժնիում կայուն դրությունը պահպանելու համար անհապաղ այնտեղ վերադառնալու անհրաժեշտությունը միայն պատգամավորությանը հարկադրեց սահմանափակվել չորս պատգամավորով։

Մենք հպարտությամբ կարող ենք նշել, որ առանց բացառության բոլոր նիժնինովգորոդցիները Կրոնշտադտի մոտ տեղի ունեցած ճակատամարտերի կրակում ցուցաբերեցին անհրաժեշտ տոկունություն ու անվեհերություն և մեզ մոտ վերադարձան միայն խռովության վերջնական վերացումից հետո...

Այդ օրերին նիժնինովգորոդցիների մարտական ոգին խիստ բարձր էր, Կրոնշտադտի մոտ մեկնել ցանկացողների թիվը՝ շատ մեծ։ Բավական է ասել, որ միայն կոմերիտմիությունն ու ծովայինները կազմակերպել էին մոտ հարյուր հոգուց բաղկացած ջոկատ...»։

Ամեն օր ծավալուն աշխատանք կատարելով մանրբուրժուական տարերքը սեփական նահանգում հաղթահարելու համար, մենք այն ժամանակ լրջորեն օգնեցինք մի քանի այլ նահանգների՝ բանդիտիզմի դեմ մղվող պայքարում և նրանց կուսակցական կազմակերպությունների ղեկավարությամբ ամրապնդման գործում, մեր ավելի քան հարյուր փորձված ղեկավար կուսակցական աշխատողների գործուղելով Տամբովի, Տյումենի և Սարատովի նահանգները, ինչպես և Համառուսաստանյան արտակարգ հանձնաժողովի տրամադրության տակ։

Խոսելով նահանգկոմի աշխատանքի ընդհանուր ուղղության մասին՝ ես հայտարարեցի, որ «...մեր նահանգկոմի ողջ գործունեության միջով կարմիր թելի նման անցնում է սովետական իշխանության օրգանների և մեր ողջ կուսակցության անկուսակցական բանվորա-գյուղացիական մասսաների կարիքներին ու հոգսերին մոտենալու, կուսակցության ազդեցությունը նրանց շրջանում ամրապնդելու գիծը... Այդ պատճառով նահանգկոմը մեծ ուշադրություն է նվիրել նահանգում կատարվող սովետական, արհեստակցական և տնտեսական աշխատանքի ղեկավարմանը»։

Հիշում եմ՝ մենք այն ժամանակ շատ էինք զբաղվում նոր ղեկավար կուսակցական կադրերի առաջքաշման ու դաստիարակման հարցերով, մի բան, որ առանձնահատուկ իմաստ ուներ, որովհետև մեզնից շարունակ շնորհալի շատ աշխատողներ էին վերցնում մյուս նահանգներում ղեկավար աշխատանք կատարելու համար։ Որպես կանոն, մենք դրան այնքան էլ չէինք դիմադրում, հասկանալով, որ կուսակցական աշխատանքի ամրապնդումն անհրաժեշտ է ո՛չ միայն մեզ մոտ՝ «տանը», այլև մյուս նահանգներում։ Այդ պատճառով շարունակ նորանոր բանվորների, ինչպես նաև գավառային ու շրջանային աշխատողների նահանգային մասշտաբի ղեկավար աշխատանքի առաջ քաշելու պրոցեսն այդ տարիներին մեզ մոտ շատ բուռն էր։ «Նահանգգործկոմի հինգ անդամներից չորսին այդ ժամանակամիջոցում մենք վերցրել էինք անմիջականորեն գավառային ու շրջանային աշխատանքից։ Գավառային աշխատողների հաշվին ամբողջովին նորացվել է նահանգային կինբաժնի ղեկավարությունը, նահանգպարենկոմի կոլեգիայի կազմում ընդգրկվել են երկու բանվորներ։ Նույնն էլ կատարված է նահանգգործկոմի սոցիալական ապահովության նահանգային բաժնում, կոմունալ և այլ բաժիններում...»։

Կուսակցական կոնֆերանսին մանրամասն ու հանգամանորեն հաղորդեցի այն ժամանակ մեզ մոտ հենց նոր ստեղծված նահանգային տնտեսական խորհրդակցության (ՆԱՀԱՆԳՏՆՏԽՈՐՀ), նահանգցանքկոմի աշխատանքի մասին։ Պատմեցի նահանգում նոր տնտեսական քաղաքականության իրականացման ղեկավարման (այն ժամանակ դա մեր կենտրոնական խնդիրն էր), պարենհարկի գանձման ու ապրանքափոխանակության, սովետների աշխատանքի ղեկավարման և նրանց մեջ անկուսակցական բանվորներին ու գյուղացիներին լայնորեն ներգրավելու մասին, մեր կոոպերացիայի վիճակի, բանակում, արհմիություններում, կոմերիտմիության մեջ, կանանց և ազգային փոքրամասնությունների շրջանում կատարված աշխատանքի, մասսայական քաղդաստիարակչական աշխատանքի, տեղերի հետ մեր կապերի և շատ այլ հարցերի մասին...

Իսկ զեկուցման վերջում ասացի, որ «Նիժնի Նովգորոդի կուսակցական կազմակերպությունը հասել է գործարար և հաջող աշխատանքի համար անհրաժեշտ համախմբվածության։ Մենք շատ բան ենք արել մեր կազմակերպությունն ամրապնդելու իմաստով... Մեր աշխատանքում համերաշխությունը խախտող հիվանդագին երևույթները, դատելով ըստ ամենայնի, վերացված են... Հուսով ենք,— հայտարարեցի ես,— որ համերաշխ լինելու մեր ձգտումը կհաղթանակի, և մենք մեր կազմակերպությունից բանվոր դասակարգի համար կստեղծենք ամուր հենարան՝ մեր նահանգի բանվորների ու գյուղացիների հզոր ու միասնական, համախմբված կոմունիստական կազմակերպություն»։

Կուսակցության շարքերի՝ սկսված ստուգման խնդիրների վերաբերյալ զեկուցմամբ կոնֆերանսում հանդես եկավ Զալուցկին՝ կուսակցության ստուգման, վերանայման և զտման կենտրոնական հանձնաժողովի նախագահը, իսկ այդ նույն հարցի վերաբերյալ հարակից զեկուցմամբ՝ Նիժնի Նովգորոդի նահանգային հանձնաժողովի նախագահ Կրայնովը։ Նշելով, որ ստուգումը մեզ մոտ քիչ ավելի շուտ է սկսվել, քան մյուս նա-

հանգներում, և որ այդ պատճառով մենք չենք կարողացել օգտվել նրանց փորձից, նա հաղորդեց նահանգային հանձնաժողովի աշխատանքի նախնական արդյունքների մասին։

Կուսակցության շարքերի ստուգման, վերանայման և զտման հարցը քննարկվել էր դեռևս կուսակցության X համագումարում։

Արդեն այն ժամանակ պարզ էր դառնում, որ հին ինտելիգենցիայի, ինչպես նաև մենշևիկների ու էսեռների շրջանում սկսված կազմալուծման հետևանքով այդ միջավայրից «անպետք տարրերի» բավական մեծ ներհոս է տեղի ունեցել մեր կուսակցության մեջ։ Ինչպես նշել է X համագումարը, կուսակցության մեջ է «...մտել մանրբուրժուական և կոմունիստական ոգով չհղկված քաղքենիական-ինտելիգենտական ու կիսաինտելիգենտական տարրերի որոշ մասը»[1]։ Նրանք մեզ մոտ էին եկել անցյալի բեռով՝ իրենց հին, դեռևս չհաղթահարված հայացքներով ու համոզմունքներով, աշխատանքի իրենց ոճով ու մեթոդներով, մանրբուրժուական սովորույթներով ու բարքերով...

Ընդհանրապես պետք է ասել, որ այն պահից, երբ մեր կուսակցությունը կառավարական դարձավ և մեծ հաղթանակներ տարավ քաղաքացիական պատերազմի տարիներին, խորթ, կարիերիստական տարրերն ավելի ու ավելի սկսեցին խցկվել նրա շարքերը։

Պատահական չէ, որ արդեն ՆԷՊ-ի հենց ռսկըզբնական ժամանակաշրջանում «պատահական» կուսակցականների միջավայրում, որոնք չէին հասկացել նոր տնտեսական քաղաքականությունը, իսկ ավելի ճիշտ՝ դրա մեջ տեսնում էին «վերադարձ» դեպի մասնավոր սեփականությունը, բավական լայնորեն սկսեցին երևան գալ այնպիսի նողկալի երևույթներ, ինչպես՝ ընչաքաղցությունը, շարչիությունը, կարիերիզմը, կտրվածությունը մասսաներից և աշխատավորների շահերի ու պահանջմունքների արհամարհումը։ Զարգացավ անձնական հարստացման ու բարեկեցության տենչ՝ դրան անխուսափելիորեն ուղեկցող չարաշահումներով ու բարոյական քայքայմամբ...

Ահա թե ինչու կուսակցության X համագումարի որոշումներում արդեն խնդիր դրվեց «...կուսակցությունը մաքրել ոչ-կոմունիստական տարրերից»[2] և «կուսակցությունը պահպանել անպետք տարրերով աղբոտվելուց»[3]։

1921 թվականի ամռանն ստեղծվեց կուսակցության ստուգման, վերանայման ու զտման կենտրոնական հանձնաժողով, ինչպես նաև համանման նահանգային հանձնաժողովներ, որոնք անկախ էին տեղական կուսակցական օրգաններից։

ՌԿ(բ)Կ Կենտկոմի՝ կուսակցական բոլոր կազմակերպություններին ուղղված «Կուսակցության զտման մասին» դիմումի մեջ, որը հրապարակվել է 1921 թվականի հուլիսին, ասվում էր. «Չկա ավելի բարձր կոչում, քան կոմունիստ-հեղափոխականի, Ռուսաստանի կոմունիստական կուսակցության անդամի կոչումը։ Հասնենք այն բանին, որպեսզի այդ կոչումը կրեն միայն նրանք, ովքեր իրոք արժանի են դրան»[4]։

Կուսակցության Կենտկոմը և անձամբ Լենինն ուշադիր հետևում էին այդ աշխատանքի ընթացքին, հաճախ կանխելով տեղական հանձնաժողովների գործունեության մեջ հնարավոր խոտորումները, ձգտելով հասնել այն բանին, որ նրանք առավելագույն օբյեկտիվություն և խիստ կան կուսակցականություն ցուցաբերեն յուրաքանչյուր կոմունիստի ճակատագրի հարցը լուծելիս։

Լենինն առանձնահատուկ նշանակություն էր տալիս զտման գործին աշխատավորների լայն մասսաների մասնակցությանը։ «Կուսակցության զտման մասին» հոդվածում (1921 թվականի սեպտեմբեր) նա հատկապես ընդգծել է, թե որքան կարևոր է կուսակցության շարքերն ստուգելիս հենվել անկուսակցական բանվորական մասսաների, կոմունիստների վերաբերյալ նրանց կարծիքների վրա։ Նրանք, իհարկե, կարող են և սխալվել, գրել է Լենինը, «բայց մարդկանց գնահատելու, «խցկվածներին», «կոմիսարացածներին», «բյուրոկրատացածներին» բացասաբար վերաբերվելու գործում անկուսակցական պրոլետարական մասսայի ցուցումները, հաճախ նաև անկուսակցական գյուղացիական մասսայի ցուցումները, վերին աստիճանի արժեքավոր են»[5]։

...Անդրադառնալով մեր կոնֆերանսին, ուզում եմ ասել, որ այնտեղ շատ բարի խոսքեր ասվեցին նահանգկոմի աշխատանքի մասին։ Իհարկե, մեզ հիմնավորապես քննադատեցին, քննադատեցին գործարար կերպով, բայց բոլոր, նույնիսկ ամենաքննադատական ելույթների ընդհանուր տոնը կրում էր բարյացակամ բնույթ։

Համերաշխ անցան նաև նահանգկոմի նոր կազմի ընտրությունները։ Նրա մեջ մտան 20 բանվոր, 4 ինտելիգենտ և մեկ գյուղացի։ Նահանգկոմի կորիզը կազմեցին ամենախոշոր շրջանների և գավառային կազմակերպությունների ներկայացուցիչները։

(Շարունակելի)

Թարգմ. Վ. ԱՎԱԳՅԱՆԸ

[1] КПСС в резолюциях и решениях съездов, конференций и пленумов ЦК, М., 1970, изд. 8-е, стр. 211.

[2] Նույն տեղը:

[3] Նույն տեղը:

[4] Նույն տեղը, էջ 277 :

[5] В. И. Ленин. ПСС, т. 44, стр. 123.

ԵՐԻՏԱՍԱՐԴ ԳԻՏԱԿԱՆ ԱՇԽԱՏՈՂԻ ամբիոն

# ԳԻՏԱԿԱՆ ՏԵՍՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱՌԱՐԿԱՅԱԿԱՆ ԲՆԱԳԱՎԱՌՆԵՐԻ ՀԻԵՐԱՐԽԻԱՅԻ ՄԱՍԻՆ

Արդի գիտատեխնիկական հեղափոխությունը մի ամբողջ շարք գիտատեսական պրոբլեմներ է դնում ոչ միայն կոնկրետ գիտությունների, այլև փիլիսոփայության առջև։ Մեր կարծիքով, մարքս-լենինյան փիլիսոփայության լուսաբանմանը ենթակա գլխավոր պրոբլեմներից մեկը արդի գիտական իմացության մեջ դիալեկտիկայի ներթափանցման ուղիների վերլուծությունն է, գիտական տեսությունների և դիալեկտիկայի միջև գոյություն ունեցող փոխհարաբերության արդի վիճակի պարզաբանումը։ Մենք կարծում ենք, որ ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումները, ՍՄԿԿ Կենտկոմի «Հասարակական գիտությունների հետագա զարգացման և կոմունիստական շինարարության մեջ դրանց դերի բարձրացման միջոցառումների մասին» որոշումը մեզ կողմնորոշում են փիլիսոփայորեն իմաստավորելու արդի գիտատեխնիկական հեղափոխության արդյունքները։ Այդ տեսակետից մենք ուզում ենք այստեղ լուսաբանել գիտական տեսությունների և դրանց արտացոլման առարկայական բնագավառների արդի ըմբռնման հետ կապված մի քանի հարցեր։

Ինչպես հայտնի է, մատերիալիզմի պատմության մեջ ցայտուն կերպով դրսևորվել են արտացոլման էության բացահայտման երկու մոտեցումներ։ Կ. Մարքսը այդ մոտեցումները բնութագրել է հետևյալ կերպ. «Նախորդ ամբողջ մատերիալիզմի— ներառյալ նաև Ֆոյերբախյանը— գլխավոր թերությունն այն է, որ առարկան, իրականությունը, զգայականությունը քննարկվում է միայն օբյեկտի ձևով կամ հայեցողության ձևով և ոչ թե որպես մարդկային զգայական գործունեություն, պրակտիկա, ոչ սուբյեկտիվորեն» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հ. 2, էջ 517)։

Կ. Մարքսն այստեղ, ըստ էության, խոսում է արտացոլման պասիվ և ակտիվ բնույթի միջև եղած էական տարբերության մասին։ Օրինակ, արդի ֆիզիկայում ռեալությունը դրսևորվում է ոչ թե իբրև պարզապես մարդուց անկախ օբյեկտ, որը հին մատերիալիզմի մեջ բնութագրում էր արտացոլումը, այլև որպես մարդկային գործունեության արդյունք, այսինքն՝ արդի ֆիզիկայի առարկայական բնագավառի մեջ մտնում է նաև այն, որն ստեղծվում է օբյեկտ-սուբյեկտ հարաբերության ակտիվության հետևանքով։

Հենց այդ էլ ընդգծում է Մարքսը և արտացոլման հենց այդպիսի ըմ-
բռնումն էլ կազմում է մարքսիստական իմացաբանության էությունը։ Ինչ-
պե՞ս է դրսևորվում արտացոլման այս հատկությունը ձևական տրամաբա-
նության և մաթեմատիկայի մեջ։ Այն փաստը, որ արդի ձևական տրամաբա-
նության և մաթեմատիկայի մեջ ստույգ պնդումներն իրենց վերացականության
բարձր մակարդակի շնորհիվ, որպես կանոն, անմիջական համահամեմատա-
կան չունեն օբյեկտիվ իրականության մեջ, վկայում է, որ արդի մաթեմատի-
կայի ու ձևական տրամաբանության առարկայական բնագավառն ընդհանրա-
պես հանդես է գալիս որպես ճանաչող մարդու ակտիվ ստեղծագործական
գործունեության արդյունք, այսինքն՝ այդ առարկայական բնագավառը վերց-
վում է սուբյեկտիվորեն։ Սակայն դա նշանակո՞ւմ է, արդյոք, որ այսպես ըմ-
բռնվող առարկայական բնագավառը կրում է ապրիորի բնույթ։ Մենք կար-
ծում ենք, որ և՛ այո, և՛ ոչ։ Այո՝ այն իմաստով, որ այդ առարկայական բնա-
գավառն ու դրանից բխող հետևանքներն ինքնին վերցրած և իրենց գենեզիսից
դուրս, որպես կանոն, անմիջական համահամեմատականներ չունեն օբյեկտիվ
իրականության մեջ, և ոչ՝ այն իմաստով, որ այստեղ ըմբռնվող առարկայա-
կան բնագավառն ու նրա հետևանքները, վերջին հաշվով, հենվում են օբյեկ-
տիվ իրականության և նրա կապերի վրա։

Մենք կանտյան առումով ապրիորիզմ չենք ընդունում։ Բայց ինչպե՞ս
հասկանալ «վերջին հաշվով» ֆրազը։ Մենք կարծում ենք, որ արդի մաթեմա-
տիկայի ու ձևական տրամաբանության դրույթները վերջին հաշվով հենվում
են օբյեկտիվ իրականության վրա ոչ թե այն առումով, որ ինքնին վերցրած
այդ դրույթների հետ վաղ թե ուշ համապատասխանության մեջ կդրվի օբյեկ-
տիվ իրականության այս կամ այն նյութական հարաբերությունը, այլ այն
առումով, որ արդի մաթեմատիկայի և ձևական տրամաբանության դրույթները,
որպես կանոն, տրամաբանորեն ճիշտ և գիտական բարդ, բազմաստիճան ընդ-
հանրացումների հետևանք են, որի սկզբնական քայլերն անալոգներ ունեն
օբյեկտիվ իրականության նյութական հարաբերությունների մեջ։ Որպես օրի-
նակ կարելի է բերել n-չափանի երկրաչափությունը։

Ինչպես հայտնի է, ռեալ ֆիզիկական տարածությունը եռաչափ է, ուստի
և, սկզբունքորեն, երբեք չեն գտնվի նյութական այնպիսի հարաբերություններ,
որոնք կարելի լիներ համապատասխանության մեջ դնել n-չափանի երկրաչա-
փության ($n>3$) պնդումների հետ։ Սակայն դրա հետ միասին, այդ երկրաչա-
փության դրույթները առաջացել են գիտական ընդհանրացումների շնորհիվ,
որոնց հիմքում ընկած է ռեալ ֆիզիկական տարածության երկրաչափությունը,
և ունեն գիտական մեծ արժեք։ Նույնն էլ տեղի ունի կոմպլեքս թվերի տեսու-
թյան մեջ, որոնք, ըստ Էնգելսի, ազատ ստեղծագործության արդյունք են և
որպես այդպիսիք՝ համահամեմատական չունեն օբյեկտիվ իրականության
մեջ, չնայած այն բանին, որ կոմպլեքս փոփոխականի ֆունկցիաների տեսու-
թյունը չափազանց հարուստ է իր պրակտիկ կիրառություններով։

Համանման օրինակներ կարելի է բերել նաև ձևական տրամաբանության
բնագավառից։ Օրինակ, բազմարժեք և անվերջարժեք տրամաբանական հաշ-
վումների կամ պրեդիկատների տրամաբանության բարձրագույն բաժինների
առարկայական բնագավառներ են հանդիսանում տրամաբանական կապերի
այնպիսի բազմություններ, որոնք անմիջական անալոգներ չունեն օբյեկտիվ
իրականության մեջ։ Արդի գիտության վերացական բաժիններից առնված



այդպիսի օրինակների թիվը ուզածի չափ կարելի է ավելացնել։ Այսպիսով, n-չափանի երկրաչափությունը ($n>3$), կոմպլեքսային վերլուծությունը, արդի ձևական տրամաբանության բարձրագույն բաժինները և ժամանակակից գիտության մյուս վերացական բաժինները մարդու կողմից կառուցվող տեսությունների այնպիսի օրինակներ են, որոնք օբյեկտ-սուբյեկտ հարաբերության ակտիվ բնույթի արդյունք են։ Իհարկե, ամեն մի գիտական տեսություն ունի իր սուբյեկտիվ կողմը, որը ցույց է տալիս հիշյալ տեսության մեջ սուբյեկտի խաղացած ակտիվ դերը։ Արտացոլման այդպիսի բնույթը բնորոշ է ընդհանրապես գիտության զարգացման վերացական մակարդակի համար, այսինքն՝ այստեղ ավելի շատ մարդն է կառուցում, քան անմիջականորեն բխեցվում է օբյեկտիվ իրականությունից։

Կ. Մարքսի նշած արտացոլման հենց այդպիսի բնույթն է, որ հնարավորություն է տալիս բացահայտելու իրականության այն ամենախոր կապերը, որոնք չեն գտնվում երևույթների մակերևույթին, ուստի և չեն կարող ընկալվել անմիջական արտացոլմամբ, որն այնքան բնորոշ էր հին մատերիալիզմին։ Այդպիսի արտացոլման ճանապարհին մենք ստանում ենք այնպիսի ճշմարտություններ, որոնք ժամանակի ընթացքում համապատասխանում են իրականության որոշակի նյութական հարաբերություններին, ինչպես նաև այնպիսի ճշմարտություններ, որոնք սկզբունքորեն չեն կարող անմիջական անալոգ ունենալ իրականության մեջ։ Թե մեկ, թե մյուս ճշմարտությունները մի կողմ չեն ընկած գիտության զարգացման մայրուղուց և բոլորն էլ, վերջին հաշվով, նպաստում են իրականության ադեկվատ արտացոլմանը։ Ամեն մի գիտական տեսության առարկայական բնագավառը հանդես է գալիս որպես օբյեկտիվ իրականության բոլոր կապերի բազմության մի որոշ ենթաբազմություն։

Վերը շարադրվածի լույսի տակ այս ընդհանուր բնույթը պահանջում է որոշ ճշգրտում։ Հիրավի, արտացոլման արդի մատերիալիստական տեսությունը օբյեկտ-սուբյեկտ հարաբերության ակտիվ բնույթի շնորհիվ վերացական գիտական տեսությունների առարկայական բնագավառ է համարում ոչ թե բուն օբյեկտիվ իրականության նյութական հարաբերությունների անմիջական տվյալների ամբողջությունը, այլ կապերի այն բազմությունը, որն ստեղծում է մարդն արտացոլման բարձր աստիճանում։ Սրանից հետևում է, որ գիտության զարգացման արդի էտապում պետք է խոսել առարկայական բնագավառների յուրահատուկ հիերարխիայի մասին։ Այդ հիերարխիայի սկզբում գտնվում է բուն օբյեկտիվ իրականությունը, իսկ այնուհետև գալիս են արդի գիտության վերացական բաժինների՝ արտացոլման պրոցեսում, օբյեկտ-սուբյեկտ հարաբերության ակտիվության շնորհիվ, մարդու կողմից ստեղծվող առարկայական բնագավառները։ Որքան բարձր է տվյալ գիտական տեսության վերացականության մակարդակը, այնքան բուն օբյեկտիվ իրականությունից ավելի հեռու է նրա առարկայական բնագավառը։ Այդ տենդենցներն առանձնապես բնորոշ են մաթեմատիկայի ու ձևական տրամաբանության ժամանակակից բաժինների համար և դրանք հետագայում, մաթեմատիկացման ու ձևականացման պրոցեսների զարգացման, այսինքն՝ գիտության զարգացման վերացական կողմի ուժեղացման կապակցությամբ ավելի կաճեն ամբողջ գիտության համար։

Սակայն այս բոլորից հետևո՞ւմ է արդյոք, որ այսուհետև գիտությունն այլևս չի ուսումնասիրի բուն օբյեկտիվ իրականությունը։ Ո՛չ, չի հետևում և

տճա թե ինչու։ Առարկայական բնագավառների վերը նշված ամբողջ հիերար-
խիան կառուցվում է բնության և հասարակության մեջ գոյություն ունեցող
նյութական կապերի գիտական ընդհանրացումների ճանապարհին։ Այդ պատ-
ճառով էլ գիտությունը, վերջին հաշվով, միշտ ուսումնասիրել, ուսումնասի-
րում և ուսումնասիրելու է օբյեկտիվ իրականության նյութական առնչություն-
ները։ Բայց դրա հետ միասին առարկայական բնագավառների հիերարխիան
տեսնելու և հաշվի առնելու կարողությունը, դրանց ծագման ուղիների ըմբռ-
նումն օգնում են ճիշտ հասկանալու արդի գիտության վերացական բաժինների
առարկայական բնագավառների մատերիալիստական բնույթը։

Գիտական տեսությունների առարկայական բնագավառների հիերարխիան
կարելի է մեկնաբանել նաև որպես նյութի կազմակերպման մակարդակների
բարդացման հետևանք, որն իր հերթին իմացության հետագա խորացումը
դարձնում է անհրաժեշտ, առաջադրելով իմացության միջոցների վերացակա-
նության մակարդակի բարձրացում։ Նշված առարկայական բնագավառի կազ-
մակերպման մակարդակին՝ այս կամ այն աստիճանի բարդությունը կունենա
նաև օրինաչափությունների այն ամբողջությունը, որը նկարագրում է այդ
առարկայական բնագավառի կառուցվածքային կապերը։ Օրինակ, իր կազմա-
կերպման ատոմա-մոլեկուլային մակարդակում զննվող ֆիզիկական նյութը
նկարագրվում է օրինաչափությունների ավելի բարդ ամբողջությամբ, քան իր
կազմակերպման մակրոսկոպիկական մակարդակում զննվող նույն նյութը։
Եթե վերցնենք հասարակական մատերիան, ապա նախակապիտալիստական
հասարակական-տնտեսական ֆորմացիաներին համապատասխանող նրա կազ-
մակերպման մակարդակը էապես ավելի պարզ է, քան կապիտալիստական
ֆորմացիային համապատասխանող հասարակական կազմակերպման մակար-
դակը, իսկ վերջինն ավելի պարզ է, քան կոմունիստական ֆորմացիային
համապատասխանող հասարակական կազմակերպման մակարդակը։

Եթե օբյեկտիվ իրականությունը դիտենք որպես ունիվերսալ առարկայա-
կան բնագավառի օրինակ, ապա կստացվի, որ գոյություն չունի մի այնպիսի
ունիվերսալ գիտական տեսություն, որի առարկայական բնագավառը կազմեր
իրականության ԲՈԼՈՐ կապերի բազմությունը։ Նույնիսկ բոլոր հայտնի և հնա-
րավոր գիտական ուղղությունների ամբողջությունը չի կարող լիովին սպառել
մի այնպիսի ունիվերսալ առարկայական բնագավառի իմացություն, ինչպի-
սին օբյեկտիվ իրականությունն է։

Բայց դրա հետ միասին գոյություն ունեն սկզբունքներ, որոնք կրում են
գիտական և ունիվերսալ բնույթ, այսինքն՝ գործում են օբյեկտիվ և սուբյեկ-
տիվ իրականության բոլոր երևույթներում ու պրոցեսներում։ Մենք նկատի
ունենք մարքսիստական դիալեկտիկայի օրենքներն ու կատեգորիաները,
այսինքն՝ մարքսիզմ-լենինիզմի իմացաբանությունը։

Սակայն այդ տեսությունը ևս ունիվերսալ բնույթ չի կրում այն իմաստով,
որ նրանում արտացոլված են ոչ թե օբյեկտիվ իրականության ԲՈԼՈՐ կապերը,
այլ միայն բոլոր կապերի բազմության այն ենթաբազմությունը, որը բնութա-
գրում է իրականության շարժման ու փոփոխման առավել ընդհանուր օրենք-
ները։ Այդ առումով էլ մարքսիստական իմացաբանությունը հանդես է գալիս
որպես իրականության արտացոլման ունիվերսալ տեսություն։ Օբյեկտիվ իրա-
կանության այս կամ այն ֆրագմենտը, այսինքն՝ իրականության բոլոր կա-



պերի բազմության այս կամ այն ենթաբազմությունն արտացոլված է կոնկրետ
գիտական տեսություններում։

Մենք գտնում ենք, որ ամեն մի կոնկրետ գիտական տեսություն ունի ար-
տացոլման իր սեփական միջոցները, որոնց օգնությամբ իրացնում է արտա-
ցոլման իր ֆունկցիան, այսինքն՝ հանդես է գալիս ոչ թե որպես իմացաբա-
նական տեսություն, այլ որպես իր առարկայական բնագավառի յուրահատկու-
թյան արտացոլման տեսություն։ Հասկանալի է, որ կոնկրետ գիտական տեսու-
թյան արտացոլման ֆունկցիաներն ամբողջությամբ և լիովին ենթարկվում են
դիալեկտիկայի ընդհանուր սկզբունքներին։ Մենք հնարավոր չենք համարում
ավելի մանրամասնորեն վերլուծելու այս հարցը, քանի որ դա մեզ կհեռացներ
այստեղ քննարկվող թեմայից։ Այստեղից բխում է հետևյալ եզրակացությու-
նը. գոյություն չունեն արտացոլման այնպիսի միջոցներ, որոնք պիտանի լի-
նեին ամեն մի առարկայական բնագավառի ԲՈԼՈՐ յուրահատկությունների ար-
տացոլման համար։ Արտացոլման միջոցների յուրաքանչյուր կոնկրետ ամբող-
ջություն սերտորեն կապված է կոնկրետ առարկայական բնագավառի յուրա-
հատկության հետ, որն այդ առարկայական բնագավառի առավել ընդհանուր
կապերի արտացոլման արդյունք է։ Նույնիսկ մարքսիստական իմացաբանու-
թյան արտացոլման միջոցներն ինքնին չեն սպառում ամեն մի գիտական տե-
սության արտացոլման միջոցները, որովհետև մարքսիստական իմացաբանու-
թյան մեջ վերարտադրված են ամբողջ օբյեկտիվ իրականության շարժման ու
փոփոխման միայն ամենաընդհանուր սկզբունքները։

Վերևում մենք ցույց տվինք, որ գիտական տեսությունների կազմակերպ-
ման մակարդակի բարդացումը գիտության ինտենսիվ զարգացման, այսինքն՝
օբյեկտ-սուբյեկտ հարաբերության չափազանց ակտիվ բնույթի հետևանք է։
Ուստի բնական է ենթադրել, որ առարկայական բնագավառի բարդացումը
պետք է որևէ կերպ անդրադառնա նաև արտացոլման միջոցների բնույթի վրա։
Իսկապես, քանի որ գիտական տեսության արտացոլման միջոցները ինչ-որ
ապրիորի դրույթներ չեն, այլ, վերջին հաշվով, օբյեկտիվ բովանդակություն
ունեցող սկզբունքներ, այսինքն՝ հանդես են գալիս որպես որոշակի, տվյալ
առարկայական բնագավառի համար ընդհանուր կապերի արտացոլում, ապա,
հետևաբար, այդ առարկայական բնագավառի կազմակերպման մակարդակի
բարդացման հետ կբարդանան նաև նրա բոլոր կապերը, այդ թվում և այն կա-
պերը, որոնք մենք առանձնացնում և անվանում ենք արտացոլման միջոցներ։
Ընդ որում կբարձրանա նաև բուն գիտական տեսության կազմակերպման և
արտացոլման նրա միջոցների մակարդակը, որոնց տակ մենք հասկանում ենք
ավելի նուրբ գիտական տեսություն և, համապատասխանորեն, արտացոլման
ավելի նուրբ միջոցների կառուցումը, որոնք հնարավորություն կտան ուսում-
նասիրել առարկայական բնագավառի ավելի խոր կապերը։

Կարճ ասած՝ գիտական տեսության բարդացման հետ հարստանում են
նաև արտացոլման նրա միջոցները։ Այս պրոցեսը շոշափում է նաև մարքս-լե-
նինյան իմացաբանությունը, որը նույնպես հարստանում է նոր սկզբունքներով
ու դրույթներով։ Այդ սկզբունքներն ու դրույթները կազմում են դիալեկտիկա-
կան արտացոլման էությունը, որի պրոցեսում գիտական իմացությունը, ըստ
Վ. Ի. Լենինի, ընթանում է դեպի բացարձակ ճշմարտության սահմանումը
պատմականորեն անցողիկ բնույթ ունեցող հարաբերական ճշմարտությունների
բացահայտման միջոցով։ Վ. Ի. Լենինի այս սկզբունքային դրույթը, մեր կար-

*ծիքով, հնարավորություն է տալիս փորձ անել ըմբռնելու դիալեկտիկական արտացոլման՝ որպես ամբողջության, ներքին կառուցվածքը։*

*Եթե արտացոլման պրոցեսում գիտական իմացությունը գնում է դեպի բացարձակ ճշմարտությունը բազմաթիվ հարաբերական ճշմարտությունների բացահայտման միջոցով, ապա, հետևաբար, հիմքեր կան ենթադրելու, որ գոյություն ունեն այդ արտացոլման տարատեսակներ, որոնց պրոցեսում հասու ենք լինում այդ հարաբերական ճշմարտություններին։*

*Գիտական ամեն մի կոնկրետ թեորիա արտացոլելով իր առարկայական բնագավառի յուրահատուկ կապերը, դրանով իսկ բացահայտում է հարաբերական ճշմարտություններ։ Դիալեկտիկան նույնպես բացահայտում է հարաբերական ճշմարտությունները։ Սակայն դիալեկտիկայի և կոնկրետ գիտությունների այդ բացահայտությունների միջև կա էական տարբերություն։ Այն ժամանակ, երբ դիալեկտիկայի դրույթները աշխարհայացքային են, գիտության դրույթները վերաբերվում են լոկ իրենց առարկայական բնագավառին։*

*Սակայն այստեղ հարկ կա նկատել հետևյալը։ Եթե մարքսիստական իմացաբանությունն արտացոլման ունիվերսալ տեսություն է, ապա այստեղից բնավ չի հետևում, թե արտացոլման ամեն մի գիտական տեսություն նույնպես իմացաբանական տեսություն է։ Այսպիսով, մենք գտնում ենք, որ կոնկրետ գիտական տեսությունը՝ որպես կոնկրետ հարաբերական արտացոլման տեսություն, իմացաբանական տեսություն չէ, այլ իր առարկայական բնագավառի յուրահատկության արտացոլման տեսություն և ամբողջովին ենթարկվում է դիալեկտիկայի սկզբունքներին։*

*Որոշակի արտացոլման տեսության համար որոշիչ է առարկայական բնագավառի կապերի կոպտացման ու պարզեցման այն աստիճանը, որն այդ արտացոլման ժամանակ ենթադրվում է։ Եթե առարկայական բնագավառի կոպտացման ու պարզեցման մակարդակը փոխվում է, ապա դա, որպես կանոն, նշանակում է, որ մենք մնում ենք միևնույն գիտական տեսության սահմաններում, բայց այդ դեպքում փոխվում է տվյալ առարկայական բնագավառի կապերի իմացության խորությունը։*

*Մենք կարծում ենք, որ մեծ պարզեցում կլիներ արտացոլման պրոցեսը պատկերացնել այնպես, թե իբր որևէ բարդ երևույթի կամ որոշ առարկայական բնագավառի յուրահատկության արտացոլման ժամանակ մենք գործ ունենք միայն տվյալ կոնկրետ արտացոլման հետ։ Իրականում բարդ երևույթների արտացոլման պրոցեսը միշտ էլ կապված է բազմատեսակ արտացոլումների, նրանց անցումների, այսինքն՝ այդ հարաբերական արտացոլումների դիալեկտիկական միասնության հետ։ Դա պայմանավորված է նրանով, որ բարդ երևույթների արտացոլման պրոցեսը կապված է ոչ միայն այդ երևույթների կոպտացման ու պարզեցման աստիճանի տվյալ ֆիքսված մակարդակի, այլև արտացոլման պրոցեսում առաջացող բազմաթիվ այդպիսի մակարդակների, դրանց ընթացքի և փոփոխման հետ։ Այսպիսով, արտացոլման միջոցների և թեորիաների այդ շարժունությունը պայմանավորված է արտացոլման բուն օբյեկտի բարդ շարժմամբ։*

*Սրանք են այն նկատառումները, որ մենք հարկ համարեցինք արտահայտել այստեղ գիտական տեսությունների առարկայական բնագավառների ու դրանց արտացոլման կապակցությամբ։*

Գ. Հ. ԳԱԲՐԻԵԼՅԱՆ

# ՓԻԼԻՍՈՓԱՅՈՒԹՅԱՆ ԱՌԱՐԿԱՅԻ ՏՐԱՄԱԲԱՆԱԿԱՆ ՊՈԶԻՏԻՎԻՍՏԱԿԱՆ ԸՄԲՌՆՄԱՆ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆԸ

Պատմականորեն գոյություն ունեցող զանազան փիլիսոփայական սիստեմների առկայությունը վկայում է, որ բացակայել է փիլիսոփայության առարկայի միանշանակ ըմբռնումը։ Սակայն այդ առարկայի բազմաթիվ սահմանումներից մեզ առանձնապես հետաքրքրում է տվյալ պրոբլեմի տրամաբանական պոզիտիվիստական ըմբռնումը։ Իսկ քանի որ տրամաբանական պոզիտիվիստները փիլիսոփայության առարկան սահմանելիս և հատկապես կլասիկ փիլիսոփայությունը գնահատելիս որոշ իմաստով առաջնորդվում են նույն սկզբունքներով, ինչ որ Դավիթ Հյումը (թեև այս պրոբլեմը նրանց մոտ ստանում է յուրահատուկ լուծում)։ Ուստի, անհրաժեշտ է պարզել այն հարցը, թե որն է տվյալ պրոբլեմի հյումյան ըմբռնման էությունը։ Արդյոք Հյումն ընդունեց փիլիսոփայության հնարավորությունը, թե ոչ։

Այս հարցին դժվար չէ պատասխանել՝ ուսումնասիրելով նրա «Տրակտատ մարդկային բնության մասին» աշխատության «Սկեպտիցիզմի և մյուս փիլիսոփայական սիստեմների մասին» վերնագիրը կրող մասը։ Տվյալ մասի հատկապես «Հին փիլիսոփայության և նոր փիլիսոփայության մասին» գլուխներում, մանրամասնորեն վերլուծելով նախորդ և իր ժամանակի թե՛ մատերիալիստական, և թե իդեալիստական փիլիսոփայական սիստեմները, Հյումը եզրակացրեց, որ նրանց ուսումնասիրած պրոբլեմները անիմաստ են։ «Հին փիլիսոփաների կարծիքները և նրանց ֆիկցիաները սուբստանցիաների և ակցիդենցիաների մասին, կշռադատությունները սուբստանցիոնալ ձևերի և թաքնված որակների մասին նման են տեսիլքների, որոնք թաքնվում են խավարում, իսկ նրանց աղբյուր հանդիսացող սկզբունքները համընդհանուր և անխուսափելի չեն մարդկային բնության մասին» (Давид Юм. «Трактат о человеческой природе», М., 1966, стр. 338)։

Դիալեկտիկական մատերիալիզմի լեզվով ասած՝ Հյումը փաստորեն ժխտեց փիլիսոփայության արմատական պրոբլեմները, այն է՝ փիլիսոփայության հիմնական հարցը, այսինքն՝ այն, թե ինչն է առաջնայինը՝ ոգի՞ն, թե՞ մատերիան և նրանից բխող մնացած փիլիսոփայական և մասնավորապես տեսական իմացական պրոբլեմները։ Այստեղ դրսևորվեց նրա սկեպտիցիզմը։

Իսկ ինչու նա անիմաստ համարեց նման պրոբլեմները։ Այս հարցին դժվար չէ պատասխանել, վերլուծելով Հյումի փաստարկումները։ Նրա կարծիքով, բավական չէ արձանագրել այն փաստը, ինչպես վարվում են մատերիալիստները և իդեալիստները, որ օբյեկտիվ ռեալությունը, այսինքն՝ մատերիան կամ հոգևոր սուբստանցիան գոյություն ունեն, անհրաժեշտ է նաև հիմնավորել այն։ Իբրև հիմնավորման միջոցներ Հյումն առաջարկեց տպավորությունները և բանականությունը։

Սակայն տպավորությունները, թեև առաջանում են արտաքին օբյեկտների ներգործությունից, նրա կարծիքով, նման չեն վերջիններիս, քանի որ նրանք կարող են փոփոխվել նույնիսկ այն ժամանակ, երբ արտաքին օբյեկտներն անփոփոխ են։

Եթե դա այդպես է, ապա տպավորությունները մեզ ոչինչ չեն կարող ասել արտաքին օբյեկտների բնույթի մասին։ Այլ խոսքով՝ նրանց միջոցով հնարավոր չէ հիմնավորել օբյեկտիվ ռեալության կամ հոգևոր սուբստանցիայի գոյությունը. Հյումը գտավ, որ նման օբյեկտների գոյությունը չի կարելի հիմնավորել նաև տրամաբանական ապարատի միջոցով, քանի որ այն ևս ենթակա է հիմնավորման։ Հետևաբար, ըստ նրա, նշված միջոցներով անհնարին է

պատասխանել այն հարցին, թե աշխարհը բնական երևո՞ւյթ է, թե ունի նախասկիզբ:

Բացի դրանից, մատերիալիստների և իդեալիստների դրույթները վերլուծելիս, Հյումը օգտագործեց նաև տպավորություններին գաղափարների հանգեցման մեթոդը, որը նրա փիլիսոփայության կարևոր սկզբունքն է: Քանի որ ըստ այդ մեթոդի, յուրաքանչյուր գաղափար արդյունք է իր համապատասխան տպավորության, ապա, ըստ նրա, հոգևոր սուբստանցիայի կամ մատերիայի գաղափարի գոյությունը ընդունող փիլիսոփաները պետք է ցույց տան նրանց առաջացնող համապատասխան տպավորությունները, բացատրեն նրանց բնույթը, մեխանիզմը, որակները:

Բայց, Հյումի տեսակետից, մի կողմից, անհնարին է մատնանշել Եսի, այսինքն՝ հոգևոր սուբստանցիայի գաղափարն առաջացնող տըպավորությունը, քանի որ Եսին են պատկանում մեր բոլոր գաղափարները և տպավորությունները, իսկ մյուս կողմից՝ մատերիայի գաղափարը ծնող տպավորությունը, քանի որ տպավորությունները ոչ այլ ինչ են, եթե ոչ գույն, հոտ, համ և այլն:

Իսկ ոչ մի մատերիալիստ չի կարող ասել, որ մատերիան գույն է կամ հոտ: «Ես հաճույքով կհարցնեի այն փիլիսոփաներին, որոնք իրենց կշռադատությունների մեծ մասը հենում են սուբստանցիայի և ակցիդենցիայի տարբերակման վրա, թե որտեղի՞ց է առաջանում սուբստանցիայի գաղափարը: Եթե այդ առաջացնում են մեր զգայությունները, ապա ինչպիսի՞ զգայություններ և ինչպե՞ս: Եթե այն ընկալում են աչքերը, ապա դա պետք է լինի գույն, եթե՝ ականջները, ապա՝ ձայն և այլն: Բայց ես կարծում եմ, որ ոչ ոք չի պնդի, որ սուբստանցը գույն է, հնչյուն և այլն: Այն չի կարող առաջանալ նաև ռեֆլեքսիայի տպավորություններից, քանի որ նշված տպավորությունները հանգում են կրքերին, էմոցիաներին: Իսկ սուբստանցը չի կարող լինել էմոցիա կամ կիրք» (նույն տեղը, էջ 104—105):

Հետևաբար, նշված գաղափարները անիմաստ են, քանի որ անհնարին է մատնանշել դրանց համապատասխան տպավորությունները, կամ այլ խոսքով՝ դրանք չեն բավարարում նշված սկզբունքի կողմից առաջ քաշված պայմաններին: Այսպիսով, Հյումի տեսակետի համառոտ վերլուծությունը մեզ ցույց է տալիս, որ նա ելնելով այն հանգամանքից, որ վերոհիշյալ իմացական միջոցներով անհնարին է հիմնավորել ընդհանրապես փիլիսոփայական պրոբլեմները, դրանք համարեց անիմաստ, մետաֆիզիկական: Իսկ սա նշանակում է, որ «հնարավո՞ր է արդյոք փիլիսոփայությունը» հարցը Հյումը լուծեց բացասականորեն: Այլ խոսքով՝ նշված միջոցներով նա փաստորեն ապացուցեց փիլիսոփայության անհնարինությունը: Ընդհանրապես փիլիսոփայության հյումյան վերոհիշյալ որակավորումն իբրև մետաֆիզիկա կարևոր դեր խաղաց տրամաբանական պոզիտիվիզմի համար կլասիկ փիլիսոփայությունը գընահատելու գործում:

Փիլիսոփայության էության, նպատակի, բնագավառի որակապես նոր ըմբռնումը, որը հատուկ է տրամաբանական պոզիտիվիզմին, մի կողմից, պայմանավորված է կոնկրետ գիտությունների, հատկապես մաթեմատիկայի տրամաբանության և ֆիզիկայի հիմնարար դրույթների հետազոտությամբ: Իսկ, մյուս կողմից, տրամաբանական պոզիտիվիստներ՝ Կառնապի, Հեմփելի, Ֆեյգլի, այդ շարժման մեկնիչներ՝ Սթեբինգի, Բերգմանի, սովետական փիլիսոփաներ՝ Միխալենկոյի, Շվիրյովի իրավացի արտահայտությամբ հիմք է ունեցել ընդհանրապես փիլիսոփայության վերոհիշյալ հյումյան գնահատականը և փիլիսոփայության առարկայի վաղ վիտգենշտեյնյան ըմբռնումը «որպես մտքերի տրամաբանական զտում» (Л. Витгенштейн. «Логико-философский трактат», М., 1958 г., стр. 49):

Բարձր գնահատելով Հյումի փիլիսոփայության հակամետաֆիզիկական կողմնորոշումը, տրամաբանական պոզիտիվիզմը ևս (սակայն ի տարբերություն Հյումի), որակապես նոր միջոցներով, որն անշուշտ բխում է փիլիսոփայության առարկայի նրա ըմբռնումից, հիմնավորեց ավանդական փիլիսոփայության հիմնական պրոբլեմները, այն է՝ ո՞րն է գոյության և ճանաչողության հիմնավորումը, աշխարհի միասնության հարցը և այլն, անիմաստությունը:

Այլ խոսքով՝ տրամաբանական պոզիտիվիզմը ժխտեց միայն փիլիսոփայության առարկայի նախորդ ըմբռնումները և, ի տարբերություն Հյումի, տվեց տվյալ պրոբլեմի իր ըմբռնումը, որը Կառնապի, Շլիկի և մյուս տրամաբանական պոզիտիվիստների տեսակետից «արմատական շրջադարձ էր փիլիսոփայության մեջ»:

(Տե՛ս W. H. Werkmelster. Seven theses of logical positivism „Philosophical review„ vol. 46 № 273, 1937. p. 276)·

Ըստ տրամաբանական պոզիտիվիզմի, փիլիսոփայությունը լեզվի վերլուծության յուրահատուկ ձև է, որի հիմնական խնդիրն է, մի կողմից բացառել գիտությունից բոլոր անիմաստ կշռադատություններն ու կեղծ պրոբլեմները, որոնք ծագում են լեզվի ոչ ճիշտ կիրառ-



ման, դրա տրամաբանական կանոնների խախտման հետևանքով: Մյուս կողմից, կառուցել իմաստ ունեցող դատողությունների իդեալական մոդելներ:

Գիտության տրամաբանության ըմբռնումն իբրև գիտության լեզվի տրամաբանական սինտակսիս, ըստ Կառնապի, արդյունք է այն բանի, որ տրամաբանությունը գիտության լեզվի վերլուծությունը իրականացնում է սինտակտիկական նշանակային սիստեմների միջոցով:

Կառնապի տեսակետից նման վերլուծության հիմնական խնդիրն է, մի կողմից բացահայտել գիտական դրույթների իմաստը, իսկ մյուս կողմից ապացուցել, որ մետաֆիզիկայի դատողությունները կեղծ են, դատարկ և հետևաբար անիմաստ: Ընդհանրապես տրամաբանական պոզիտիվիզմը հիմնավորված դատողություններ է համարում անալիտիկ և սինթետիկ դատողությունները: Ընդ որում, անալիտիկ դատողություններն ունեն ձևական իմաստ, իսկ սինթետիկ դատողությունները՝ էմպիրիկ իմաստ:

Կառնապյան վերլուծության հիմնական խնդիրը մաթեմատիկայի և տրամաբանության հիմնարար դրույթներ հանդիսացող անալիտիկ դատողությունների իմաստի բացահայտումն է:

Սակայն, ի տարբերություն Հյումի, Ֆրանկն ու Շլիկն իրականում բնականաբար մերժեցին միայն կլասիկ փիլիսոփայության ճանաչողական նշանակությունը գիտության մեթոդոլոգիական պրոբլեմները լուծելու բնագավառում, մերժելով նրա էթիկական, էսթետիկական նշանակությունը: Այնուամենայնիվ, փիլիսոփայության առարկայի նման ըմբռնումը ևս զերծ չէ սահմանափակություններից: Դա նախ և առաջ արտահայտվեց նրանում, որ Կառնապը, Ֆրանկը, Շլիկը իրավացիորեն ընդգծելով ընդհանրապես գիտական գիտելիքի և մասնավորապես անալիտիկ և սինթետիկ դատողությունների տրամաբանական վերլուծության անհրաժեշտությունը, բացարձակացրին այն: Դրանով իսկ անտեսելով իմացաբանական մեթոդների նշանակությունը գիտական գիտելիքի վերլուծության բնագավառում:

Այն, որ Կառնապը միայն տրամաբանական միջոցներով իրականացրեց անալիտիկ դրույթների վերլուծությունը, բխում է տվյալ դատողությունների նրա ըմբռնումից իբրև առարկայական բովանդակությունից զուրկ ֆիկցիաներ, որոնք մեզ ոչինչ չեն ասում աշխարհի բնույթի մասին: Այժմ նման տեսակետն իրավացի քննադատության առարկա է դարձել տրամաբանական մեթոդոլոգիական գրականության մեջ:

Հատկապես ուշագրավ է ամերիկացի փիլիսոփա Մաքսվելի տեսակետը վերոհիշյալ հարցի վերաբերյալ: Ըստ Մաքսվելի, եթե շատ տեսական էություններ իրենց յուրահատուկ բնույթի շնորհիվ որակապես տարբերվում են առօրյա օբյեկտներից, ապա դա հիմք չի կարող ծառայել այն եզրակացության համար, որ դրանք չունեն օբյեկտիվ բնույթ:

Իսկ, մյուս կողմից, սինթետիկ դատողությունների Շլիկ-ֆրանկյան ըմբռնումն իբրև փաստական բովանդակություն արտահայտող ունի իմացաբանական բնույթ և իր վերլուծության համար պահանջում է միայն իմացաբանական միջոցներ: Մինչդեռ նման դատողությունների վերլուծությունը իրականացնելիս, թե՛ Շլիկը, և թե՛ Ֆրանկը կիրառել են վերիֆիկացիայի մեթոդը, որը ոչ այլ ինչ է, բայց եթե ոչ տրամաբանական գործողությունների ամբողջություն: Սա նշանակում է, որ նրանք նույնպես անտեսել են նման դատողությունների իմացաբանական վերլուծությունը: Սակայն դրա հետ միասին չպետք է մոռանալ նաև տվյալ մեթոդի կարևոր սահմանափակությունը, այն է՝ դիտարկման լեզվի տերմիններին և դատողություններին տեսական տերմինների և դատողությունների սպառիչ հանգեցման հնարավորությունը, որը փաստորեն նշանակում է սինթետիկ դատողությունների յուրահատկության անտեսում:

Գիտական գիտելիքների վերլուծության տրամաբանական պոզիտիվիստական կոնցեպցիայի ելակետային սկզբունքների սուր քննադատությունը տրամաբանական պոզիտիվիզմի նախկին ներկայացուցիչների, գիտության փիլիսոփայության այլ ուղղությունների, և սովետական փիլիսոփաների կողմից (իմիջիայլոց, ուշագրավ է այն փաստը, որ և՛ արտասահմանյան, և՛ սովետական փիլիսոփաների քննադատությունն ուներ համարյա նույն ուղղվածությունը) աշխատեցին ճշգրտել 20—30-ական թվականներին պաշտպանած տեսակետները:

Նախորդ պատկերացումների ճշգրտման գործում նոր քայլ հանդիսացավ Կառնապի, Ալֆրեդ Տարսկու ազդեցության տակ, 40—50-ական թվականների գրած Հետազոտություններ սեմանտիկայից, Անհրաժեշտություն և նշանակություն աշխատությունները և վերիֆիկացիայի սահմանափակությունների քննադատությանը վերաբերվող հոդվածները:

Նշված աշխատություններում նա մշակեց անալիտիկ դատողությունների վերլուծության սեմանտիկական մեթոդներ: Նման դատողությունների սեմանտիկական վերլուծությունը հաշվի է առնում դրանց նշանակությունը: Այլ կերպ ասած, դրանք դիտում է որպես ինչ-որ բովանդակային, առարկայական բնագավառի արտացոլում: Թեև այդ վերլուծությունը ևս տրամաբանական է: Ի տարբերություն Կառ-

նապի, Ֆիլիպ Ֆրանկը հրաժարվելով սինթետիկ դատողությունների վերլուծության վերոհիշյալ մեթոդից, իր ուշադրությունը կենտրոնացնում է գիտության փիլիսոփայական պրոբլեմների վրա: Այդ ուղղությամբ կատարած մանրակրկիտ հետազոտությունների արդյունք հանդիսացավ Գիտության փիլիսոփայություն աշխատությունը: Այս աշխատության մեջ Ֆրանկը բազմաթիվ փաստերով հիմնավորեց ընդհանրապես գիտության և մասնավորապես ֆիզիկայի հիմնարար դրույթներ հանդիսացող սինթետիկ դատողությունների նկատմամբ փիլիսոփայական մոտեցման անհրաժեշտությունը:

Ըստ Ֆրանկի, «գիտության մեջ կարելի է տարբերակել անմիջական դիտարկման և ընդհանուր սկզբունքների մակարդակները» (Филипп Франк «Философия науки», М., 1960, стр. 56): Նրա տեսակետով «գիտության փիլիսոփայության հիմնական խնդիրն է՝ պարզել հետևյալ հարցերը.

1. Ինչպե՞ս է իրականանում անցումը առօրյա դրույթներից ընդհանուր գիտական սկզբունքներին:

2. Ի՞նչ բնույթ ունի առօրյա փորձի և ընդհանուր սկզբունքների միջև իրական հարաբերությունը» (նույն տեղը, էջ 58):

3. Ինչ հիմքով է կատարվում որոշ ընդհանուր դրույթների գերադասումը մյուսներից և այլն» (նույն տեղը, էջ 58): Այլ խոսքով, ըստ Ֆրանկի ընդհանուր սկզբունքների բոլոր հիմքերը պատկանում են գիտության փիլիսոփայությանը:

Ֆրանկի գաղափարների ազդեցության տակ Կառնապը 60-ական թվականներին գրեց Ֆիզիկայի փիլիսոփայական հիմքերը աշխատությունը: Ուշագրավ է այն փաստը, որ նա տվյալ աշխատության մեջ, մի կողմից, ընդունեց ֆիզիկական գիտելիքների յուրահատկությունը, իսկ մյուս կողմից հիմնավորեց այն, թե ինչու չի կարելի ֆիզիկական գիտելիքները վերլուծել միայն տրամաբանական մեթոդներով: «Տրամաբանության և մաթեմատիկայի օրենքներն իրենց բնույթի շնորհիվ չեն կարող իբրև հիմքեր օգտագործվել գիտական բացատրության համար, որովհետև դրանք մեզ ոչինչ չեն ասում այն մասին, որը կտարբերեր էական աշխարհը որևէ այլ հնարավոր աշխարհից» (Рудольф Карнап. «Философские основания физики». М., 1966, стр. 50):

Ըստ Կառնապի, մասնավոր դիտարկումները բացատրելիս, անհրաժեշտ է օգտագործել միայն էմպիրիկ օրենքները: Սակայն Կառնապի առաջընթաց քայլը վերաբերում է միայն սինթետեկ գիտելիքներին: Նախկինի պես անալիտիկ դրույթների վերլուծությունը նա իրականացնում է միայն տրամաբանական միջոցներով: Այն հանգամանքը, որ Կառնապը, Շլիկը և մյուս տրամաբանական պոզիտիվիստներն անընդհատ ճշգրտել են վերոհիշյալ պրոբլեմի վերաբերյալ իրենց պատկերացումները, մի կողմից, խոսում է այն մասին, որ նրանք հաշվի են առել թե՛ սովետական, և թե՛ արտասահմանյան փիլիսոփաների քննադատական դիտողությունները, իսկ մյուս կողմից ապացուցում են նման քննադատության իրավացիությունը:

Սակայն չնայած նման ճշգրտումներին, այնուամենայնիվ, գիտական գիտելիքի տրամաբանական մեթոդոլոգիական վերլուծության վերոհիշյալ կոնցեպցիան անփոփոխ է մնացել երկու տեսակետից: Առաջինն այն է, որ նման վերլուծության հիմնական խնդիրը ոչ թե գիտական գիտելիքի կառուցվածքների կամ գիտական մտածողության իրական պրոցեսների հետազոտությունն է, այլև իդեալացված, ձևականացված տրամաբանական սխեմաների կառուցումը, որոնց համապատասխան պետք է վերակառուցվի բնականորեն ձևավորվող գիտության լեզուն: Երկրորդ՝ այն շարունակում է անտեսել գիտելիքի զարգացման և փոփոխության պրոցեսների տրամաբանական մեթոդոլոգիական վերլուծության հնարավորությունները: Այլ կերպ ասած, տրամաբանական պոզիտիվիզմը գիտական գիտելիքները դիտում է պատրաստի վիճակում:

Գիտական գիտելիքի վերլուծության տրամաբանական պոզիտիվիստական կոնցեպցիայի նշված սահմանափակությունները իրավացի քննադատության են ենթարկվում ժամանակակից տրամաբանական, մեթոդոլոգիական գրականության մեջ: Այսպիսով, վերը շարադրածից դժվար չէ տեսնել, որ տրամաբանական պոզիտիվիզմը, ժխտելով ավանդական փիլիսոփայությունը իբրև մետաֆիզիկա, ընկել է ավելի ծայրահեղ մետաֆիզիկայի մեջ, դրանով իսկ հայտնաբերելով իր անհամապատասխանությունը գիտական պրակտիկային:

**ՄԵԼԱՆՅԱ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ**

# ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԸ ԳՐՔԵՐԻ ՄԱՍԻՆ



## ԾԱՆՐԱԿՇԻՌ ՄԵՆԱԳՐՈՒԹՅՈՒՆ ԱՆՆԿՈՒՆ ԼԵՆԻՆՅԱՆԻ ՄԱՍԻՆ

*Կոմունիստական կուսակցության և սովետական պետության ականավոր գործիչ, բոցաշունչ ինտերնացիոնալիստ Ստ. Շահումյանի մասին գրվել են բազում մենագրություններ, գրքույկներ, վեպեր, բանաստեղծություններ: Այդ գաղափարական լենինյանի հերոսական կյանքը, բեղմնավոր գործունեությունը, գրական հարուստ ժառանգությունն անսպառ աղբյուր են նրա ժամանակաշրջանի հասարակական-քաղաքական կյանքի, գրականության ու արվեստի վերաբերյալ գիտահետազոտական պեղումներ կատարելու համար:*

*Այս առումով Գ. Ս. Հակոբյանի՝* Ստեփան Շահումյան: Կյանքը և գործունեությունը[1] *աշխատությունը հաջողված գործ է և զգալիորեն լրացնում է Ստ. Շահումյանի վերաբերյալ մինչ այդ եղած պատմա-կուսակցական գրականությունը:*

*Համոզիչ փաստերով, դրանց խոր վերլուծությամբ Գ. Հակոբյանն այս մենագրության մեջ ցույց է տվել պրոֆեսիոնալ հեղափոխականի անցած ողջ ուղին՝ երիտասարդական տարիներից մինչև իր կյանքի վերջը: Գրքի առաջաբանի հեղինակ Ա. Ի. Միկոյանը նշում է, որ «Գ. Ս. Հակոբյանը հանգամանորեն արտացոլել է Ստ. Շահումյանի կյանքի ու գործունեության փուլերը ինչպես բոլշևիկյան ընդհատակում, այնպես էլ 1917—1918 թթ. հեղափոխության ու քաղաքացիական կռիվների փոթորկալի օրերին» (էջ V):*

*Գրախոսվող գրքի հեղինակն սկզբում գրում է, թե ինչպես ընտանիքում խոհեմ, ուսման մեջ առաջադեմ երիտասարդն ամենայն ուշադրությամբ հետաքրքրվում է իր ժամանակի հասարակական-քաղաքական կյանքով, տարվում հեղափոխական գաղափարներով:*

*Տասնյոթ տարին բոլորած (1895 թ.) Ստեփանն ընկերների շրջապատում դրսևորում է հասարակական գործչի տաղանդն ու կազմակերպչական ընդունակությունները: Թիֆլիսի ռեալական ուսումնարանում սովորելու տարիներին նա ստեղծում է աշակերտական անլեգալ «Մի-*




[1] Акопян Г. С., Степан Шаумян. Жизнь и деятельность, М., Политиздат, 1973.

և լենինյան սկզբունքները՝ Ստ. Շահումյանն անդուլ պայքարել է աշխատավորության խորթ նացիոնալիստական՝ դաշնակցական, մենշևիկյան, մուսավաթական գաղափարախոսությունների դեմ, գաղափարախոսություններ, որոնք խանգարում էին աշխատավորական զանգվածների համախմբմանը։ Այդ հարցի առթիվ նա հանդես է եկել սոցիալ-դեմոկրատական մամուլում, գրել է Ազգային հարցի մասին ընդարձակ ռեֆերատ, ազգային հարցի մասին զեկուցումներ կարդացել ժողովներում, հավաքներում, նամակներով իր մտքերն ու կարծիքները փոխանակել Իլյիչի հետ։ Լենինը, ընդգծում է գրքի հեղինակը, բարձր է գնահատել Շահումյանի հայացքները ազգային հարցի վերաբերյալ, համարելով նրան այդ պրոբլեմի լուծման լավագույն գիտակներից մեկը (տե՛ս էջ 91)։

Ստ. Շահումյանն այն համոզմունքին է, որ հայ, ինչպես և երկրի մյուս ժողովուրդների աշխատավորները չպետք է գնան ազգային անջատվածության ճանապարհով։ Հակառակը, ընդհանուր թշնամու՝ ցարական ինքնակալության դեմ հաղթանակը հնարավոր կլինի միայն տարբեր ազգերի մարդկանց համախմբվածությամբ, համատեղ մաքառումներով։ Հեղինակը նշում է, որ Ստ. Շահումյանը, իբրև բոցաշունչ պրոլետարական ինտերնացիոնալիստ, ամենուրեք գործել է այլազգի պրոֆեսիոնալ հեղափոխականների հետ։

Գրախոսվող գրքի ուշագրավ էջերից են Բաքվում Ստ. Շահումյանի գործունեությունն արտացոլող մասերը։ 1907 թ. ամռանը, փոխադրվելով այն ժամանակվա նավթարդյունաբերության խոշոր կենտրոնը, նա մեծ գործ է կատարում աշխատավորության շրջանում լենինյան գաղափարների ծավալման, տեղի սոցիալ-դեմոկրատական կազմակերպության ամրապնդման ասպարեզում։ ՌՍԴԲԿ V համագումարից հետո Բաքվի կոմիտեի ղեկավարությունն անցնում է բոլշևիկների ձեռքը։ Այստեղ նա Մ. Ազիզբեկովի, Ա. Ենուքիձեի, Մ. Էֆենդիևի, Գ. Կորգանովի, Ա. Միկոյանի, Ն. Նարիմանովի, Ա. Ջափարիձեի, Ի. Ստալինի, Վ. Ստուրուայի, Մ. Վեզիրովի, Ս. Օրջոնիկիձեի, Ի. Ֆիոլետովի և հեղափոխական այլ գործիչների հետ միասին կազմակերպում է նավթագործների գործադուլներ, նրանց պայքարի կոչում հանում տնտեսական բարենորոգումների ու քաղաքական բարեփոխումների։

Ոստիկանական լրտեսները զօր ու գիշեր հետևում են Ստ. Շահումյանին, երբեմն իրենց որոգայթի մեջ գցում նրան։ Բայց ընկերների ու բանվորների օգնությամբ նա փրկվում է վտանգից, կրկին ձեռնամուխ լինում բանվորական շարժման ղեկավարմանը։ Մանրակրկիտ ուսումնասիրությունների շնորհիվ Գ. Հակոբյանը կարողացել է ինչպես հարկն է ցույց տալ հեղափոխական այն վիթխարի աշխատանքը, որ կատարել են Բաքվի բոլշևիկները՝ Ստ. Շահումյանի գլխավորությամբ, 1917 թ. փետրվարյան և հոկտեմբերյան հեղափոխությանը նախորդող ժամանակաշրջանում։ Բաքվի պրոլետարիատը, լիովին վստահելով Շահումյանին՝ ընտրում է նրան սովետների համառուսաստանյան առաջին համագումարի պատգամավոր, ուր ջերմ ու գործնական են նրա հանդիպումները Իլյիչի հետ։

ՌՍԴԲԿ(բ) կազմակերպությունների կովկասյան I համագումարից (1917 թ. հոկտեմբերի 2—7) վերադառնալուց հետո Ստ. Շահումյանը կուսակցական կազմակերպություններին իրազեկ է դարձնում համագումարի արդյունքներին, կոչ անում՝ անշեղ իրագործել համագումարի որոշումները։ Հոկտեմբերի 13-ին Ստ. Շահումյանի գլխավորությամբ ստեղծվում է Բաքվի սովետի ժամանակավոր գործադիր կոմիտե։ Սկսվում է սուր պայքար իշխանության համար (տե՛ս էջ 137)։

Բաքու է հասնում Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակի լուրը։ Ընթանալով զարգացող իրադարձությունների հետքերով՝ մենագրության հեղինակը վեր է հանում Բաքվի բոլշևիկների գործունեությունը Ստ. Շահումյանի գլխավորությամբ, արտացոլում նրանց պայքարն ու վարած քաղաքական ճիշտ գիծը։ Շահումյանը ողջունում է Սովետների համառուսաստանյան II համագումարում ընտրված հեղափոխական կառավարությունը, ձգտում ընդլայնել Բաքվի սովետի իրավունքները։ Իշխանության համար սուր պայքար է ծավալվում բոլշևիկների և նրանց հակառակորդ կուսակցությունների միջև։ 1917 թ. դեկտեմբերի 12-ին բոլշևիկները, ձախ սոցիալ-հեղափոխականների և կայազորի զինվորների կողմից ընտրված պատգամավորների հետ, Բաքվի սովետում մեծամասնություն են կազմում։ Ստ. Շահումյանը կրկին ընտրվում է սովետի նախագահ, իշխանությունն անցնում է Բաքվի պրոլետարիատի և կայազորի ներկայացուցիչների ձեռքը, այն ճանաչում է ՌՍՖՍՀ ժողովրդական կոմիսարների սովետը։

Մենագրության արժանիքներից մեկն էլ այն է, որ հեղինակը Բաքվում սովետական իշխանության համար մղված պայքարը լուսաբանել է ոչ թե մեկուսացած, այլև Անդրկովկասում տեղի ունեցող քաղաքական հասարակական բուռն անցքերի, ռուսաստանյան կարևոր իրադարձությունների հետ, ցույց է տվել, թե ինչպես սովետական իշխանության համար մղվող պայքարի օրերին բոլշևիկները կոչ էին անում կապ հաստատել ՌՍՖՍՀ հետ, իսկ նացիոնալիստական կուսակցություններն ու Անդրկովկասյան կոմիսարիատը դավաճանական դիրք էին բռնել սովետների նկատմամբ, չէին ուզում ճանաչել Լենինի գլխավորած ժողկոմսովետը և պահանջում էին անջատվել ՌՍՖՍՀ-ից։

Հաշվի առնելով Կովկասում տեղի ունեցող իրադարձությունները՝ 1917 թ. դեկտեմբերի 16-ին ՌՍՖՍՀ ժողկոմսովետի նիստը, Վ. Ի. Լենինի նախագահությամբ, որոշում է բոլշևիկյան կուսակցության Կենտկոմի անդամ, բանվորների և զինվորների Բաքվի սովետի նախագահ Ստ. Շահումյանին ժամանակավորապես, մինչև երկրամասում սովետական կառավարություն կազմվելը, նշանակել Կովկասի գործերի արտակարգ կոմիսար։

Օրեցօր բարդանում է իրադրությունը Կովկասում։ Հակահեղափոխական և բուրժուա-նացիոնալիստական ուժերը ծառանում են խորհուրդների դեմ։ Բաքվի սովետի համար սկսվում է վտանգավոր ժամանակաշրջան։ Հանդես գալով Բաքվի կուսկազմակերպության ժողովում՝ Ստ. Շահումյանը նշում է. Անդրկովկասյան կոմիսարիատը, որի կազմում են շահագործող դասակարգերի կուսակցությունները, չի ճանաչում ժողովրդական կոմիսարների սովետին, խրախուսում է ծայրահեղ ազգամոլներին, ճնշում դեմոկրատական ամեն մի երևույթ... Անդրկովկասի պրոլետարները և գյուղացիները չեն ցանկանում անջատվել Ռուսաստանից (տե՛ս էջ 177—178)։ Գ. Հակոբյանը հիշատակում է, որ ներքին հակահեղափոխական-նացիոնալիստական ուժերի հետ միասին Բաքվի վրա գրոհում են թուրքական բանակի զորամիավորումները՝ պանիսլամիզմի ծրագիրն իրագործելու նպատակով։ Վերլուծելով ստեղծված իրադարձությունները՝ հեղինակն իրավամբ եզրակացնում է. «Դասակարգային բախումների «խաղաղ» ժամանակն անցել է, հարկավոր է գրոհել թշնամու վրա»։

Սկսվում են քաղաքացիական կռիվները։ Շահումյանի նախագահությամբ Բաքվում ստեղծվում է պաշտպանության հեղափոխական կոմիտե...

Փաստերի և արխիվային տվյալների հանգամանալի ուսումնասիրության հիման վրա, հաջորդաբար նկարագրելով դեպքերը, հեղինակն ընթերցողներին հասցնում է Բաքվի կոմունայի հերոսական օրերը։

1918 թ. մարտյան դեպքերին հաջորդում է կարճատև դադարը։ Սովետական իշխանության ամրապնդման համար, Ստ. Շահումյանի առաջարկով, բոլշևիկների քաղաքային կոնֆերանսը որոշում է ստեղծել Բաքվի շրջանի ժողովրդական կոմիսարների սովետ, որը կազմվում է ապրիլի 25-ին, Շահումյանի նախագահությամբ։ Ժողկոմսովետը նշում է սոցիալական բարեփոխումների մեծ ծրագիր, որի նպատակն էր ամենից առաջ սահմանափակել բուրժուազիայի իրավունքները։ Ժողկոմսովետի դեկրետներով ազգայնացվում են բանկերը, նավթարդյունաբերության ձեռնարկությունները, տպարանները։

Ինչպես միշտ, այս ժամանակաշրջանում ևս սերտ կապ է պահպանվում Վ. Ի. Լենինի և Ստ. Շահումյանի միջև։ Ստեփան Գեորգևիչը Վլադիմիր Իլյիչին պարբերաբար զեկույցներ ու տեղեկանքներ է ուղարկում Անդրկովկասում տիրող վիճակի մասին։ Վ. Ի. Լենինը հավանություն է տալիս Անդրկովկասում Շահումյանի վարած հաստատուն ու հստակ քաղաքականությանը։ Կոմունային օգնելու նպատակով ՌՍՖՍՀ ժողկոմսովետը Կովկասի արտակարգ կոմիսարին հատկացնում է 500 հազար ռուբլի։

Վ. Ի. Լենինը համամիտ էր Ստ. Շահումյանին և հավանություն էր տալիս Անդրկովկասում, մասնավորապես Բաքվում նրա վարած բոլշևիկյան քաղաքականությանը։ 1918 թ. մայիսի 14-ին Վլադիմիր Իլյիչը Ստեփան Գեորգևիչին գրում է.

«Թանկագին ընկեր Շահումյան։

Շատ շնորհակալ եմ նամակիդ համար։ Հիացած ենք ձեր վարած հաստատակամ և վճռական քաղաքականությամբ» (էջ 195)։

Բնութագրելով 1918 թ. գարնանը Անդրկովկասում տեղի ունեցող իրադարձությունները՝ հեղինակը նշում է. վրացական մենշևիկների թողտվությամբ գերմանական զորքերը մտնում են Թիֆլիս։ Թուրքական բանակի դիվիզիաները, դաշնակցական կառավարության ապիկար քաղաքականության հետևանքով Հայաստանի մեծ մասը գրավելուց հետո, Դիլիջանի և Ղազախի վրայով հասնում են Ելիզավետպոլ (Կիրովաբադ), Ջուլֆայի վրայով մտնում են Եվլախ։ Մուսավաթականներն ամեն կերպ աջակցում են թուրքերին՝ իրագործելու պանիսլամիզմի ծրագիրը, առաջին հերթին գրավելու Բաքուն։ Ստեղծված վիճակից դուրս գալու նպատակով կոմունան որոշում է ճակատամարտ տալ, փրկել Բաքվի սովետական իշխանությունը։ Շահումյանին մենք տեսնում ենք ռազմաճակատում... Քաղաքական ղեկավարի տաղանդի հետ մեկտեղ այստեղ դրսևորվում է ռազմական գործչի նրա ունակությունը, նա որոշում է հակառակորդին գլխավոր հարված հասցնելու ուղղությունը— հարձակվել Ելիզավետպոլի՝ հակահեղափոխության այդ որջի վրա։

Հուլիսի վերջերը, օգոստոսի սկզբները լարված օրեր էին Բաքվի կոմունայի համար։ Հակառակորդ կողմերի ուժերի հարաբերությունը փոխվում է հօգուտ կոմունայի թշնամիների, Բաքվի սովետին դավաճանում են ցարական նախկին սպա Բիչերախովի ստորաբաժանումները, խուճապ է առաջանում երերուն տարրերի շարքերում։ Օգտվելով առիթից, սովետական իշխանու-

թյան հակառակորդները դիմում են անգլիացիների օգնությանը: Ստ. Շահումյանը, նրա զինակիցները, համառորեն դեմ են դուրս գալիս անգլիական զորամասերը Բաքու հրավիրելուն, գիտակցելով, որ այդ նշանակում է օկուպացնել Բաքուն, տապալել սովետական իշխանությունը:

Մարքսիստորեն ուսումնասիրելով Բաքվի քաղաքացիական կռիվներին մասնակցած հայկական զորամասերի մասին Ստ. Շահումյանի զեկույցներն ու այլ փաստաթղթեր՝ հեղինակն իրավամբ եզրակացրել է, որ այդ զորամասերի շարքային զինվորներն աշխատավորների զավակներ էին, որոնք համառորեն կռվում էին թշնամու դեմ՝ հանուն Բաքվի կոմունայի: Իսկ հրամանատարական կազմը, որի մի մասն աշխատավորական խավից չէր և կապված էր դաշնակցության կուսակցության հետ, կռվի ճակատագրական օրերին լքեց մարտի դաշտը: Բաքվի կոմունայի՝ մահու և կենաց համար մղած պայքարի ամենածանր պահին,— գրում է Գ. Հակոբյանը,— երրորդ բրիգադի հրամանատար դաշնակ Համազասպը հանկարծ «հիվանդանում է» և հեռանում կռվի դաշտից: Ապա «հիվանդանում» է նաև Շամախիի ուղղությամբ կռվող բրիգադի հրամանատար, ցարական բանակի նախկին սպա, գնդապետ Կազարովը: Նրանց դավաճանությունը հուսալքում է առաջացնում շարքային զինվորների մի մասի շրջանում: Ահա այդ տագնապալից օրերին Ստ. Շահումյանին հասցեագրված Վ. Ի. Լենինի հեռագիրը. «Դաշնակցականների բոլոր գործողությունները՝ ուղղված սովետների V համագումարի որոշումների, կենտրոնական սովետական կառավարության դեմ, կդիտվեն իբրև ապստամբություն և դավաճանություն» (էջ 232): Բաքվի կոմունան անզոր է կռվելու ներքին հակահեղափոխական ուժերի և օտարերկրյա զավթիչների դեմ: Ղեկավարությունն ստիպված որոշում է սովետական կառավարությանը հավատարիմ. զինված ուժերի հետ էվակուացվել Աստրախան, համախմբել ուժերը՝ նորից Բաքու վերադառնալու նպատակով:

Հակահեղափոխությունը գրավում է իշխանությունը: Ներքին թշնամիների և օտարերկրյա զավթիչների սև ուժերը գազանաբար դատաստան են տեսնում կոմունայի մարտիկների հետ, անդըրկասպյան ավազուտներում գնդակահարում են 26 կոմիսարներին:

Ստ. Շահումյանի մասին հրապարակի վրա եղած գրքերի համեմատությամբ Գ. Հակոբյանի մենագրության առավելություններից մեկն էլ այն է,— նշում է Ա. Ի. Միկոյանը,— որ հարուստ նյութերի հիման վրա այստեղ ավելի լայն է լուսաբանված հիանալի բոլշևիկի հեղափոխական գործունեությունը:

Գովելի է քաղաքական գրականության հրատարակչության (Մոսկվա) նախաձեռնությունը՝ մի անգամ ևս վեր հանելու Ստ. Շահումյանի՝ պրոլետարիատի ազատագրությանը նվիրաբերված կյանքն ու աննկուն գործունեությունը: Այս հետաքրքրական, նկարազարդ մենագրությունը ձևավորված է գեղարվեստական բարձր ճաշակով:

Ս. Ս. ՆԱԼԲԱՆԴՅԱՆ



Адрес редакции: Ереван- 33, Барекамутян, 59 г.

Խմբագրության հասցեն՝ Երևան—33, Բարեկամության 59 գ.: Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ և պրոպագանդայի բաժին՝ 27—25—29, պատ. քարտուղար և էկոնոմիկայի բաժին՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատող՝ 27—60—64:

ՎՖ 05766   Պատվեր 1425   Թղթի չափսը 70×108 1/16:   Տիրաժ 13.128:   Գինը 25 կոպ.:

Տպ. 7 մամուլ, մամուլում 68840 նիշ:   Ստորագրված է տպագրության 31/VII 1973 թ.

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան: Ալ. Խանջյան փող. № 28:



# ՁԵԶ ՀԱՄԱՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Ապրիլյան թեզիսներ: «Հայաստան» հրատ., 1973:

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Ինչպես կազմակերպել մրցությունը: «Հայաստան» հրատ., 1973:

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Մեր օրերի գլխավոր խնդիրը: «Հայաստան» հրատ., 1973:

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Նամակներ ամերիկյան բանվորներին: «Հայաստան» հրատ., 1973:

ՀՈՎՍԵՓՅԱՆ Հ. Ա.— Պատմական-իրավական հարցերը Ստեփան Շահումյանի աշխատություններում: «Հայաստան» հրատ., 1973:

Հեղինակը ներկա մենագրության մեջ լուսաբանել է Ստ. Շահումյանի տեսակետները հասարակության զարգացման, պետության և իրավունքի ծագման ձևերի ու էության մասին, ինչպես նաև արտացոլել նրա ծավալուն գործունեությունը:

ՎԱԼԴԵԿ ՌՈՇԵ— Ընտիր հոդվածներ և ճառեր (1940—1969 թթ.): Մ., «Политиздат», 1972:

Ֆրանսիական և միջազգային կոմունիստական շարժման ականավոր գործչի, ֆրանսիական կոմունիստական կուսակցության գլխավոր քարտուղարի հոդվածների ու ճառերի այս ժողովածուն արտացոլում է ՖԿԿ պայքարը աշխատավորության տնտեսական վիճակի բարելավման, նրանց սոցիալական ու քաղաքական իրավունքների պաշտպանության համար, պայքարը հանուն խաղաղության, դեմոկրատիայի ու սոցիալիզմի: Ժողովածուում զետեղված է նաև Վալդեկ Ռոշեի համառոտ կենսագրությունը:

ՌՈՒՍՏԻՆՈՎ Գ. Պ.— Մարդկանց հետ և մարդկանց համար: Մ., «Политиздат», 1972:

Ժուռնալիստ գրողի այս գիրքը ծանոթացնում է սովետների գործունեությանը՝ գյուղականից սկսած մինչև ՍՍՀՄ Գերագույն սովետը: Ցույց տալիս, որ մեր երկրում չկա կյանքի մի բնագավառ, որի գործունեության համար պատասխանատու չլինեն, ակտիվ չմասնակցեն սովետները:

Հայկական ՍՍՀ ութերորդ գումարման Գերագույն սովետի նիստերը: Չորրորդ սեսիա (28—29 դեկտեմբերի, 1972 թ.): Սղագրական հաշվետվություն: ՀՍՍՀ Գերագույն սովետի հրատ., 1973:

ՀԱԿՈԲՅԱՆ Ա. Մ.— Հավասարների եղբայրությունը: «Հայաստան» հրատ., 1973:

Սույն գրքույկում հեղինակը համառոտակի նկարագրել է ՍՍՀՄ տնտեսության, մշակույթի, գիտության ու տեխնիկայի 50-ամյա աննախադեպ վերելքը, արտացոլել ռազմական հզորությունը, ապա եղբայրական հանրապետությունների, ինչպես և Սովետական Հայաստանի համախմբվածությունն ու փոխօգնությունը:

ԱՊՐԵՍՅԱՆ Հ. Ջ.— Հայկական գեղագիտական մտքի պատմությունից: Գիրք 1, «Հայաստան» հրատ. (ռուսերեն):

Փիլիսոփայական գիտությունների դոկտոր-պրոֆեսոր հեղինակն ուսումնասիրել է հայկական գեղագիտական մտքի ու գեղարվեստական մշակույթի պատմությունն իրենց փոխկապակցության մեջ, սկսած մ.թ.ա. VI դարից մինչև մեր թվագրության XVIII դարը:

ՓԱՐՍԱԴԱՆՅԱՆ Ռ. Ս.— Հայաստանի առողջապահության պատմություն (1828—1965 թթ.): «Հայաստան» հրատ., 1973:

Արխիվային նյութերի և գրականության հիման վրա հեղինակը ներկա գրքում շարադրել է Հայաստանի բժշկության պատմությունը, ուր հանգամանորեն անդրադարձել է սովետական ժամանակաշրջանի պատմությանը:

ՆՈՅԲԵՐՏ ՌՈՒԴՈԼՖ— Նոր գիրք ամուսնության մասին: Ամուսնության պրոբլեմը ներկայում և ապագայում: «Հայաստան» հրատ., 1973:

ՄԱՏԻՆՅԱՆ Ա.— (կազմող) Պոլիգրաֆիական տեղեկատու— Բառարան: «Հայաստան» հրատ., 1973:

Գինը 25 կ.: 77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԷԼԵԿՏՐԱՄԱԳՆԻՍԱԿԱՆ ԴԱՇՏ՝ ԸՆԴԴԵՄ ՔԱՂՑԿԵՂԻ

*Լենինգրադի և Թբիլիսիի մի խումբ գիտնականներ պարզել են, որ քաղցկեղային բջիջների զարգացումը կարելի է կանխել էլեկտրամագնիսական դաշտի ազդեցությամբ: Գիտնականները էլեկտրամագնիսի կոճի մեջ տեղավորել են առնետ, որին պատվաստված է եղել լիմֆոսարկոմային ուռուցք: Փոփոխական էլեկտրամագնիսական դաշտի ազդեցությամբ ուռուցքային հյուսվածքում առաջացել են դիստրոֆիկ փոփոխություններ, ուռուցքի հետագա զարգացումը կանխվել է, և բջիջների մի մասը ոչնչացել: Հեղինակները ենթադրում են, որ փոփոխական էլեկտրամագնիսական դաշտի ազդեցությամբ ուռուցքային բջիջների մոտ մեմբրանի թափանցիկությունն աճում է այնքան, որ դրանք կորցնում են զգալի քանակությամբ սպիտակուցներ:*

## ԿԱՊՏԱԹԹՈՒՆ ՊԱՇՏՊԱՆՈՒՄ Է ԲՈՒՅՍԵՐԸ

*Հայտնի է, որ սորգոյի մատղաշ բույսերը դիմացկուն են ժանգ հիվանդության նկատմամբ, որն առաջացնում են պարզագույն սնկերը: Հնդիկ գիտնականները պարզել են, որ նման դիմացկունությունը բույսերի մեջ կապտաթթվի պարունակության արդյունք է և այն բավական է՝ կասեցնելու սնկասպորների աճը: Բույսերը կապտաթթվի առկայությունը տանում են ոչ հիվանդագին, թեև այդ նյութը համակենսաբանական թույն է, որը բլոկադայի է ենթարկում շնչառության փուլերից մեկը. այն ստեղծում է շնչառական շղթայի վերջին օղակի ֆերմենտների և մետաղ պարունակող օքսիդազների կայուն համակցություններ: Հավանաբար, սորգոյի բույսերի զարգացման վաղ շրջանում դրանց մոտ շնչառական պրոցեսներն ընթանում են այլ ճանապարհով, կապված չեն այդ ֆերմենտների հետ:*

## ԴՅՈՒՐԱՑՆՈՒՄ Է ՄԵՔԵՆԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

*Դանիայում պատրաստել են մեքենագրուհու աշխատանքը թեթևացնող նոր սարք: Արտատպվող նյութի մոտ 60 տոկոսը հաճախ ձեռագիր է և դժվար ընթեռնելի: Ընթերցումը հեշտացնող յուրահատուկ սայլակիկը դրվում է այնպես, որ ձեռագիրը լինի աչքի համար առավել բարենպաստ մակարդակի վրա և տեքստը մեծացնում է երեք անգամ: Էջը փոխելիս մեքենագրուհին ոտքը սեղմում է հատուկ ոտնակին: Նոր սարքը մեքենագրուհիների աշխատանքի արտադրողականությունը բարձրացնում է 20—30 տոկոսով:*

## ԳՆԱՑՔՆԵՐ ԱՌԱՆՑ ՄԵՔԵՆԱՎԱՐԻ

*1977 թվականին Ֆինլանդիայի մայրաքաղաք Հելսինկիի մետրոյի գնացքները վարորդներ չեն ունենա: Նախատեսված է դրանց շարժման ամբողջ կառավարումը կենսագործել նախապես ծրագրված էլեկտրամեխանիկական սարքերի միջոցով: Գնացքների շարժման ժամանակահատվածները կկրճատվեն՝ հասնելով 90 վայրկյանի:*

## ՄԵԹԱՆԸ ԲԵՆԶԻՆԻ ՓՈԽԱՐԵՆ

*Արևմտագերմանական «Դայմլեր-տենց» ֆիրման մշակել է ներքին այրման քառատակտ շարժիչով ավտոբուս, որը հեղուկ մեթանն օգտագործում է որպես վառելիք: Ավտոբուսի կառուցվածքը փոքրինչ բարդանում է, քանի որ հարկ է լինում մեթանը պահել հատուկ ջերմամեկուսացված ռեզերվուարներում, ցածր ջերմաստիճանի պայմաններում: Նոր տիպի ավտոբուսի գլխավոր առավելությունն այն է, որ օդը չի կեղտոտվում արտամղվող գազերով:*